

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**3**

ՄԱՐՏ, 1984
ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 г.
Выходит один раз в месяц
на армянском языке

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути») — теоретический и политический журнал ЦК КП Армении**

## Բ Ո Վ Ա Ն Դ Ա Կ Ո Ւ Թ Յ Ո Ւ Ն

*ԸՆԿԵՐ Կ. ՈՒ. ՉԵՌՆԵՆԿՈՅԻ ՃԱՌԸ ՄՈՍԿՎԱՅԻ ԿՈՒՅԲԻՇԵՎՅԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳԻ ԸՆՏՐՈՂՆԵՐԻ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՄ 1984 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐՏԻ 2-ԻՆ* . . . 3

*ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ* . . . . . . . . . 16

*ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ* . . . . . . . . . 17

ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ

Ա. ՊՅԱՏԿՈՎԱ— *Ժողովրդական սպառման ապրանքների արտադրությանը կուսակցական հոգատարություն* . . . . . . . . . . . . 32

Վ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— *Աշխատանքային օրենսդրությունը և կարգապահությունը* . . 39

Վ. ՍԱՖՅԱՆ— *Բարելավել սարքավորումների օգտագործումը* . . . . . . . 47

ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԻ ԲՆԱԳԾԵՐՈՒՄ

*Նորաստեղծ շրջանի առաջին քայլերը (Հարցազրույց ՀԿԿ Բաղրամյանի շրջկոմի առաջին քարտուղար Թ. ԴԻԼԱՆՅԱՆԻ հետ)* . . . . . . . . . 53

Ռ. ՎԱԼԵՍՅԱՆ— *Կատարելագործել կադրերի պատրաստման և օգտագործման համակարգը* 60

Ա. ԽՈՋՈՅԱՆ— *Գյուղի սոցիալ-դասակարգային կառուցվածքի փոփոխման միտումները* 66

ՅՈՒ. ՎԱՐԴԱՆՅԱՆ— *Նոր տիպի մասնագետների պատրաստումը Երևանի պետական համալսարանում* . . . . . . . . . . . . 71

ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ՃԱԿԱՏՆԵՐՈՒՄ

Ի. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ— *Բուրժուական «մարքսաբանության» հակասովետական էությունը* . 74

Գ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ— *Սիոնիզմը ծառայում է իմպերիալիզմին* . . . . . . 80

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԵՎ ԿՅԱՆՔ

Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ— *Մտորումներ սեմինարից հետո* . . . . . . . 86

*Սվետլանա* ԳՐԻԳՈՐՅԱՆ— *Հայրենիքի վերածնությամբ ոգեշնչված* . . . . . 90

**ԵՐԵՎԱՆ ◆ ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ**

## СОДЕРЖАНИЕ


РЕЧЬ ТОВАРИЩА К. У. ЧЕРНЕНКО НА ПРЕДВЫБОРНОМ СОБРАНИИ ИЗБИРАТЕЛЕЙ КУЙБЫШЕВСКОГО ИЗБИРАТЕЛЬНОГО ОКРУГА МОСКВЫ 2 МАРТА 1984 ГОДА . . . . . . . 3

ИНФОРМАЦИОННОЕ СООБЩЕНИЕ О ПЛЕНУМЕ ЦЕНТРАЛЬНОГО КОМИТЕТА КОММУНИСТИЧЕСКОЙ ПАРТИИ АРМЕНИИ . . 16

ДОКЛАД ТОВАРИЩА К. С. ДЕМИРЧЯНА . . . . . . 17

**РЕШЕНИЯ XXVI СЪЕЗДА КПСС — В ДЕЙСТВИИ**

А. ПЯТКОВА — Производству товаров народного потребления—партийную заботу . . . . . . . . . . 32

В. АРУТЮНЯН — Трудовое законодательство и дисциплина . . . 39

В. САФЯН — Улучшить использование оборудования . . . . 47

**НА РУБЕЖАХ ОДИННАДЦАТОЙ ПЯТИЛЕТКИ**

Первые шаги нового района (Интервью с первым секретарем Баграмянского РК КП Армении Т. ДИЛАНЯНОМ) . . . . . . 53

Р. ВАЛЕСЯН — Совершенствовать систему подготовки и использования кадров . . . . . . . . . 60

А. ХОДЖОЯН — Тенденции изменения социально-классовой структуры села 66

Ю. ВАРДАНЯН — Подготовка специалистов нового типа в Ереванском государственном университете . . . . . . . . 71

**НА ФРОНТАХ ИДЕОЛОГИЧЕСКОЙ БОРЬБЫ**

Б. ГАРИБДЖАНЯН — Антисоветская сущность буржуазной «марксологии» 74

Г. БАГДАСАРЯН — Сионизм на службе империализма . . . . 80

**ЛИТЕРАТУРА И ЖИЗНЬ**

Х. ГЮЛЬНАЗАРЯН — Раздумья после семинара . . . . . 86

Светлана ГРИГОРЯН — Вдохновленная возрождением Родины . . 90








# ԸՆԿԵՐ Կ. ՈՒ. ՉԵՌՆԵՆԿՈՅԻ ՃԱՌԸ

## ՄՈՍԿՎԱՅԻ ԿՈՒՅԲԻՇԵՎՅԱՆ ԸՆՏՐԱԿԱՆ ՕԿՐՈՒԳԻ ԸՆՏՐՈՂՆԵՐԻ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՄ 1984 ԹՎԱԿԱՆԻ ՄԱՐՏԻ 2-ԻՆ

Թանկագին ընկերնե՛ր։

Թույլ տվեք անկեղծորեն շնորհակալություն հայտնել բոլորին, ովքեր այստեղ ելույթ ունեցան, Մոսկվայի Կույբիշևյան շրջանի բոլոր աշխատավորներին, որոնք ինձ առաջադրել են ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատության թեկնածու։ **(Ծափահարություններ)**: Այդ վստահությունը ես ընդունում եմ որպես պաշտպանություն մեր կուսակցության լենինյան կուրսին, որպես հավանություն կուսակցության Կենտրոնական կոմիտեի, նրա քաղբյուրոյի գործունեությանը։ Ձեզ հավաստիացնում եմ, որ բոլոր ուժերս կգործադրեմ, որպեսզի արդարացնեմ ձեր դեպուտատը լինելու բարձր պատիվը։ **(Երկարատև ծափահարություններ)**:

Բոլորովին վերջերս մենք ծանր կորուստ կրեցինք. կյանքից հեռացավ Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովը՝ կուսակցության ու պետության ականավոր գործիչը։ Նա լենինյան տիպի ղեկավար էր։ Նա չէր հանդուրժում քարացածությունն ու շաբլոնը, կարողանում էր կոտրել իներցիան, մարդկանց տրամադրել համերաշխորեն աշխատելու հանուն հայրենիքի հզորության ամրապնդման, հանուն աշխարհի խաղաղության։ Կուսակցության Կենտրոնական կոմիտեն, Կենտկոմի քաղբյուրոն նրա ղեկավարությամբ դրեցին երկրի կյանքում դրական կարևոր տեղաշարժերի սկիզբը։

Հասարակության զարգացման հանգուցային ուղղությունների վերաբերյալ կոլեկտիվ մշակված հիմնադրույթները, այն ամենը, ինչ ձեռք է բերվել վերջին ժամանակներս, ծանրակշիռ քաղաքական կապիտալ են։ Եվ մենք կպահպանենք ու կբազմապատկենք այն։ **(Երկարատև ծափահարություններ)**:

Ընկերնե՛ր, ավարտվում է նախընտրական կամպանիան։ Այդ կամպանիան այս տարի աչքի էր ընկնում մեծ ակտիվությամբ, ընտրողների ժողովների գործարար բնույթով։ Կամպանիան հանդիսացավ կուսակցության ու ժողովրդի անսասան միասնության կենդանի վկայությունը։ **(Ծափահարություններ)**: ՍՄԿԿ-ն հսկայական նշանակություն է տալիս Գերագույն սովետի ընտրություններին։ Չէ՞ որ դրանք ըստ էության սովետական իշխանության հաշվետվությունն են աշխատավորության առջև։ Դրանք նաև մասսաների կողմից նրանց աշխատանքի վերահսկողության ձև են, ում իրենք լիազորել են կառավարելու սոցիալիստական պետությունը։

Մեր կուսակցության ավանդույթներից է՝ մասսաների հետ մշտական սրտաբաց, ազնիվ խոսակցությունը։ Հենց այդպիսի մոտեցումով է տոգորված ՍՄԿԿ Կենտկոմի դիմումը, որում ձևակերպված է կուսակցության նախընտրական պլատֆորմը։

Ելույթ ունենալով ընտրողների առջև, Կենտկոմի քաղբյուրոյի և քարտուղարության իմ ընկերները հանգամանորեն խոսեցին մեր ներքին ու արտաքին քաղաքականության մասին, ապագայի պլանների մասին։ Թույլ տվեք ինձ ևս որոշ նկատառումներ արտահայտել այդ առթիվ։

## 1.

Դուք լավ գիտեք, թե կուսակցությունը որքան մեծ ուշադրություն է նվիրում էկոնոմիկայի հարցերին։ Դրանք ամենաաչքի ընկնող տեղն էին գրավում ՍՄԿԿ XXVI համագումարի աշխատանքում և որոշումներում։ Դրանք ռեալիստական վերլուծության առարկա դարձան Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերին և անցյալ տարվա դեկտեմբերին կայացած պլենումներում։ Երկրի տնտեսական զարգացման մի շարք հանգուցային պրոբլեմների նշանակությունը շեշտվեց Կենտկոմի փետրվարյան պլենումում։

Այս առումով ի՞նչ կարելի է ասել Գերագույն սովետի նախորդ ընտրություններից հետո անցած ժամանակաշրջանի մասին։

Ամբողջությամբ վերցված դա բեղմնավոր ժամանակաշրջան էր։ Երկրի արտադրողական ուժերն ամրապնդվեցին և էականորեն նորացվեցին։ Գործարկվեցին արդիական տեխնիկայով հագեցած հազարից ավելի արդյունաբերական ձեռնարկություններ։ Զգալի ծավալով վերակառուցվում, արդիականացվում էին առկա գործարաններն ու ֆաբրիկաները։ Թեպետև ուղղակի ասեմ՝ այս բնագավառում ավելի քիչ է արված, քան կցանկանայինք։ Զարգանում էր ժողովրդական տնտեսության վառելիքաէներգետիկ բազան։ Կառուցվել են շուրջ 40 հազար կիլոմետր երկարությամբ մայր գազամուղներ։ Համաշխարհային պրակտիկան այդպիսի մասշտաբներ ու տեմպեր դեռ չէր իմացել։ Մենք կարողացանք բնական գազի օգտագործման փոխադրել բազմաթիվ գործարաններ, քաղաքներ ու գյուղեր։ Կենցաղում գազից օգտվող մարդկանց թիվն ավելացավ 30 միլիոնով։

Այդ տարիները ոչ քիչ նվաճումներով նշանավորվեցին նաև շատ այլ բնագավառներում։ Մեզ մոտ, օրինակ, ստեղծվեց մեկուկես միլիոն կիլովատ հզորությամբ եզակի միջուկային ռեակտորը։ Արկտիկայի յուրացման պատմության մեջ նոր գլուխ բացեցին մեր երկրում կառուցված ատոմային հզոր սառցահատները։ Սկսվել է երկրի ընդերքի հետախուզումը գերխոր հորատանցքերի միջոցով։ Սկսել են տեխնիկական լազերները լայնորեն կիրառվել արդյունաբերության և բժշկության մեջ։

Քիչ բան չի արվել գյուղատնտեսության զարգացման համար։ Այստեղ 30 տոկոսով մեծացել է աշխատանքի էներգազինվածությունը, գրեթե մեկ երրորդով՝ կոլտնտեսություններին ու սովխոզներին մատակարարվող հանքային պարարտանյութերի քանակը։ Գյուղում աշխատանքի կազմակերպման և տնտեսական կառավարման նոր ձևերի զարգացման զուգակցմամբ դա շոշափելի արդյունք է տալիս։

Ինքներդ դատեցեք։ Անցյալ տարի ևս եղանակի հարցում մեր բախտը չբերեց, իսկ հացահատիկի բերքը, այնուամենայնիվ, անցավ 190 միլիոն տոննայից։ Նկատելիորեն աճեց նաև անասնապահության մթերատվությունը։ Այս ամենը մեկ անգամ ևս հաստատում է, որ լավ կազմակերպված, համառ աշխատանքը նույնիսկ դժվարին պայմաններում տալիս է իր պտուղները։ Այժմ խոսքը կոնկրետ մարդկանց մոբիլիզացնելու, տեխնիկան կազմ ու պատրաստ վիճակում դնելու, դաշտային աշխատանքների հստակ կազմակերպումն ապահովելու մասին է։ Եվ՝ չհապաղել, չէ որ գարնանացանը, ինչպես ասում են՝ ուր որ է կսկսվի։ Նաև անհրաժեշտ է հոգալ անասունների ձմեռումը հաջողությամբ ավարտելու մասին։

Անցած հինգ տարում միջազգային կյանքի բարդությունները մեզ հարկադրեցին զգալի ռեսուրսներ հատկացնել երկրի անվտանգության ամրապնդման հետ կապված կարիքներին։ Բայց այդ պայմաններում անգամ սոցիալական ծրագրերի կրճատում մենք մտքներովս էլ չենք անցկացրել։ Չէ որ մեր ողջ աշխատանքի վերջնական նպատակը սովետական ժողովրդի կյանքի բարելավումն է։ **(Երկարատև ծափահարություններ)**։ Եվ մենք այդ հարցին մոտենում



ենք լայն ընդգրկումով։ Մենք ուզում ենք, որ մարդիկ ոչ միայն ավելի լավ ապահովված լինեն նյութապես, այլև լինեն ֆիզիկապես առողջ, հոգևոր առումով զարգացած, հասարակական իմաստով ակտիվ։

Ազգային եկամտի չորս հինգերորդն անցած ժամանակամիջոցում հատկացվել է ժողովրդի բարեկեցությանը։ Աճել են մարդկանց ռեալ եկամուտները։ Ավելի են հարստացել նաև սպառման հանրային ֆոնդերը։ Բայց չէ՞ որ դա այն աղբյուրն է, որտեղից վերցվում են միջոցները կրթության, առողջապահության համար, կենսաթոշակներ վճարելու, բնակելի ֆոնդերը պահպանելու համար։

Մարդկանց բարեկեցության բարձրացմանն են նպատակամղված թե՛ մեր պարենային ծրագիրը, թե՛ ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն ու սպասարկումների համակարգը զարգացնելու ծրագիրը, որը մշակվում է։ Այժմ շատ բան է արվում լավորակ, գնայուն ապրանքների արտադրությունն ընդլայնելու համար։ Սկսվել է թեթև ու սննդի արդյունաբերության ձեռնարկությունների արդիականացումը։ Այս գործում մենք ակտիվ համագործակցում ենք ՏՓԽ-ի երկրների հետ։

Կուսակցության մշտական հոգածության առարկան են նաև այնպիսի կենսական պրոբլեմներ, ինչպիսին են բնակարանների, նախադպրոցական հիմնարկությունների շինարարությունը, հիվանդանոցների ու պոլիկլինիկաների ցանցի ընդլայնումը։ Անցյալ տարի կառուցվեց ավելի քան երկու միլիոն բնակարան՝ ավելի շատ, քան անցած վերջին հինգ տարիներից որևէ մեկում։ **(Երկարատև ծափահարություններ)**։ Այս հնգամյակում բնակելի տների գործարկման առաջադրանքը շատ բարձր է։ Բայց հիմքեր կան կարծելու, որ այն կկատարվի։ Թերևս նաև կգերակատարվի։

Բոլորս էլ, իհարկե, հասկանում ենք, որ բնակարանային պրոբլեմն ամենևին լուծված չէ և ուղիներ կփնտրենք բնակարանային պայմանների հետագա բարելավման համար, ընդ որում ո՛չ միայն պետության միջոցների հաշվին։ Ըստ երևույթին պետք է ավելի համարձակորեն դիմել նաև կոոպերատիվ հիմունքներով և անհատական շինարարության ընդլայնմանը։ **(Ծափահարություններ)**։ Ինչ վերաբերում է մանկապարտեզներին ու մանկամսուրներին, ապա այստեղ հաջողվել է լարվածությունը որոշ չափով թուլացնել։ Բայց դեռ շատ անելիքներ կան։

Նախատեսվում է մոտակա տարիներս բարձրացնել ուսուցիչների և ժողովրդական կրթության մյուս աշխատողների աշխատավարձը։ Այսուհետ ևս հոգատարություն կցուցաբերվի պատերազմի ու աշխատանքի վետերանների, բազմազավակ ընտանիքների, նորապսակների նկատմամբ, առհասարակ սովետական մարդկանց կենսապայմանների բարելավման նկատմամբ։ **(Երկարատև ծափահարություններ)**։

Ըստ երևույթին արժե հատկապես խոսել 1983 թվականի մասին։ 1982 թվականի նոյեմբերին Կենտկոմի պլենումը, ինչպես գիտեք, մշակեց այնպիսի միջոցառումների կոմպլեքս, որոնք մեր էկոնոմիկային մեծ դինամիզմ հաղորդեցին։ Մենք սկսեցինք հաղթահարել հնգամյակի առաջին երկու տարիների աննպաստ միտումը, երբ դանդաղել էին տնտեսական աճի տեմպերը։ Հատկապես գնահատելի է, որ սկսեց ավելի արագ աճել աշխատանքի արտադրողականությունը, բարելավվեցին որակական ցուցանիշները էկոնոմիկայի շատ օղակներում։

Վերցնենք թեկուզ ձեր շրջանը։ Արդյունաբերական արտադրության ամբողջ աճն ստացվել է առանց աշխատողների թիվն ավելացնելու։ Դուք ակտիվ ընդգրկվել եք աշխատանքի արտադրողականության աճի, արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանի գերակատարման համար ներկայումս ծավալված շարժման մեջ։

Թույլ տվեք անձնական աշխատանքային հաջողությունների առթիվ շնորհավորել ջուլհակուհի Մարիա Դմիտրիևնա Պոլեշչուկին, **(ծափահարություններ)**, խառատ Ալեքսանդր Միխայլովիչ Գորբունովին, **(ծափահարություններ)**, ապակեգործ Նինա Սերգեևնա Իզմայլովային, **(ծափահարություններ)**, հավաքող

փականագործ Ալեքսանդր Նիկոլաևիչ Սեռովին (ծափահարություններ), Կույբիշևյան շրջանի բոլոր առաջավորներին։ (Երկարատև ծափահարություններ):

Այսօր Վիկտոր Վասիլևիչ Գրիշինը ինձ հաղորդեց, որ Մոսկվայի աշխատավորները կատարել և նույնիսկ փոքր-ինչ գերակատարել են երկու ամսվա պլանը։ Դա մեծ նվաճում է։ (Ծափահարություններ): Թույլ տվեք այս ամբիոնից բոլոր մոսկվացիներին հաղորդել մեր լավագույն մաղթանքներն ու խորին շնորհակալությունը նրանց մեծ աշխատանքի համար։ (Երկարատև ծափահարություններ):

Ձեռք բերվածը, ընկերներ, մեծ աշխատանքի, իհարկե, միայն սկիզբն է։ Մեզ սպասող գործերը, ընդ որում՝ անհետաձգելի, շատ-շատ են։ Մենք կարող ենք և ուզում ենք առաջ գնալ ավելի արագ։ Կարող ենք և պետք է անհամեմատ եռանդագին լուծենք էկոնոմիկայի ինտենսիվ զարգացման պրոբլեմները։ Չէ՞ որ միայն այդ հիման վրա է հնարավոր իրականացնել ժողովրդի նյութական ու հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարումը։

Մի խոսքով՝ անդրադառնալով ապագայի պլաններին, երբեք չի կարելի մոռանալ մի հասարակ ճշմարտություն, ավելի լավ ապրելու համար պետք է ավելի լավ էլ աշխատել։ (Երկարատև ծափահարություններ): Մեր սոցիալական ծրագրերի իրականացման ասպարեզում հաջողությամբ առաջ ընթանալու համար անհրաժեշտ է էկոնոմիկայի և ամենից առաջ դրա արդյունավետության կայուն, դինամիկ աճ։ Հենց այդ մասին էր խոսվում Կենտկոմի դեկտեմբերյան և փետրվարյան պլենումներում։ Մեզ հաջողվել է տնտեսական ցուցանիշները բարելավել հիմնականում դեռևս այն ռեզերվների հաշվին, որոնք գտնվում էին, ինչպես ասում են՝ ձեռքի տակ, մակերեսին։ Մենք ձեռնամուխ եղանք կարգուկանոնի, կազմակերպվածության, կարգապահության ամրապնդմանը։ Եվ դա անմիջապես նկատելի տնտեսական արդյունք տվեց։

Անհրաժեշտ է ընթանալ առաջ՝ դեպի որակական խոր փոփոխություններ ժողովրդական տնտեսության մեջ։

Էկոնոմիկայի ասպարեզում մեզ մոտ դեռևս քիչ չեն այնպիսի տեղամասերը, որտեղ ետ մնալը ուղղակի աչքի է զարնում։ Բնավ լիովին չի օգտագործվում առկա արտադրական պոտենցիալը։ Անհանդուրժելիորեն թույլ է մեքենաշինության փորձարարական բազան։ Դանդաղ է կրճատվում ծանր ֆիզիկական աշխատանքի և որակավորում չպահանջող աշխատանքի բաժինն արդյունաբերական արտադրության և շինարարության մեջ։

Մեզ համար բացարձակ անհրաժեշտություն է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արագ և անընդհատ նորացումը գիտության և տեխնիկայի ժամանակակից նվաճումների հիման վրա։ Սա մեր արմատական խնդիրներից մեկն է։ Առանց դրա հասարակության առաջընթացը պարզապես աներևակայելի է։

Կուսակցությունն ամենայն սրությամբ է դնում նաև լայն ճակատով էկոնոմիկայի կառավարման կատարելագործման ծավալման, տնտեսական մեխանիզմի վերակառուցման հարցը։ Այս աշխատանքի հիմնական ուղղությունները սահմանված են։ Դրանք լիովին համապատասխանում են դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքին։

Մենք պետք է պարտադրաբար ամրապնդենք կենտրոնացված կառավարումն ու պլանավորումը, հասնենք դրանց առավել ներգործունության և ճկունության։ Պետք է գործն այնպես կազմակերպել, որ համապետական տնտեսական մարմիններն իրենց բոլոր ուժերը նպատակամղեն երկրի համար իրոք հանգուցային նշանակություն ունեցող հարցերի լուծմանը։ Իսկ նրանց ներկայիս ինչ-որ հոգսեր միանգամայն կարող են ստանձնել ստորադաս կազմակերպությունները՝ ճյուղային կամ տեղական։

Մենք խափանել ենք և կխափանենք ինչպես նեղ գերատեսչական, նույնպես և տեղայնական նկատառումներից բխող ամեն մի գործողություն։ Բայց, ընկերներ, մեղքներս ինչ թաքցնենք, դեռևս լինում են այնպիսի դեպքեր, երբ տեղայնության դեմ պայքարելու անվան տակ ըստ էության կաշկանդում են տեղական նախաձեռնությունը։ Դա ամենևին բանի նման չէ։ Տնտեսական ռե-



գիոններում, միավորումներում, ձեռնարկություններում տնտեսական նախաձեռնության, ստեղծագործության ծավալումը կարևորագույն և բուն համապետական խնդիրներից է։

Սա, եթե ուզում եք՝ մեր երկրի ժողովուրդների բարեկամության՝ կուսակցության լենինյան քաղաքականության այդ կարևորագույն հիմքերից մեկի, հետագա ամրապնդման հարց է նաև։ Հարկ է, որ աճեն յուրաքանչյուր հանրապետության՝ Սովետական Միության էկոնոմիկայի, որպես ժողովրդատնտեսական միասնական կոմպլեքսի զարգացման մեջ արդյունավետ ավանդ ներդնելու հնարավորությունները։ Անշուշտ, համաժողովրդական շահերն այստեղ պետք է դասել ամեն ինչից վեր։ Սա ուղղակի բխում է մեր հասարակության, մեր աշխարհհայացքի ինտերնացիոնալ բնույթից։ (Ծափահարություններ):

Տնտեսավարման ձևերը, ընկերնե՛ր, պետք է համապատասխանեն ժամանակակից պահանջներին։ Դրան, անտարակույս, կօգնեն ներկայումս անցկացվող մի շարք տնտեսափորձերը։

Դրանց էությունն այն է, որ ավելի շատ իրավունքներ տրվեն ձեռնարկություններին, բարձրացվի դրանց պատասխանատվությունը, դրանք ազատվեն կենտրոնի ավելորդ խնամակալությունից։ Փորձով ստուգելը հնարավորություն կընձեռի որոնումների փուլից անցնելու վստահ առաջընթացի։ Բայց, ընկերնե՛ր, նորի որոնումն ու արմատավորումը, իհարկե, չպետք է կատարվեն միայն այս կամ այն տնտեսափորձում ընդգրկված ձեռնարկություններում։

Բոլորի համար էլ, օրինակ, ակնբախ է, որ անհրաժեշտ է ասպարեզ բացել տնտհաշվարկային հիմունքներն ամենուրեք արմատավորելու համար։ Պետք է վերացնել այն ամենը, ինչ խանգարում է դրան։

Մեր գլխավոր հոգսերից մեկը պետք է լինի այն, որ միշտ և ամենուրեք կենսագործվի ըստ աշխատանքի բաշխման սոցիալիստական սկզբունքը։ Ով աշխատում է ուժերի լիակատար նվիրումով, պետք է վաստակի մեջ անպայման առավելություններ ունենա։ (Ծափահարություններ): Կարող են ասել. չէ՞ որ մենք հիմա էլ կարողանում ենք անփույթ աշխատողներին պատժել ռուբլով, իսկ բարեխիղճներին պարգևավճար ենք տալիս։ Այդ այդպես է։ Բայց մինչև հիմա ըստ երևույթին պատժելիս պակասում է խստությունը, իսկ նյութապես խրախուսելիս՝ հարկ եղած արդարությունը, իսկ երբեմն էլ, եթե ուզում եք. նաև առատաձեռնությունը։ Այս հարցով պետք է զբաղվել հիմնավորապես և դարձյալ առանց հապաղելու։

Պետք է վճռականորեն հաղթահարել ամեն տեսակ պահպանողականություն ու քարացածություն։ Մի խոսքով՝ էկոնոմիկայի ասպարեզում օրվա լոզունգը պետք է դառնա՝ ճիշտ մտքից, փորձով լավ զինված՝ դեպի համարձակ գործողություններ։ (Ծափահարություններ):

## 2.

Ինչպես տեսնում եք, ընկերնե՛ր, մեզ մոտ ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացման մեծ աշխատանք է կատարվում։ Այդ աշխատանքը, հասկանալի է, դյուրին չէ։ Եվ ահա, աշխատանքների ամենաթեժ պահին՝ անցյալ տարվա հունիսին, գումարվեց Կենտկոմի պլենում՝ քննարկելու համար կուսակցության գաղափարախոսական, մասսայական-քաղաքական գործունեության հարցերը։ Ինչո՞ւ։ Այստեղ ի՞նչ կապ կա մեր տնտեսական հոգսերի հետ։ Կապը ուղղակի է, անխզելի։

Բանն այն է, որ այսօր, ինչպես երբեք անցյալում, հասարակության կուսակցական ղեկավարման հաջողությունները պայմանավորված են գաղափարախոսական, կազմակերպչական և տնտեսական աշխատանքի միասնության լենինյան սկզբունքի հետևողական պահպանմամբ։

Սոցիալիզմի կառուցում ու կատարելագործում նշանակում է ո՛չ միայն ստեղծել ժամանակակից գործարաններ ու էլեկտրակայաններ, շենացնել մեր հողը, մեր գյուղերն ու քաղաքները։ Դա կոմունիստների անկապտելի, բայց ամենևին էլ միակ հոգսը չէ։ Վերափոխելով մարդկանց կենսապայմանները՝ անհրաժեշտ է միևնույն ժամանակ ամեն ինչ անել նրանց գաղափարաբարոյական վեհացման համար։ Պարզ է, որ մարդկանց հոգևոր զարգացման, նրանց

սոցիալիստական դաստիարակության ասպարեզում առանց մեծ աշխատանք տանելու անկարելի է լուծել հասուն սոցիալիզմի կատարելագործման խնդիրները։

Հունիսյան պլենումի որոշումների իմաստն էլ հենց այն է, որ շարժման մեջ դրվեն մասսաների գիտակցականության և գաղափարական համոզվածության մեջ առկա բոլոր ստեղծարար ուժերը։ Չէ՛ որ դա նրանց աշխատանքային և հասարակական ակտիվության հիմքն է։

Ես խոսեցի էկոնոմիկայի կառավարման համակարգի լուրջ վերակառուցման անհրաժեշտության մասին։ Սակայն, հասկանալի է, որ այդ համակարգի բարելավումը բնավ չի հանգում այսպես կոչված ի պաշտոնե կառավարչական աշխատողների գործունեության մեջ եղած թերությունների վերացման։

Պակաս կարևոր չէ մի այլ բան. գործն այնպես կազմակերպել, որ ողջ արգասավորությամբ և ուժով բացահայտվեն աշխատավորական ամենալայն զանգվածների նախաձեռնությունն ու ստեղծագործությունը։

Ինձ ասացին, որ ձեր շրջանի մի շարք ձեռնարկություններում արտադրական որոշ գործողությունների կատարումը ստանձնել են արդյունաբերական ռոբոտները։ Գնալով դրանց թիվը, իհարկե, կմեծանա։ Բայց ձեզ հավատացնում եմ՝ այն ժամանակ էլ չի վերանա նշանակությունը այն բանի, ինչ մենք անվանում ենք տնտեսական առաջընթացի մարդկային գործոն։ Կամ այլ խոսքով՝ մարդկանց գիտելիքների, հետաքրքրությունների, տրամադրությունների նշանակությունը։ (Ծափահարություններ)։ Չէ՛ որ ամեն մի գործ ի վերջո մարդն է անում, մարդն է փառավորում գործը։ Գիտատեխնիկական առաջընթացը երբեք չի վերացնի այս հին ճշմարտությունը։ (Ծափահարություններ)։

Սովետական մարդը արտադրության մեջ միշտ պետք է լինի լիիրավ և պատասխանատու տեր։ Հենց դրան է ծառայում աշխատավորական կոլեկտիվների մասին անցյալ տարի ընդունված օրենքը։ Այն նպատակամղված է աշխատավորների հենց տիրոջական ձեռներեցության հետագա ծավալմանը։

Յուրաքանչյուր կոլեկտիվի կյանքում հսկայական է բարոյական խթանների դաստիարակչական ուժը։ Մեզ մոտ աշխատանքը մարդու հասարակական ճանաչման, նրա սոցիալական հեղինակության հիմքն է։ Ժողովրդի արդարացի վրդովմունքն են հարուցում անբանները, գործափոխները և հարբեցողները, որոնք աշխատավոր մարդու վսեմ անվան տակ փորձում են քողարկել սեփական ծուլությունն ու անբանությունը և նույնիսկ պահանջում են հասարակական հարգանք իրենց նկատմամբ։ Հասարակության մեջ աշխատանքի նկատմամբ հարգալից վերաբերմունքի և միևնույն ժամանակ անգործության, անկարգության, անպատասխանատվության բոլոր ձևերի նկատմամբ արհամարհանքի մթնոլորտի ստեղծումն ու ամրապնդումը դաստիարակչական աշխատանքի գլխավոր խնդիրներից մեկն է։ (Երկարատև ծափահարություններ)։

Հատկապես ուզում եմ խոսել ահա թե ինչի մասին։ Կուսակցությունն ու պետությունը, ինչպես գիտեք, ուժեղացրել են պայքարը այնպիսի խայտառակ երևույթների դեմ, ինչպիսին են պետական միջոցների շռայլումը, աչքակապությունը և պաշտոնեական դիրքի չարաշահումը, հափշտակումներն ու կաշառակերությունը։ Սա ժամանակավոր կամպանիա չէ։ Սա այն գիծն է, որ վարվելու է մշտապես և անշեղորեն։ Այստեղ ոչ ոքի նկատմամբ ներողամտություն չկա և չի լինի։ Ոչ ոք չպետք է այս առթիվ պատրանքներ տածի։ (Ծափահարություններ)։ Ուստի հարկավոր են ղեկավարների առավել բարձր պատասխանատվություն և խստապահանջություն, այդ հարցերի նկատմամբ կուսակցական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների, բոլոր սովետական մարդկանց մշտական ուշադրություն, ժողովրդական վերահսկողության, իրավակարգի ու արդարադատության մարմինների արդյունավետ աշխատանք։

Ընկերնե՛ր, մեր հսկայական երկրում այժմ թերևս չգտնվի այնպիսի անկյուն, որտեղ չքննարկեն սովետական դպրոցի պրոբլեմներն ու հեռանկարները։ Դպրոցի ռեֆորմի հարցը ոչ ոքի անտարբեր չի թողնում։ Այն վերաբերում է բացառիկորեն բոլորին, ինչպես ասում են՝ թե՛ մեծին, թե՛ փոքրին։ Համաժողովրդական ու պրոֆեսիոնալ դպրոցի ռեֆորմի նախագծի համաժողովրդական քննարկումը այն բանի ակնբախ օրինակն է, թե սովետական իշխանությունն ինչպե՛ս է լուծում համապետական նշանակություն ունեցող հարցերը, իսկական դեմոկրատիայի օրինակ է։ (Ծափահարություններ)։ Դուք, իհարկե, ծանոթ եք այդ ռեֆորմի հիմնական ուղղություններին։ Ես կցանկանայի այստեղ խոսել միայն աշխատանքային դաստիարակության մասին։



Աշխատանքը երբեք ժամանց, զվարճանք չի եղել։ Կոմունիզմի օրոք ևս աշխատանքը կմնա որպես, Մարքսի բառերով ասած՝ «դիվականորեն լուրջ բան»։ Աշխատելը դժվար բան է, խոսք չկա։ Իսկ ծնողները երբեմն գայթակղվում են նրանով, որ երեխաներին զերծ պահեն դժվարություններից։ Բայց չէ՛ որ միայն հանրօգուտ աշխատանքն է մարդկային կյանքին կշիռ տալիս։ Եվ ահա, հարկավոր է երեխաներին սովորեցնել ոչ թե այն բանին, ինչը հեշտ է (դա նրանք իրենք էլ կկարողանան անել), այլ այն բանին, ինչը դժվար է։ Աշակերտներին համակել աշխատասիրությամբ, դաստիարակչական պրոցեսի մեջ լիովին ներառնել արտադրողական աշխատանքի ուժը. հենց այս է դաստիարակության կարևորագույն խնդիրներից մեկը։ (Երկարատև ծափահարություններ)։

Խոսքը վերաբերում է, ինչպես ինքներդ հասկանում եք, ամենևին էլ ոչ այն բանին, որ նսեմացվի ընդհանուր կուլտուրայի, գիտելիքների նշանակությունը, ոչ այն բանին, որ սահմանվի աշխատանքային պարհակի նման ինչ-որ պարտականություն։ Դպրոցի ռեֆորմը, իհարկե, ոչ մի ընդհանուր բան չունի այնպիսի գաղափարիկների հետ, որպիսիք տարածում են թշնամական ռադիոձայները։ Խոսքը վերաբերում է այլ բանի. չի կարող լինել նոր աշխարհի այնպիսի գիտակից կառուցող, որը վարժված չէ աշխատելու։

Մենք մշտապես հոգում ենք այն մասին, որ պատրաստենք այնպիսի երիտասարդություն, որը չի երերա, չի կքի երկրի բախտի համար, սոցիալիզմի ու աշխարհի բախտի համար պատմական պատասխանատվության բեռան տակ։ Այնպիսի երիտասարդություն, որը կարողանար ոչ միայն յուրացնել ավագ սերունդների փորձը, այլև այն հարստացնել սեփական մեծագործություններով։ (Երկարատև ծափահարություններ)։ Սա դպրոցի ու ընտանիքի գործն է, և ո՛չ միայն նրանց։ Սա կոմերիտմիության ու արհմիությունների, աշխատավորական կոլեկտիվների գործն է։

Սա կուսակցության մեծ խնդիրն է։ Վերջին հաշվով, սա մեր սոցիալիստական հայրենիքի ապագայի հուսալի ապահովման հարցն է։ Մենք լուծում ենք այս խնդիրը, լուծում ենք հաջողությամբ։ (Երկարատև ծափահարություններ)։

## 3.

Ընկերնե՛ր, դեռևս աշխարհի առաջին բանվորագյուղացիական պետության ծննդյան նախօրեին Լենինը գրել է. «Սոցիալիզմի ժամանակ... բնակչության մասսան կբարձրանա այն աստիճանին, որ կկարողանա ինքնուրույն մասնակցել ոչ միայն քվերակություններին ու ընտրություններին, այլև ամենօրյա կառավարմանը»։ Եվ այսօր մեր ժողովրդական իշխանության մարմինների և ամենից առաջ սովետների աշխատանքի նոր հաջողությունների բանալին այն է, որ պետական գործերում ավելի ու ավելի լայնորեն ներգրավեն գիտակից, քաղաքականապես հասուն, ստեղծագործաբար մտածող քաղաքացիներին։

Սովետների այդ ակտիվը, որը տասնյակ միլիոնների է հասնում, պետք է լինի իրոք ակտիվ։ Դրա հնարավորությունները վերջին տարիներս էապես աճել են։ Բարձրացել է բոլոր մակարդակների սովետների դերը ժողովրդատնտեսական և սոցիալ-քաղաքական բազմազան խնդիրների լուծման գործում։

Ամբողջովին արդարացված է, որ տեղական սովետներն սկսել են ավելի մեծ չափով կոորդինացնել իրենց տարածքում գտնվող զանազան ճյուղերի ձեռնարկությունների գործունեությունը։ Եվ լավ է, որ նրանք ուժեղացնում են վերահսկողությունը ժողովրդական սպառման ապրանքների արտադրության նկատմամբ, սպասարկման ոլորտի զարգացման, շրջակա միջավայրի պահպա-

նության նկատմամբ։ Սովետների վերահսկչական ֆունկցիաներն առհասարակ պետք է բարձրացնել և բարձրացնել։ Այստեղ գործունեության հսկայական ասպարեզ կա։

Սովետական պետության դեմոկրատական հիմունքների հետագա զարգացման համար անգնահատելի նշանակություն ունեն գործերի ռեալ վիճակին մարդկանց լայնորեն իրազեկ պահելը, կուսակցական ու սովետական հիմնարկությունների աշխատանքի հրապարակայնության ընդլայնումը։ Սրանում մեծ է մասսայական ինֆորմացիայի միջոցների դերը։

Վերջին ժամանակներս դրանց աշխատանքը որոշ չափով աշխուժացել է։ Բայց մենք դրանցից սպասում ենք երկրի և ամբողջ աշխարհի կյանքի վերաբերյալ ավելի խոր ու հետաքրքրական նյութեր, հասունացած պրոբլեմների առաջադրման ավելի մեծ համարձակություն։

Եվ, իհարկե, միշտ անհրաժեշտ են հստակ վերաբերմունք աշխատավորների առաջարկությունների ու քննադատական դիտողությունների նկատմամբ, անհանդուրժողություն քննադատության ճնշման ամեն տեսակ ձևերի նկատմամբ։ (Ծափահարություններ)։

Մենք՝ կոմունիստներս, հպարտանում ենք, որ կուսակցությունը, որպես ամբողջ քաղաքական սիստեմի կորիզ, հսկայական ազդեցություն ունի սովետներում։ Եվ այդ ազդեցությունն ապահովվում է ոչ թե նրանով, որ սովետներում ՍՄԿԿ-ի անդամները թվական գերակշռություն ունեն։ Ամբողջությամբ վերցված անկուսակցական դեպուտատները մեզանում, ինչպես հայտնի է, ավելի շատ են։ Հասարակության մեջ իր քաղաքական ազդեցությունը կուսակցությունը հաստատում է հանուն աշխատավոր մարդկանց բարօրության և երջանկության մղած իր անդուլ պայքարով, այնպիսի քաղաքականություն մշակելու և կենսագործելու ունակությամբ, որը համապատասխանում է մեր զարգացման այս կամ այն փուլի պահանջմունքներին։ (Ծափահարություններ)։

Կուսակցությունը մեծ ուշադրություն է նվիրում արդի ժամանակաշրջանի առանձնահատկությունների իմաստավորմանը, հասարակության սոցիալ-տնտեսական հասունացման մեր ձեռք բերած աստիճանի սթափ, առանց ուտոպիայի նշույլի սահմանմանը։ Սահմանելով այդ աստիճանը, մենք մշակում ենք ՍՄԿԿ-ի քաղաքականության միանգամայն գիտական հիմունքները։ Եվ այստեղ հսկայական դեր է խաղում զարգացած սոցիալիզմի՝ որպես պատմականորեն տևական այն փուլի կոնցեպցիան, որի սկզբում գտնվում է մեր երկիրը։ Զարգացած սոցիալիզմի կատարելագործման խնդիրների լուծման պրոցեսում է, որ տեղի է ունենում աստիճանական առաջընթացը դեպի կոմունիզմ։

Դժվար է գերագնահատել կուսակցության արած այս հետևությունների սկզբունքային քաղաքական նշանակությունը։ Դրանք հնարավորություն են ընձեռում մեր հասարակության զարգացման պատկերն ավելի պարզ տեսնելու իր ողջ բարդությամբ, հակասականությամբ և բազմազանությամբ։ Դրանք նպաստում են այն խզումների գործնական վերացմանը, որ երբեմն թույլ են տրվել խոսքի ու գործի միջև, հասարակության ռեալ հնարավորությունների և չհիմնավորված կանխատեսումների միջև։ Կուսակցության Կենտրոնական կոմիտեն հենց այս տեսանկյունից է այսօր իրականացնում ՍՄԿԿ-ի ծրագրի նոր խմբագրման նախապատրաստման կարևոր աշխատանքը։ (Ծափահարություններ)։ Կուսակցությունը ձգտում է, որ լենինյան ոճը իր ողջ բազմազանությամբ ու հարստությամբ դառնա կուսակցական, սովետական, տնտեսական յուրաքանչյուր ղեկավարի հոգու պահանջմունքը, անփոխարինելի աշխատանքային գործիքը։ Մեզ մոտ ղեկավարների լիազորություններն ու իրավունքները լայն են, բայց մեծ է նաև պատասխանատվությունը։ Եվ ղեկավարի համար չի կարող լինել ավելի վատթար բան, քան մեծամտությունը, անձնապաստանությունը, «իշխանության, սոսկ որպես իշխանության,— Լենինի արտահայտությամբ,— անշնորհք օգտագործումը, երբ մարդիկ ասում են՝ ես իշխանություն եմ ստացել, ես կարգադրել եմ, և դու պետք է ենթարկվես»։ Ղեկավարի ուժը պաշտոնեական հեղինակությունը և անձնական հեղինակությունը միաձուլելու հմտության մեջ է։ (Ծափահարություններ)։



Կուսակցության ու պետության կադրերը մասսաների համակրանքն ու հարգանքը նվաճում են ամենից առաջ կենդանի հասարակական գործով, նվաճում են իրենց եռանդով ու գիտելիքներով, այնպիսի անձնական օրինակով ու վարքով, որը զերծ է այն ամենից, ինչը վիրավորում է մարդու բարոյական զգացմունքները։ (Ծափահարություններ)։ Ուստի ղեկավարը ուրիշների նկատմամբ կարող է պահանջկոտ լինել, եթե ամենից շատ պահանջկոտ է իր նկատմամբ։ Սա նրան, բացի պաշտոնեական իրավունքից, նաև բարոյական իրավունք է տալիս հաստատակամություն հանդես բերել այն դեպքերում, երբ ավելի ճիշտ է, ինչպես ասում են, «իզուր տեղը չճառել, երբ հարկավոր է իշխանություն բանեցնել»։ Ղեկավարի հեղինակության հիմքը ժողովրդի հավանությունն ու պաշտպանությունն է։ Իսկ ով դրանք կորցնում է, ով խուլ է մնում մասսաների կարծիքի նկատմամբ, նա չի կարող և չպետք է ղեկավար պոստ զբաղեցնի։ (Ծափահարություններ)։

Մի հարց ևս. մեզ մոտ քիչ չեն մասսաների ինքնագործունեության, հասարակության ու պետության գործերին նրանց մասնակցության կենդանի ձևերը։ Բայց կան նաև մտացածին ձևեր, որոնցից թերևս արժե հրաժարվել։

Որոշ շրջաններում և մարզերում, օրինակ, հրապուրվում են ամեն առիթով զանազան շտաբների ու հանձնաժողովների ստեղծմամբ։ Դրանք երբեմն այնքան շատ են լինում, որ իրենք՝ կազմակերպիչներն էլ գլուխ չեն հանում, թե ում ինչ է հանձնարարված և ով ինչի համար է պատասխանատու։ (Աշխուժություն դահլիճում։ Ծափահարություններ)։ Առանձին աշխատողներ համարյա մի դյուժին զանազան հանձնաժողովներ են գլխավորում ի վնաս իրենց ուղղակի պաշտոնեական պարտականությունների։ Այս ամենը մարդկանց միայն զբաղեցնում է ավելորդ նիստերով, հանգեցնում ուժերի փոշեցրման, բնավ չի սատարում գործին։ Որոշ ղեկավարներ երբեմն, փոխանակ պատասխան տալու իրենց աշխատանքի համար, միայն «թաքնվում են,— ինչպես իր ժամանակին շատ դիպուկ նկատել է Լենինը,— հանձնաժողովների թիկունքում»։

Մեր դեմոկրատիան իր էությամբ գործող, աշխատող դեմոկրատիա է։ Նրա ընդլայնումը, սովետական ողջ պետականության կատարելագործումը մեր հասարակության վերընթաց շարժման կարևոր ուղղությունն են։ Եվ կուսակցությունն այդ առաջընթացի մոտորն է, շարժիչ ուժը։ Իր ողջ ներքին կյանքով նա ցույց է տալիս իրոք սոցիալիստական դեմոկրատիզմի, անկապտելի իրավունքների և անվիճարկելի պարտականությունների օրգանական զուգակցման օրինակ։ (Երկարատև ծափահարություններ)։

## 4.

Այժմ՝ միջազգային գործերի մասին։ Սովետական ընտրողների ամենակարևոր, ամենահրամայական պատվիրաններից մեկը եղել է, կա և կլինի խաղաղությունը աչքի լույսի պես պահպանելու, մեր հայրենիքի անվտանգությունն ապահովելու պատվիրանը։ Կարող եմ զեկուցել, որ կուսակցությունը և սովետական պետությունը անշեղորեն հետևել են այդ պատվիրանին։ Հետևել են ոչ դյուրին պայմաններում։

Դուք գիտեք, որ վերջին տարիներին բնորոշ էր ամերիկյան իմպերիալիզմի առավել ագրեսիվ ուժերի քաղաքականության՝ բացահայտ ռազմամոլության քաղաքականության, աշխարհակալության հավակնությունների, պրոգրեսին հակադրվելու, ժողովուրդների իրավունքներն ու ազատությունը խախտելու քաղաքականության կտրուկ ակտիվացումը։ Այդ քաղաքականության գործնական կիրառման օրինակներ աշխարհը քիչ չի տեսել։ Այդ օրինակներից են Լիբանան կատարված ներխուժումը և Գրենադայի օկուպացումը, Նիկարագուայի դեմ ուղղված չհայտարարված պատերազմը։ Սիրիային ուղղված սպառնալիքները և, վերջապես, Արևմտյան Եվրոպայի վերածումը ԱՄՆ-ի միջուկային հրթիռների արձակման հրապարակի, որոնք ուղղված են ՍՍՀՄ-ի և նրա դաշնակիցների վրա։

Այս ամենը մեզ հարկադրում է ամենալուրջ ուշադրությունը նվիրել երկրի պաշտպանության ամրապնդմանը։ Սովետական մարդիկ ուզում են սպառազի-

նությունների ոչ թե ավելացում, այլ դրանց երկուստեք կրճատում։ Բայց մենք պարտավոր ենք հոգալ մեր երկրի, նրա բարեկամների ու դաշնակիցների բավարար անվտանգության մասին։ Եվ դա արվում է։ Ու թող բոլորն իմանան, որ պատերազմական արկածախնդրությունների ոչ մի սիրահարի չի հաջողվի անակնկալի բերել մեզ, որ ոչ մի պոտենցիալ ագրեսոր չի կարող հույսեր տածել խույս տալու խորտակիչ պատասխան հարվածից։ **(Բուռն, երկարատև ծափահարություններ):**

Սրա հետ մեկտեղ իրադրության բարդությունն իսկ պարտավորեցնում է կրկնապատկել, եռապատկել ջանքերը խաղաղության և միջազգային համագործակցության քաղաքականություն վարելիս։

Դժվար է նշել խաղաղության ամրապնդման համար այնպիսի կարևոր պրոբլեմ, որի առթիվ Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական երկրները վերջին տարիներին հանդես եկած չլինեն կոնկրետ, ռեալիստական առաջարկություններով։ Մեր երկրների նախաձեռնություններն ավելի ու ավելի լայն պաշտպանություն են գտնում մյուս պետությունների կողմից։ Դա ամենայն համոզչությամբ հաստատեց նաև ՄԱԿ-ի գլխավոր ասամբլեայի վերջին նստաշրջանը։

Իմպերիալիստական քաղաքագետներն ամեն կերպ ջանում են սահմանափակել սոցիալիզմի երկրների միջազգային ազդեցությունը։ Նրանք ճգնում են թուլացնել մեր համախմբվածությունը, սասանել սոցիալիստական կարգերի հիմքերը այնտեղ, որտեղ իրենց կարծիքով կարելի է հաջողության հույս ունենալ։ Նման պայմաններում առանձնապես կարևոր է պահպանել և ամրապնդել եղբայրական սոցիալիստական երկրների համերաշխությունը։ Վարշավայի պայմանագրի մասնակից պետությունների ղեկավարները վերստին միահամուռ կերպով արտահայտեցին իրենց համոզվածությունը դրանում՝ վերջերս Մոսկվայում կայացած հանդիպման ժամանակ։

ԱՄՆ-ը տնտեսական շրջափակման է ենթարկում և ռազմական սպառնալիքների է դիմում սոցիալիստական Կուբայի նկատմամբ, բայց նրան ահաբեկելու, ընտրած ուղուց շեղել ստիպելու հույսերը դատապարտված են ձախողման։ Դրա գրավականն է աննկուն կամքը Կուբայի հերոսական ժողովրդի, որը համախմբված է իր կոմունիստական կուսակցության շուրջը։ Դրա գրավականն է Լատինական Ամերիկայի անկախ պետությունների, չմիանալու շարժման մեծաթիվ մասնակիցների համերաշխությունը Ազատության կղզու հետ։ Կուբայի ժողովրդին վճռական զորավիգ են եղբայրական սոցիալիստական պետությունները։ Ինչ վերաբերում է ՍՍՀՄ-ին, ապա նա միշտ էլ Կուբայի հետ է եղել, է և կլինի թե՛ պարզ եղանակին, թե՛ փոթորկի պահին։ **(Բուռն երկարատև ծափահարություններ):**

Միջազգային կյանքում սոցիալիզմի դերի բարձրացմանը, իհարկե, կարող էր նպաստել հարաբերությունների նորմալացումը Չինական Ժողովրդական Հանրապետության հետ։ Մենք այդպիսի նորմալացման հետևողական կողմնակիցներ ենք։ Սակայն քաղաքական կոնսուլտացիաները ցույց են տալիս, որ տարաձայնությունները պահպանվում են մի շարք սկզբունքային հարցերում։ Մասնավորապես մենք չենք կարող որևէ համաձայնության գալ ի վնաս երրորդ երկրների շահերի։ Բայց կարծիքների փոխանակումը շարունակվում է, և մենք այն համարում ենք օգտակար։ Սովետական Միությունը կողմնակից է, որ կոնտակտների մակարդակը բարձրացվի այն չափով, որն ընդունելի կլինի երկու կողմերի համար։

Օգտակար է նաև այն, որ կամաց-կամաց վերածնվում են փոխշահավետ կապերը էկոնոմիկայի, մշակույթի, գիտության ասպարեզում և այլ ոլորտներում։ Դա դուր չի գալիս նրանց, ովքեր կուզեին օգուտ քաղել ՍՍՀՄ-ի ու Չինաստանի հարաբերությունների սրումից։ Բայց դա ձեռնտու է թե՛ մեր երկու երկրներին և թե աշխարհի ընդհանուր իրադրության առողջացման գործին։ **(Ծափահարություններ):**

Լարվածության անընդհատ ուժեղացման իմպերիալիստական քաղաքականության վտանգավորությունը դարձել է ակնբախ։ Այդ քաղաքականությունը որքան մեծ սպառնալիք է ստեղծում մարդկային քաղաքակրթության համար, այնքան ակտիվանում են մարդկության ինքնապահպանման ուժերը։ Արևմտյան Եվրոպայում աճում է վրդովմունքը նրանց գործողությունների առթիվ, ովքեր նրա անվտանգությունը զոհաբերում են Վաշինգտոնի կայսերական հավակնություններին։ Հակահրթիռային շարժման միլիոնավոր մասնակիցները այդ մասին ասում են ազդու լեզվով։

Նաև Արևմուտքի երկրների ոչ բոլոր ղեկավար գործիչները, ոչ բոլոր ազդեցիկ քաղաքական կուսակցություններն են, որ հավանություն են տալիս ԱՄՆ-ի վարչակազմի արկածախնդրությանը։ Դա անհանգստացնում է նաև հենց Ամերիկայի հասարակայնության նշանակալից մասին։ Այնտեղ ավելի ու ավելի պարզորոշ են ըմբռնում, որ արագացված ռազմականացումը և միջազգային իրադրության սրումը ԱՄՆ-ին ռազմական գերազանցություն և քաղաքական հաջողություններ չբերեցին և չեն բերի։ Դրանք լոկ հանգեցնում են Վաշինգտոնի ռազմատենչ կուրսի քննադատության ուժեղացմանը ամենուրեք ամբողջ աշխարհում։ Մարդիկ ուզում են խաղաղություն և անդորր ու ոչ թե պատերազմական հիստերիա։ Կարող եմ ասել, որ Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովի թաղման առթիվ ժամանած արտասահմանյան շատ պատվիրակությունների ղեկավարների հետ մեր ունեցած զրույցները այդ բանը հաստատեցին բավարար համոզչությամբ։

Այս ամենը թույլ է տալիս հուսալու, որ վերջ ի վերջո կհաջողվի իրադարձությունների ընթացքը շրջել դեպի խաղաղություն, դեպի սպառազինությունների մրցավազքի սահմանափակում և միջազգային համագործակցության զարգացում։ **(Երկարատև ծափահարություններ):**

Լիցքաթափման արմատները խոր են։ Դրա վկայություններից մեկն է Եվրոպայում վստահության ու զինաթափման միջոցառումներին նվիրված Ստոկհոլմի կոնֆերանսի գումարումը։

Ժողովուրդների խաղաղության ու անվտանգության համար, անշուշտ, հանգուցային նշանակություն ունի միջուկային սպառազինությունների մրցավազքի սանձահարումը։ Այս հարցում ՍՍՀՄ-ի դիրքավորումը պարզ է։ Մենք դեմ ենք մրցությանը միջուկային զինանոցների մեծացման ասպարեզում։ Մենք եղել ենք և մնում ենք որպես այդ զենքի բոլոր տեսակների արգելման ու ոչնչացման կողմնակիցը։ Այս առթիվ մեր առաջարկություններն արվել են վաղուց՝ թե՛ ՄԱԿ-ում, թե՛ զինաթափման Ժնևի կոմիտեում, բայց դրանց քննարկումը շրջափակվում է Միացյալ Նահանգների ու նրանց դաշնակիցների կողմից։

Ինչ վերաբերում է Եվրոպային, ապա մենք դարձյալ կողմնակից ենք այն բանին, որ նա զերծ լինի միջուկային զենքից՝ թե՛ միջին հեռահարության և թե տակտիկական։ Մենք կողմնակից ենք, որ երկու կողմերն էլ, առանց ժամանակ կորցնելու, առաջին խոշոր քայլն անեն այդ կայունացման ուղղությամբ։ Ընդսմին Սովետական Միությունը ոչ թե մտադիր է իր անվտանգությունն ամրապնդել ուրիշների հաշվին, այլ ուզում է հավասար անվտանգություն բոլորի համար։ **(Երկարատև ծափահարություններ):**

Ցավոք, այդ թեմային նվիրված բանակցություններին իր մասնակցությունը ԱՄՆ-ը վերածեց պրոպագանդայի գործիքի, որպեսզի քողարկի սպառազինությունների մրցավազքը և «սառը պատերազմի» քաղաքականությունը։ Նման խաղի մենք չենք մասնակցել և չենք մասնակցի։ **(Ծափահարություններ):** Եվրոպայում հրթիռների տեղաբաշխումով ամերիկացիները խոչընդոտներ ստեղծեցին ո՛չ միայն «եվրոպական», այլև ստրատեգիական միջուկային զենքի հարցին նվիրված բանակցությունների համար։ Վերացնել այդ խոչընդոտները (որը կվերացներ նաև մեր պատասխան միջոցառումների անհրաժեշտությունը)— ահա փոխադարձաբար ընդունելի համաձայնության մշակման ուղին։

ԱՄՆ-ի վարչակազմը վերջին ժամանակներս սկսել է հանդես գալ խաղաղասիրությամբ հնչող հայտարարություններով, մեզ կոչ անելով «երկխոսության»։

Ամբողջ աշխարհում ուշադրություն դարձրին այն բանի վրա, թե այդ հայտարարություններն ինչքան խիստ են հակասում այն ամենին, ինչ ասել, իսկ

որ գլխավորն է՝ արել և շարունակում է անել ԱՄՆ-ի ներկայիս վարչակազմը Սովետական Միության հետ իր հարաբերություններում։

Նրա բարի մտադրությունների հավաստիացումները կարող են լուրջ համարվել լոկ այն դեպքում, եթե դրանք ամրապնդվեն ռեալ գործողություններով։ (Ծափահարություններ)։ Դե, իսկ Սովետական Միությունը միշտ կողմնակից է եղել կոնկրետ հարցերի փոխադարձաբար ընդունելի գործնական լուծումներ գտնելուն՝ հօգուտ երկու երկրների, հօգուտ խաղաղության։ Նման հարցերը քիչ չեն։ ԱՄՆ-ի կառավարությունը շատ հնարավորություններ ունի գործերով ապացուցելու իր խաղաղասիրությունը։

Օրինակ, ինչո՞ւ ԱՄՆ-ը չվավերացնի գրեթե տասը տարի առաջ ՍՍՀՄ-ի հետ ստորագրված պայմանագրերը միջուկային զենքի ստորգետնյա փորձարկումները սահմանափակելու մասին, խաղաղ նպատակներով միջուկային պայթեցումների մասին և ավարտին չհասցնի միջուկային զենքի փորձարկումների լրիվ և ընդհանուր արգելման համաձայնագրի մշակումը։ Հիշեցնեմ, որ այդ հարցին նվիրված բանակցություններն ընդհատվեցին Միացյալ Նահանգների կողմից։ ԱՄՆ-ը նաև կարող է խաղաղության ամրապնդման գործում զգալի ավանդ ներդնել, համաձայնագիր ստորագրելով տիեզերքի ռազմականացումից հրաժարվելու մասին։ ՍՍՀՄ-ը, ինչպես հայտնի է, վաղուց է այդ բանն առաջարկում։

ԱՄՆ-ի կառավարության խաղաղասիրական հավաստիացումները շատ ավելի մեծ վստահություն կներշնչեին, եթե նա ընդուներ ամերիկյան ու սովետական միջուկային սպառազինությունների փոխադարձ սառեցման առաջարկը։ Արդեն այնքան շատ սպառազինություն է կուտակված, որ այդպիսի քայլը դույզն իսկ սպառնալիք չէր ստեղծի ոչ մեկ, ոչ էլ մյուս կողմի համար։ Սակայն դա զգալիորեն կբարելավեր ընդհանուր քաղաքական մթնոլորտը և, պետք է կարծել՝ կդյուրացներ համաձայնությունը միջուկային զինանոցների կրճատման վերաբերյալ։

Շատ կարևոր խնդիր է մարդկությանը քիմիական զենքի հնարավոր գործադրումից փրկելը։ Այս հարցի շուրջ բանակցություններ արդեն վաղուց են վարվում, բայց այժմ կարծես թե սկսում են նախադրյալներ հասունանալ հարցի լուծման համար։ Խոսքը վերաբերում է քիմիական զենքի գործադրման, դրա մշակման ու արտադրության լրիվ և համընդհանուր արգելմանը, դրա բոլոր պաշարների ոչնչացմանը։ Մենք կողմնակից ենք, որ նման համաձայնագրի կատարումը ենթարկվի արդյունավետ վերահսկողության, որ վերահսկողությունն ընդգրկի քիմիական զենքի ոչնչացման ամբողջ պրոցեսը՝ սկզբից մինչև վերջ։ Բացառված չէ, որ հիշյալ հարցերի շուրջը համաձայնության հասնելը կդառնար սովետա-ամերիկյան հարաբերություններում և առհասարակ ամբողջ միջազգային իրադրության մեջ իսկական բեկման սկիզբը։ Այդպիսի բեկում մենք կցանկանայինք։ Մնացածը կախված է Վաշինգտոնից։ (Ծափահարություններ)։

Միջուկային զենք ունեցող տերությունների քաղաքականությունը մեր ժամանակներում հատուկ նշանակություն ունի։ Ողջ մարդկության կենսական շահերը, ներկա և գալիք սերունդների հանդեպ պետական ղեկավարների պատասխանատվությունը պահանջում են, որ այդ տերությունների հարաբերությունները ենթարկվեն որոշակի նորմերի։ Մեր պատկերացմամբ այդ նորմերը մոտավորապես այսպիսին են.

— Միջուկային պատերազմի կանխումը դիտել որպես իրենց արտաքին քաղաքականության գլխավոր նպատակ։ Թույլ չտալ միջուկային կոնֆլիկտով հղի իրավիճակներ, իսկ նման վտանգի ծագման դեպքում անցկացնել շուտափույթ կոնսուլտացիաներ, որպեսզի միջուկային հրդեհի բռնկումը թույլ չտրվի։

— Հրաժարվել միջուկային պատերազմի որևէ տարբերակի՝ գլոբալ կամ սահմանափակ, պրոպագանդումից։

— Պարտավորություն ստանձնել առաջինը միջուկային զենք չգործադրել։

— Ոչ մի պարագայում միջուկային զենք չգործադրել ոչ միջուկային այն երկրների դեմ, որոնց տարածքում այդպիսի զենք չկա։ Հարգել աշխարհի



տարբեր շրջաններում արդեն ստեղծված միջուկազերծ գոտիների ստատուսը և խրախուսել այդպիսի նոր գոտիների ստեղծումը։

— Թույլ չտալ միջուկային զենքի տարածում որևէ ձևով. որևէ մեկին չտալ այդպիսի զենք կամ դրա վերահսկողությունը. այդպիսի զենք չտեղաբաշխել այն երկրների տարածքում, որտեղ այն չկա. միջուկային սպառազինությունների մրցավազքը չփոխադրել նոր ոլորտներ, ներառյալ՝ տիեզերք։

— Քայլ առ քայլ, միատեսակ անվտանգության սկզբունքի հիման վրա, ձգտել միջուկային սպառազինությունների կրճատման, ընդհուպ մինչև դրանց իսպառ վերացումը իրենց բոլոր տարատեսակներով։ (Երկարատև ծափահարություններ)։

Սովետական Միությունը այս սկզբունքները դրել է իր քաղաքականության հիմքում։ Մենք պատրաստ ենք մյուս միջուկային տերությունների հետ ցանկացած ժամանակ համաձայնության գալու նման կարգի նորմերը համատեղ ճանաչելու և դրանց պարտադիր բնույթ տալու շուրջը։ Կարծում եմ, որ սա կհամապատասխաներ ո՛չ միայն մասնակից երկրների շահերին, այլև ամբողջ երկրագնդի ժողովուրդների շահերին։

Ընկերնե՛ր, այն ամենով, ինչ մենք ունենք, ինչով մենք հպարտանում ենք— հայրենիքի ազատությունն ու հզորությունը, միջազգային ասպարեզում նրա բարձր հեղինակությունը, ժողովրդի լիարյուն խաղաղ կյանքը, այդ ամենով մենք պարտական ենք սովետական մարդկանց ստեղծարար լարված աշխատանքին։ (Ծափահարություններ)։ Նա՝ այդ աշխատանքը, ապագայի հանդեպ մեր վստահության անսպառ աղբյուրն է։

Բանվորներն ու կոլտնտեսականները, գիտնականներն ու ինժեներները, բժիշկներն ու մշակույթի գործիչները, մանկավարժներն ու ռազմիկները Գերագույն սովետի ընտրությունները դիմավորում են աշխատանքում ձեռք բերած նոր նվաճումներով։ Ուրեմն՝ թող այսուհետ ևս բազմապատկվեն այդ նվաճումները։ Եվ այն ժամանակ ավելի ամրակուռ կլինի մեր պետությունը՝ խաղաղության և ժողովուրդների անվտանգության պատվարը։ Այդ ժամանակ ավելի կլավանա յուրաքանչյուր սովետական ընտանիքի կյանքը։ Այդ ժամանակ մեր երկիրն ավելի հաջողությամբ կընթանա առաջ՝ կոմունիստական շինարարության ուղիով։ (Բուռն, երկարատև ծափահարություններ։ Բոլորը ոտքի են կանգնում։ Դահլիճում գտնվողները կեցցեներ են ռոչակում ի պատիվ ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեի, նրա քաղբյուրոյի, սովետական ժողովրդի՝ ստեղծարարի ու խաղաղության մարտիկի։ Ժողովի մասնակիցները վանկարկում են. «Փառք ՍՄԿԿ-ին», «Ուռա՜»)։

# ԻՆՖՈՐՄԱՑԻՈՆ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ ՊԼԵՆՈՒՄԻ ՄԱՍԻՆ

1984 թվականի մարտի 7-ին տեղի ունեցավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումը։

Պլենումը քննարկեց հետևյալ հարցը. «ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թվականի արտահերթ փետրվարյան պլենումի արդյունքները և պլենումում ու Մոսկվայի Կույբիշևյան ընտրական օկրուգի ընտրողների հետ հանդիպման ժամանակ ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ելույթների բովանդակած դրույթներից ու հետևություններից բխող՝ հանրապետական կուսակցական կազմակերպության խնդիրները»։

Զեկուցումով հանդես եկավ Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԸ։

Զեկուցման շուրջը ծավալված մտքերի փոխանակության ժամանակ ելույթ ունեցան ՀԿԿ Երևանի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Լ. Ն. ՆԵՐՍԻՍՅԱՆԸ, ժողովրդական դեպուտատների Լենինականի քաղսովետի գործկոմի նախագահ ընկ. Է. Մ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆԸ, Զանգեզուրի պղնձամոլիբդենային կոմբինատի էքսկավատորավարների բրիգադավար ընկ. Պ. Ա. ԴԱՎԹՅԱՆԸ, ՀԿԿ Կիրովականի քաղկոմի առաջին քարտուղար ընկ. Հ. Ա. ՕՀԱՆՅԱՆԸ, Նաիրիի շրջանի Մրգաշատի սովխոզի բրիգադավար ընկ. Հ. Բ. ՄԱՅԻԼՅԱՆԸ, «Սովետ Էրմենիստանի» թերթի խմբագիր ընկ. Ջ. Հ. ԱԼԻԵՎԸ, ՀԿԿ Ազիզբեկովի շրջկոմի առաջին քարտուղար ընկ. Օ. Ջ. ՀԱԿՈԲՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի ակադեմիկոս-քարտուղար ընկ. Գ. Ա. ԳԱԼՈՅԱՆԸ, Հայկական ՍՍՀ առողջապահության մինիստր ընկ. Է. Ս. ԳԱԲՐԻԵԼՅԱՆԸ, Երևանի Գայի անվան № 129 միջնակարգ դպրոցի ուսուցչուհի ընկ. Բ. Գ. ՍՏԵՓԱՆՅԱՆԸ։

Քննարկված հարցի առթիվ Կենտկոմի պլենումն ընդունեց համապատասխան որոշում։

Դրանով պլենումն ավարտեց աշխատանքը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումի աշխատանքին մասնակցում էր ՍՄԿԿ Կենտկոմի պատասխանատու աշխատող ընկ. Վ. Ի. ՊՈԼՅԱԿՈՎԸ։

# ԸՆԿԵՐ Կ. Ս. ԴԵՄԻՐՃՅԱՆԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ*

*Ընկերնե՛ր։*

*ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան արտահերթ պլենումը վերստին ցուցադրեց կուսակցության քաղաքականության հաջորդայնությունը, նրա վճռականությունը՝ հետևողականորեն ընթանալու լենինյան ուղիով, անշեղորեն իրականացնելու ՍՄԿԿ XXVI համագումարի կուրսը, որը ստեղծագործաբար զարգացվել և հարստացվել է ՍՄԿԿ Կենտկոմի հետագա պլենումներում։*

*Կուսակցության և ժողովրդի անխախտ միասնությունն առանձնակի ուժով դրսևորվեց այն օրերին, երբ սովետական մարդիկ հրաժեշտ էին տալիս հավատարիմ լենինյան, խաղաղության և կոմունիզմի աննկուն մարտիկ Յուրի Վլադիմիրովիչ Անդրոպովին, որի անունը կմնա մեր երկրի պատմության մեջ, սովետական ժողովրդի հիշողության մեջ։*

*Կենտկոմի պլենումը, որն անցավ միահամուռության և համախմբվածության պայմաններում, միաձայն ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընտրեց կոմունիստական կուսակցության և սովետական պետության ականավոր գործիչ ընկեր Կոնստանտին Ուստինովիչ Չեռնենկոյին։*

*Պլենումում ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի արտասանած ճառի մեջ արծարծված են կուսակցության ներքին և արտաքին քաղաքականության հանգուցային խնդիրները, գործունեության արմատական ուղղությունները, ներկայի և ապագայի այն պրոբլեմները, որոնց լուծման ուղղությամբ պետք է աշխատեն կուսակցությունը և ժողովուրդը։ Ճառի մեջ բացահայտված են կուսակցության անսպառ ուժի, նրա բարձր հեղինակության կարևորագույն ակունքները. դրանք են՝ նրա շարքերի կուռ համախմբվածությունը, հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմին, անխախտ միասնությունը ժողովրդի հետ, նրա ունակությունը զարգացնելու և ուղղություն տալու մասսաների քաղաքացիական, ստեղծագործական ակտիվությանը, գաղափարապես և կազմակերպչորեն համախմբելու նրանց՝ ղեկավարվելով լենինյան փորձված սկզբունքներով ու մեթոդներով։*

*Հայաստանի կոմունիստները, ամբողջ աշխատավորությունը, ինչպես բոլոր սովետական մարդիկ, ջերմորեն պաշտպանում և լիակատար հավանություն են տալիս ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումներին։ Հարազատ կուսակցության, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջ սերտորեն համախմբված՝ նրանք լի են վճռականությամբ անձնվեր պայքարելու հանուն կոմունիստական շինարարության վիթխարի պլանների անշեղ կենսագործման։*

*Ամենուրեք երկրում ջերմ արձագանք գտավ ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի վառ, խորապես բովանդակալից ճառը Մոսկվա քաղաքի Կույբիշևյան ընտրական օկրուգի ընտրողների հետ ունեցած հանդիպման ժամանակ։*

*Փետրվարյան պլենումում, ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ելույթներում առաջադրված է կոմունիստական արարման և խաղաղության խորապես հիմնավորված ծրագիր, մեր զարգացած սոցիալիստական հասարակության հետագա կատարելագործման, մեր ընթացիկ, մերձակա և ստրատեգիական խնդիրների իրականացման ծրագիր։ Դա անշեղ առաջընթացի, երկրի տնտեսական և պաշտպանական հզորության ամրապնդման, սովետական ժողովրդի բարեկեցության բարձրացման, խաղաղության պահպանման և ամրապնդման պայքարի ծրագիր է։*

*Մեր հասարակության հետագա համակողմանի առաջընթացի բոլոր խըն-*

---

*) *Տպագրվում է հապավումներով։*

դիրների լուծման հիմքերի հիմքը եղել և մնում է էկոնոմիկայի վերընթաց զարգացումը։ Ահա թե ինչու մենք պետք է շարունակ ուշադրության կենտրոնում պահենք տնտեսական շինարարության հարցերը, արդյունաբերության, գյուղատնտեսության, շինարարության մեջ, տրանսպորտում և ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում գործերի վիճակի մշտական բարելավման հարցերը։

ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումից հետո այդ ուղղությամբ կատարվող աշխատանքն զգալիորեն ակտիվացել է։ Կատարելագործվում է ժողովրդական տնտեսության ղեկավարումը, բարձրանում են կազմակերպվածությունը, պատասխանատվությունը և կարգապահությունը նրա բոլոր օղակներում։ Այժմ կարևորն այն է, ինչպես շեշտվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի դեկտեմբերյան և 1984 թվականի փետրվարյան պլենումներում, որ պահպանվի ձեռք բերված տեմպը, խնդիրների գործնական լուծման ընդհանուր տրամադրությունը, անշեղորեն բարձրացվի էկոնոմիկայի կուսակցական և պետական ղեկավարման մակարդակը, ավելի ակտիվորեն զարգացվեն դրական միտումները, կայուն բնույթ հաղորդվի դրանց։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի 1984 թվականի հունվարյան պլենումում մենք հենց այս տեսանկյունից վերլուծեցինք գործերի վիճակը հանրապետության տնտեսական, սոցիալական և կուլտուրական զարգացման ասպարեզում, տասնմեկերորդ հնգամյակի պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը, որոշեցինք մեր հրատապ և հեռանկարային խնդիրները։

Հնգամյակի անցած երեք տարիներին մեր ձեռք բերած արդյունքները ձեզ հայտնի են։ Դրանք ընդհանուր առմամբ բարձր են և նշանավորվել են սոցիալիստական մրցության մեջ տարած հաղթանակներով։ Արվածը մենք պետք է դիտենք որպես լավ հիմք՝ հաջողությամբ իրականացնելու տասնմեկերորդ հնգամյակի խնդիրները։

Ընթացիկ տարին ևս վատ չի սկսվել։ Ապրանքային արտադրանքի արտադրության 1984 թվականի անցած երկու ամսվա պլանը հանրապետության արդյունաբերությունը կատարել է 102,6 տոկոսով, արտադրանքի իրացման ծավալինը՝ 102,4 տոկոսով։ Անցած տարվա հունվար—փետրվար ամիսների համեմատությամբ աճի տեմպերը համապատասխանաբար կազմեցին 5,4 և 11,3 տոկոս։ Պլանից ավելի թողարկվեց 28,6 միլիոն ռուբլու և իրացվեց 26,1 միլիոն ռուբլու արտադրանք։ Աշխատանքի արտադրողականության պլանը հունվարին կատարվեց 101,7 տոկոսով, աճի տեմպը կազմում է 6,8 տոկոս։ 1983 թվականի հունվար—փետրվար ամիսների համեմատությամբ ժողովրդատական տնտեսության մեջ կապիտալ ներդրումները, ամբողջությամբ վերցրած, աճել են 9,3 տոկոսով, շինմոնտաժային աշխատանքների ծավալը՝ 10,2 տոկոսով։ Ավելացել են գյուղատնտեսական մթերքների գնումների ծավալները. անասունինը և թռչնինը՝ 10,2 տոկոսով, կաթինը՝ 3,8, ձվինը՝ 20,7 տոկոսով։ Կատարվել է պետական և կոոպերատիվ առևտրի ապրանքաշրջանառության պլանը, որի աճը կազմում է 5,1 տոկոս։

Վատ չեն արդյունքները նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում։

Հանրապետության աշխատավորները գործնականորեն ձեռնամուխ եղան աշխատանքի արտադրողականությունն արտապլանային կարգով 1 տոկոսով բարձրացնելուն և արտադրանքի ինքնարժեքը լրացուցիչ 0,5 տոկոսով իջեցնելուն։ Մի ամբողջ շարք արդյունաբերական արտադրական միավորումներ ու ձեռնարկություններ ստանձնեցին աշխատանքի արտադրողականությունը պլանից ավելի 1,3-ից 3 տոկոսով բարձրացնելու և արտադրանքի ինքնարժեքը լրացուցիչ 0,6—1 տոկոսով իջեցնելու սոցիալիստական պարտավորություններ։ Եվ նրանք, ինչպես ցույց են տալիս աշխատանքի արդյունքները, հունվար ամսին պատվով են կատարել դրանք։

Անցած երկու ամսվա աշխատանքի արդյունքներն ընդհանուր առմամբ վկայում են, շարունակում է ընկ Կ. Ս. Դեմիրճյանը, որ կուսակցական կազմակերպությունները, հանրապետության աշխատավորներն ակտիվորեն են կենսագործում առաջադրված խնդիրները։ Միաժամանակ հանրապետությունում քիչ չեն նաև ետ մնացող, պլանները չկատարող ձեռնարկությունները, կազմակերպություններն ու տնտեսությունները։ Շատ են և այնպիսիք, որոնք թեև կատարում են պլանները, բայց չեն ապահովում որակական ցուցանիշների բարելավումը։



Արդյունաբերության մեջ ընթացիկ տարվա անցած երկու ամիսներին ապրանքային արտադրանքի արտադրության պլանները չեն կատարել 52, իսկ իրացմանը՝ 57 միավորումներ ու ձեռնարկություններ։

Նման թերացման պատճառները պետք է փնտրել տեխնոլոգիայի, արտադրության կազմակերպման, աշխատանքային, կատարողական և պլանային կարգապահության ցածր մակարդակի մեջ, այն բանում, որ առանձին ձեռնարկություններում սոցիալիստական պարտավորությունները կազմվում են ձևականորեն, չեն ամրապնդվում բանվորների, բրիգադների, տեղամասերի ու արտադրամասերի պարտավորություններով, այնպիսի կոնկրետ միջոցառումներով, որոնք ապահովեին մրցողների բարձրարդյունավետ աշխատանքը։

Մեզ խորապես անհանգստացնում է այն փաստը, որ հանրային հոտի ձմեռումը հաջող անցկացնելու համար պատշաճ միջոցներ չձեռնարկելու հետևանքով մի շարք շրջաններում նվազել է անասունների մթերատվությունը, կրճատվել են մսի և կաթի մթերումների ծավալները։ 1984 թվականի երկու ամսում, անցած տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, կաթի մթերումներն իջել են 9 շրջաններում։ Կաթնատու հոտի մթերատվության վրա առանձնապես բացասաբար են անդրադառնում կերի ցածր որակը, անասունների կերաբաժնում բարձրորակ, հատկապես հյութալի կերերի պակասը, դրանց ոչ արդյունավետ օգտագործումը։

Հանրապետությունում արդեն մի քանի տարի է, ինչ ապարդյուն խոսակցություն է վարվում կերային արմատապտուղների արտադրությունն ավելացնելու վերաբերյալ։ Այսօր յուրաքանչյուր կովին ընկնող այդ կերատեսակի քանակությունը չի անցնում 500—600 կիլոգրամից, երբ հարկավոր է 2—2,5 տոննայից ոչ պակաս։ Այդ արժեքավոր կերային կուլտուրայի արտադրության պլանն անցած տարի կատարել է հանրապետության ընդամենը 7 շրջան։

Վատ աշխատանքը, ընկերնե՛ր, չի կարող իրեն զգացնել չտալ։ Անցած տարի կուտակվեց մոտ 2,5 միլիոն տոննա կեր, որը կերարտադրության մեջ մեր երկրորդ ռեկորդային արդյունքն է։ Բայց շատ շրջաններում չեն պահպանվել կերի կուտակման և պատրաստման տեխնոլոգիական պահանջները, ժամանակին չի ապահովվել դրանց պատշաճ որակը։ Եվ դա այսօր հանգեցնում է անցանկալի հետևանքների։

Ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը հանրապետության շրջանների, առանձին տնտեսությունների աշխատանքային պրակտիկայից վերցրած կոնկրետ փաստերով ու տվյալներով ցույց է տալիս աշխատանքի լավագույն օրինակներ, շեշտում, որ այնտեղ, ուր անասնապահության վերելքի ապահովման նկատմամբ կուսակցական, սովետական և տնտեսական ղեկավարները ցուցաբերում են պատշաճ հոգատարություն, ձեռք են բերվում վերջնական դրական արդյունքներ և, ընդհակառակը, ուր գործը բարձիթողի է մատնվում, ուր անասնապահությունը դեռևս չի դարձել հարվածային տեղամաս, այնտեղ գյուղատնտեսության այդ կարևորագույն ճյուղն առաջընթաց չի ապրում։

Նա քննադատական խոսք է ասում Կալինինոյի, Կրասնոսելսկի, Ամասիայի շրջանների կուսակցական ու սովետական ղեկավարների հասցեին այն բանի համար, որ կոլտնտեսություններում ու սովխոզներում հետևողական աշխատանք չի կազմակերպվում հանրային հոտի մթերատվության և, մասնավորապես, կաթնատվության բարձրացման նպատակով։ Ավելին, անասնակերի որակի ապահովմանը, դրա վերամշակմանն ու զանազան հավելումներով հարստացմանը, կերախոհանոցների արդյունավետ օգտագործմանը, գյուղատնտեսական կենդանիների պահպանմանն ու խնամքին հարկ եղած ուշադրությունը չնվիրելու հետևանքով նշված շրջաններում, անցած տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, այս տարվա հունվար—փետրվար ամիսներին հանրային հոտի կաթնատվությունը նույնիսկ նվազել է։ Բնականաբար, պակասել են նաև կաթի մթերման ծավալները։

Կաթի արտադրության և մթերումների ծավալների իջեցում են թույլ տըրվել նաև Սևանի, Կամոյի, Շամշադինի և այլ շրջաններում։

Նշված և մյուս շրջանների ղեկավար ընկերները պետք է շտկեն վիճակը տեղերում և հասնեն կաթի արտադրության ու մթերումների պլանների և սոցիալիստական պարտավորությունների անվերապահ կատարման։

Շատ շրջաններում ու տնտեսություններում, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, առաջվա պես չի ապահովվում հողի բերրիության ընդլայնված վերարտադրությունը, չի կիրառվում տեղական բնակլիմայական պայմանները հաշվի առնող առաջավոր ագրոտեխնիկա, արտադրության մեջ անբավարար են ներդրվում գյուղատնտեսական կուլտուրաների նոր, բարձր բերքատու սորտեր ու տեսակներ, աշխատանքի կազմակերպման առաջավոր ձևեր ու եղանակներ, վատ են օգտագործվում մելիորացված հողերը, պարարտանյութերը, գյուղատնտեսական տեխնիկան։

Իսկ ինչպիսի՞ն է տնտեսությունների էկոնոմիկան։ Ինչպես գիտեք, անցած տարվանից նվազ եկամտաբեր և վնասով աշխատող տնտեսությունների շահութաբեր աշխատանքը ապահովելու նպատակով սահմանվեցին մթերման նոր գներ և հավելավճարներ։ Եվ, այդուհանդերձ, 1983 թվականի արդյունքներով հանրապետությունում 90 սովխոզ աշխատել է վնասով։ Նման տնտեսությունները շատ են Ամասիայի, Արարատի, Եղեգնաձորի, Թալինի, Մարտունու շըրջաններում։ Այդպիսիք կան նաև «Հայթռչնարդի» համակարգում։

Շինարարական արտադրության մեջ, չնայած տեղաշարժերին, պլանների կատարման ասպարեզում մենք դեռ շատ անելիքներ ունենք։

Հնգամյակի անցած տարիներին չեն կատարվել շինմոնտաժային աշխատանքների և հիմնական ֆոնդերի գործարկման պլանները։ Դրանք չեն կատարվել նաև այս տարվա անցած երկու ամիսներին, չնայած աճի տեմպերը մեծապես բարձրացել են և կազմում են 20—22 տոկոս։ 1984 թվականի հունվարի 1-ի դրությամբ զգալի ծավալ էր կազմում անավարտ շինարարությունը։

Սահմանված քանակական ցուցանիշների թերակատարումը, արտադրության կազմակերպման, կարգապահության ցածր մակարդակը, խնայողության ռեժիմի ուժեղացման գործում ոչ հետևողական աշխատանքը անխուսափելիորեն հանգեցնում են որակական ցուցանիշների վատթարացման։ Արդյունաբերական, գյուղական շինարարության մինիստրությունների, «Հայգլխհատուկմոնտաժշին» վարչության շատ կազմակերպություններ, ինչպես նաև շինարարական մի շարք այլ կազմակերպություններ չեն ապահովել մեկ աշխատողին ընկնող արտադրաքանակի պլանների կատարումը։ Թույլ են տվել աշխատանքի արտադրողականության աճի նկատմամբ միջին աշխատավարձի աճի գերազանցում, շինմոնտաժային աշխատանքների արժեքի թանկացում։

Մենք պարտավոր ենք առավել պահանջկոտությամբ գնահատել ձեռնարկությունների և ճյուղերի գործունեությունը, այն դիտելով քանակական և որակական ցուցանիշների անխախտ միասնության տեսանկյունից։ Հարկավոր է տնտեսավարներից, կուսակցական ղեկավարներից պահանջել, որ կոլեկտիվների աշխատանքը վերլուծեն, ելնելով ոչ միայն այն բանից, թե դրանք որքանով են ավելացնում արտադրանքի թողարկումը, այլև թե որքանով են բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը, իջեցնում ինքնարժեքը, նվազեցնում նյութական ծախսումները, ինչպիսին են այնտեղ շահույթն ու եկամտաբերությունը։ Մի խոսքով, անհրաժեշտ է տեսնել, թե ինչ է թաքնված պլանի կատարման ընդհանուր թվերի ետևում, մշտապես որոնել տնտեսական ցուցանիշների բարելավման ուղիներ, ուժեղացնել խնայողության ռեժիմը, ապահովել արդյունավետ սոցիալիստական տնտեսավարումը յուրաքանչյուր օղակում։

Մենք պետք է համառորեն և հետևողականորեն աշխատենք թերությունները վերացնելու ուղղությամբ, ապահովենք պլանների կատարումը թե՛ քանակական և թե որակական ցուցանիշների գծով յուրաքանչյուր ձեռնարկությունում, կազմակերպությունում և ճյուղում։ Կուսակցական կոմիտեների, կազմակերպությունների ուշադրության կենտրոնում պետք է գտնվեն արտադրության ինտենսիվացման, աշխատանքի արտադրողականության աճի տեմպերի



արագացման, արտադրանքի և աշխատանքի որակի ըստ ամենայնի բարձրացման, առկա արտադրական, գիտատեխնիկական պոտենցիալի, բոլոր տեսակի ռեսուրսների լիովին և բարձրարդյունավետ օգտագործման հարցերը։ Հարկավոր է հետևողականորեն կատարելագործել արտադրության կառավարումը, կազմակերպումը և տեխնոլոգիան, ակտիվորեն իրականացնել ռեսուրսների տնտեսմանը, ֆիզիկական ծանր և ոչ որակյալ աշխատանքի բաժնի կրճատմանն ուղղված ձեռնարկումներ։

Մենք առաջիկայում ևս պետք է արագընթաց տեմպերով զարգացնենք մեքենաշինությունը՝ տեխնիկական առաջընթացի հիմքերի հիմքը, ընդլայնենք նրա փորձաէքսպերիմենտալ բազան, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում լայնորեն ներդնենք էլեկտրոնային-հաշվիչ տեխնիկան, միկրոպրոցեսորները, որոնք արտադրության ավտոմատացման, աշխատանքի բնույթի փոփոխման սկզբունքորեն նոր հնարավորություններ են ընձեռում։

Կուսակցությունը հստակորեն սահմանել է մեր էկոնոմիկայի զարգացման հիմնական ուղղությունները։ Ինտենսիվացումը, արտադրության մեջ գիտության և տեխնիկայի նվաճումների արագ ներդրումը, կոմպլեքսային խոշոր ծրագրերի իրականացումը՝ այս ամենը, ինչպես նշվեց փետրվարյան պլենումում, վերջին հաշվով պետք է որակապես նոր մակարդակի բարձրացնեն մեր հասարակության արտադրաուժերը։ «Մեզ համար բացարձակ անհրաժեշտություն է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի արագ և անընդհատ նորացումը գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվաճումների հիման վրա։ Սա մեր արմատական խնդիրներից մեկն է։ Առանց դրա հասարակության առաջընթացը պարզապես աներևակայելի է»,— նախընտրական հանդիպման ժամանակ ասաց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն։

Բոլոր այս խնդիրների իրականացումը, էկոնոմիկայի զարգացման՝ կուսակցության մշակած միջոցառումների եռանդուն կենսագործումը, միջոցառումներ, որոնք ունեն ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական մեծ նշանակություն, պետք է դառնան յուրաքանչյուր կուսակցական կազմակերպության, յուրաքանչյուր աշխատողի ամենօրյա գործունեության գլխավոր բովանդակությունը։ Դրան է նպատակամղում մեզ Կենտկոմի փետրվարյան պլենումը, որը շեշտեց, թե հաջորդայնության էությունը նախ և առաջ առանց կանգ առնելու առաջ ընթանալն է։ Առաջ ընթանալ, հենվելով այն ամենի վրա, ինչ ձեռք է բերվել նախկինում, ստեղծագործաբար հարստացնելով այն, կոմունիստների, բանվոր դասակարգի, ամբողջ ժողովրդի կոլեկտիվ միտքը, եռանդը կենտրոնացնելով չլուծված խնդիրների վրա, այսօրվա և ապագայի արմատական պրոբլեմների վրա։

Հնգամյա պլանի հաջող կատարումը պահանջում է բարելավել էկոնոմիկայի ղեկավարումը, օպերատիվ լուծել նրա զարգացման ընթացիկ հարցերը, բարձրացնել մինիստրությունների, գերատեսչությունների, ժողովրդական տընտեսության բոլոր ճյուղերի, միավորումների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարների պատասխանատվությունը պլանային առաջադրանքների ու ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման գործում։

Այդպիսի փորձ մենք ունենք։ Չէ՞ որ կարելի է հաստատ ասել՝ անցյալ տարի, շնորհիվ Կենտկոմի և կառավարության, կուսակցական կոմիտեների և ժողովրդական դեպուտատների սովետների գործկոմների կողմից յուրաքանչյուր ճյուղի, յուրաքանչյուր արդյունաբերական ձեռնարկության աշխատանքի նկատմամբ ամենօրյա վերահսկողության, կազմակերպական, արտադրական թե նյութատեխնիկական կարգի հարցերի լուծման գործում կոնկրետ օգնություն ցույց տալու միջոցով մենք հասանք վիճակի շտկման և արդյունաբերության աշխատանքի կայունացման, ապահովեցինք տարվա պլանային առաջադրանքների գերակատարումն ու աճի տեմպերի բարձրացումը։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը գտնում է, որ աշխատանքի այդ ձևը, եղանակը իրենց լիովին արդարացրին։

Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է ընթացիկ տարում ևս ամեն ամիս հստակ որոշի, թե արդյունաբերության որ ճյուղը, որ ձեռնար-

կության ինչքանով պետք է գերակատարի պլանները, որքան լրացուցիչ արտադրանք թողարկի, որ ամբողջ հանրապետության առումով ապահովվի աճի այն տեմպը, որ տվյալ ամսում նախատեսված է տվյալ ճյուղի համար։ Ընդ որում, յուրաքանչյուր ճյուղի գծով անհրաժեշտ է հատուկ վերահսկել աշխատանքի արտադրողականության արտապլանային բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման պարտավորությունների կատարումը։

Անհրաժեշտ է հատուկ ուշադրություն նվիրել պայմանագրային պարտավորությունների կատարմանը։ Այստեղ պետք է ըստ ամենայնի բարձրացնել պահանջկոտությունը։ Մենք բազմիցս ասել ենք և դարձյալ ընդգծում ենք, որ արտադրանքի մատակարարման պայմանագրային պարտավորությունների ամեն մի խախտում, ըստ տեսականու արտադրանքի թողարկման պլանների թերակատարում ձախողում է կոնկրետ սպառողների, աշխատավորական կոլեկտիվների աշխատանքը։ Դա անթույլատրելի է։

Իսկ չէ՞ որ կենտվիճվարչության կողմից հաշվառման ենթարկվող արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակներից 1984 թվականի երկու ամսվա պլանը չէր կատարվել 14 արտադրատեսակի գծով։

Մեր տնտեսական մարմիններին պետք է օգնություն ցույց տան կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեները, որոնք պարտավոր են կազմակերպչական և քաղաքական հմուտ աշխատանքով կուսակցական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների ջանքերը նպատակամղել պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարմանը։ Այդ աշխատանքը պետք է լինի կոնկրետ և մշտական։

Դեկտեմբերյան պլենումի հիմնադրույթների հետևողական իրականացումը մեր ուղղակի պարտականությունն է։ Մենք պետք է ամենասևեռուն ուշադրությունը նվիրենք էկոնոմիկային, ժողովրդական տնտեսության զարգացմանը, համառորեն աշխատենք, որպեսզի լիովին կենսագործվեն կուսակցության տնտեսական քաղաքականության բոլոր պահանջները։

Մենք պետք է հետևողականորեն ավելացնենք հանրապետության ներդրումը երկրի էկոնոմիկայի՝ որպես միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքսի զարգացման մեջ։ Ամենուրեք, ամեն բանում մենք պարտավոր ենք ամենից վեր դասել համաժողովրդական շահերը, վճռականապես կասեցնել գործերի նկատմամբ նեղ գերատեսչական մոտեցման և տեղայնության ամեն դրսևորում։ Սակայն պետք է զգուշանալ, որպեսզի պայքարի անվան տակ ոչ մի դեպքում չկաշկանդվի տեղական նախաձեռնությունը։ Ինչպես նախընտրական հանդիպման ժամանակ ասաց ընկեր Կ. Ու. Չեռնենկոն, «տնտեսական ռեգիոնների, միավորումների, ձեռնարկությունների մակարդակներում տնտեսական նախաձեռնության, ստեղծագործության ծավալումը կարևորագույն և հենց համապետական խնդիրներից մեկն է»։

1984 թվականի պլանի կատարման հետ կապված աշխատանքի հիմնական, գլխավոր ուղղությունները, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, մենք սահմանեցինք Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարին կայացած պլենումում։

Ինչպես նշվեց պլենումում, արդյունաբերության մեջ անհրաժեշտ է ապահովել ապրանքային արտադրանքի թողարկման պլանների պարտադիր գերակատարումը 2—3 տոկոսով, որպեսզի հասնենք արտադրության ծավալների 5,5—6 տոկոս աճի տեմպերի մակարդակի։ 1984 թվականի բերքի համար ծավալվող պայքարում լուրջ քննություն կլինի առաջիկա գարնանացանը։ Այս ասպարեզում արդեն շատ գործ է արվել։ Տնտեսությունները հիմնականում ապահովված են որակյալ սերմացուով, ավարտին է մոտենում գյուղատնտեսական տեխնիկայի վերանորոգումը, անցյալ տարվա համեմատությամբ ավելի շատ օրգանական պարարտանյութ է փոխադրվել դաշտ։

Սակայն գլխավորը դեռ առջևում է։ Այժմ անհրաժեշտ է ուշադրությունը բևեռել երկրագործական արտադրության այն բոլոր անհետաձգելի աշխատանքների կատարման վրա, որոնք կապված են ապագա բերքն ապահովող հիմքերի ձևավորման հետ, ընդ որում, նկատի ունենալով ոչ թե լավագույն, այլ վատթարագույն պայմանները։ Հարկավոր է օպտիմալ ժամկետներում անց-



կացնել գարնան դաշտային աշխատանքների ողջ համալիրը, խստիվ պահպանելով ագրոտեխնիկական բոլոր կանոնները։

Մենք պետք է ապահովենք շինմոնտաժային աշխատանքների, հիմնական ֆոնդերի գործարկման պլանների պարտադիր ու լրիվ կատարումը, հատուկ ուշադրություն դարձնելով, որ ժամանակին շահագործման հանձնվեն սոցիալ-կուլտուրական և կենցաղային նշանակման օբյեկտները։ Եռանդուն միջոցներ պետք է ձեռնարկվեն, որպեսզի ապահովվի ապրանքաշրջանառության պլանների կայուն կատարումը, բարելավվի տրանսպորտի, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աշխատանքը։

Այն ամենը, ինչ կատարում ենք էկոնոմիկայի զարգացման նպատակով, և դա կրկին շեշտվեց Կենտկոմի փետրվարյան պլենումում, ընտրողների հետ ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ունեցած հանդիպման ժամանակ, ուղղված է կուսակցության գլխավոր նպատակի իրականացմանը՝ բավարարել սովետական մարդկանց հարաճուն պահանջմունքները, բարձրացնել նրանց բարեկեցությունը։

Վերջին ժամանակներս մենք հատուկ ուշադրություն ենք նվիրում ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացմանը, դրանց տեսականու ընդլայնմանը և որակի բարելավմանը։ Այս գործում մենք քիչ ձեռքբերումներ չունենք։ Դրա հետ մեկտեղ, հարկ է ասել, որ մեզ մոտ դեռևս անբավարար են օգտագործվում այդ ապրանքների արտադրության ծավալներն ավելացնելու և որակը բարձրացնելու ռեզերվներն ու հնարավորությունները։ Դրանց օգտագործումը, մարդկանց իրոք անհրաժեշտ ապրանքներ թողարկելու նպատակով, տնտեսական աշխատողների ուղղակի պարտականությունն է։ Մեր շատ միավորումներ ու ձեռնարկություններ ունեն այդպիսի հնարավորություններ։ Ուրեմն, պետք է գործն այնպես կազմակերպել, որ արտադրությունից արագ հանվեն ոչ գնայուն ապրանքները, դրանք փոխարինվեն պահանջարկ վայելող տեսականիով, ավելացվի ժողովրդական սպառման բարձրորակ ապրանքների թողարկման ծավալը։

Շատ գործ պետք է արվի սպասարկման ոլորտի աշխատանքն արմատապես բարելավելու, դրա նյութատեխնիկական բազան հարստացնելու ուղղությամբ։ Կուսակցական կոմիտեները, տեղական սովետները, համապատասխան մինիստրությունները, գերատեսչություններն ու կազմակերպությունները պետք է եռանդուն ջանքեր գործադրեն այդ խնդրի հաջող լուծման համար, բևեռեն ուշադրությունն առևտրի, կենցաղսպասարկման զարգացման արմատական, սկզբունքային հարցերի վրա, հասնեն կարգուկանոնի ամրապնդման և սպասարկման կուլտուրայի բարձրացման։

Ինչպես հայտնի է, ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոն անհրաժեշտ համարեց մշակել ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և սովետական մարդու կյանքի կարևորագույն կողմերն ընդգրկող ծառայությունների համակարգի զարգացման կոմպլեքսային ծրագիր։ Մենք պետք է ակտիվ մասնակցենք այդ գործին։

Հարկավոր է հետևողականորեն իրականացնել հանրապետության սոցիալական զարգացման հնգամյա ծրագիրը։ Մենք պետք է ավելի մոտիկից և ավելի լավ զբաղվենք մարդկանց կյանքի, նյութական և հոգևոր մակարդակի հետագա բարձրացման, նրանց բնակարանային պայմանների բարելավման, բժշկական սպասարկման, նախադպրոցական հիմնարկների ցանցի ընդլայնման, բոլոր տեսակի ծառայությունների զարգացման ու կատարելագործման հարցերի ողջ կոմպլեքսով, առավել արդյունավետ օգտագործենք այդ նպատակին հատկացվող պետական վիթխարի միջոցները։

Աշխատավորների կողմից ջերմորեն ընդունվեց Կենտկոմի փետրվարյան պլենումում արված առաջարկությունը՝ աշխատանքի արտադրողականության արտապլանային բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի լրացուցիչ իջեցման հաշվին ստացվելիք բոլոր միջոցներն ու ռեսուրսներն աշխատավորների աշխատանքի ու կենցաղի պայմանների բարելավման, բուժսպասարկման, բնակարանների կառուցման նպատակին օգտագործելու մասին։ Դա նրանք գնահատում են որպես սովետական մարդու բարօրության նկատմամբ կուսակցության անդուլ հոգատարության նոր վառ դրսևորում։

Մեր աշխատավորության բարեկեցության բարձրացմանն են ուղղված նաև այն ձեռնարկումները, որոնց նպատակն է կատարելագործել բաշխման հարաբերությունները, բարոյական ու նյութական խրախուսման ողջ համակարգը։

«Նա, ով աշխատում է ուժերի լիակատար նվիրումով, պետք է վաստակի հարցում անպայման առավելություններ ունենա,— ընտրողների հետ հանդիպման ժամանակ շեշտեց ընկ. Կ. Ու. Չեռնենկոն։— Կարող են ասել, բայց չէ՞ որ մենք հիմա էլ կարողանում ենք անփույթ աշխատողներին պատժել ռուբլով, իսկ բարեխիղճներին պարգևավճարներ ենք տալիս։ Դա իրոք այդպես է։ Բայց պատիժներին մինչև օրս էլ, ըստ երևույթին, պակասում է խստությունը, իսկ նյութական խրախուսանքին՝ հարկ եղած արդարացիությունը, իսկ երբեմն էլ, թե կուզեք՝ նաև առատաձեռնությունը։ Այս հարցով պետք է զբաղվել հիմնավորապես, և դարձյալ առանց հապաղելու»։

Այստեղ իրենց անելիքներն ունեն կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, տնտեսական ղեկավարները։ Շատ բան է կախված բուն աշխատավորական կոլեկտիվներից։ Նրանք այժմ օրենսդրական կարգով հաստատված լայն իրավունքներ ունեն։ Խնդիրն այն է, որ այդ իրավունքներն օգտագործվեն լիովին։

Փետրվարյան պլենումում հատկապես նշվեց, որ լուծելով էկոնոմիկայի զարգացման ընթացիկ հարցերը, մենք չպետք է աչքաթող անենք նաև հեռանկարային խնդիրները։

Մեր կուսակցությունը հստակորեն է տեսնում գլխավոր պրոբլեմները, աշխատանքի գլխավոր ուղղությունները։

«Նոր հնգամյակը,— շեշտվեց պլենումում,— նախ և առաջ պետք է դառնա արտադրության մեջ որակական խոր փոփոխությունների սկիզբը, դառնա մեր ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ինտենսիվացման գործում վճռական բեկման հնգամյակ։ Ժամանակակից նյութատեխնիկական բազան և կառավարման համակարգը պետք է ձեռք բերեն նոր, ավելի բարձր հատկանիշներ»։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը մշտապես ուշադրության կենտրոնում է պահում հանրապետության հեռանկարային զարգացման հարցերը, հետևողականորեն ձգտում հասնել տնտեսական, սոցիալական ու հոգևոր առաջադիմության սերտ փոխկապակցվածության ապահովման։

Ձեզ լավ հայտնի են այդ ուղղությամբ Կենտկոմի մշակած ու կենսագործած միջոցառումները։ Հայաստանի կոմկուսի համագումարների հաստատած այն միջոցառումները, որոնք նպատակամղված են հանրապետության էկոնոմիկայի և կուլտուրայի դինամիկ աճի ապահովմանը, սոցիալական զարգացման խնդիրների հաջող լուծմանը, ժողովրդի բարեկեցության բարձրացմանը, արտադրողական ուժերի զարգացման արագացմանը, դրանք որակապես նոր մակարդակի հասցնելուն և ռացիոնալ տեղաբաշխելուն, ժողովրդական տնտեսության ճյուղերի, հատկապես արդյունաբերության կառուցվածքի կատարելագործմանը, դրանց զարգացմանը, հաշվի առնելով հանրապետության ռեսուրսային հնարավորությունները, ժողովրդագրական առանձնահատկությունները և բնության ու շրջակա միջավայրի պահպանության շահերը, նվազ նյութատար, նվազ էներգատար, սակավ ջրատար արտադրությունների գերադաս զարգացումը, արժանացան հանրապետության կոմունիստների, աշխատավորների լիակատար պաշտպանությանը և հետևողականորեն իրագործվում են։

Վերջերս ՀԿԿ Կենտկոմը քննության առավ հանրապետության Մինիստրների խորհրդի ներկայացրած՝ Հայկական ՍՍՀ-ի տնտեսական և սոցիալական զարգացման տասներկուերորդ հնգամյակի և մինչև 2000 թվականն ընդգրկող երկարաժամկետ հեռանկարի հիմնական ուղղությունների նախագիծը, հանրապետության արտադրողական ուժերի տեղաբաշխման սխեմայի նախագիծը։ Դրանք մշակված են կուսակցության XXVI համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումներին համապատասխան, կուսակցության տնտեսական ստրատեգիայի հիման վրա։ Դրանցում հիմնականում արտացոլված է մեր հանրապետության տնտեսական, սոցիալական ու կուլտուրական զարգացման կոնցեպցիան, որը մշակել են Հայաստանի կոմկուսի համագումարները և Կենտ-



կոմի պլենումները։ Շուտով մենք կքննարկենք նաև Կենտկոմի հանձնարարությամբ ՀՍՍՀ պետպլանի մշակած՝ հանրապետության լեռնային ու նախալեռնային շրջանների զարգացման պլանի նախագիծը։

Մենք պետք է մշտապես մեր ուշադրությունը բևեռենք ժողովրդական տնտեսության կառավարումը բարելավելու, տնտեսական մեխանիզմը կատարելագործելու հարցերին։ Տնտեսավարման ձևերը պետք է համապատասխանեն ժամանակակից պահանջներին։ Հանրապետությունում գործում է ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառավարման նոր ձև, շարունակվում է արդյունաբերության մեջ տարբեր բնույթի միավորումներ ստեղծելու աշխատանքը, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ սկսվել է տնտեսական նոր մեխանիզմ մշակելու էքսպերիմենտը։

Այսօր, երբ բավական ժամանակ է, ինչ գործում են ագրոարդյունաբերական կոմպլեքսի կառավարման նոր մարմինները, մենք կարող ենք ավելի որոշակի գնահատել դրանց աշխատանքը։ Ընդհանուր առմամբ արդյունքները վատ չեն։ Բայց նկատելի են նաև թերությունները։ Հանրապետության ագրոարդյունաբերական հանձնաժողովը պետք է կոմպլեքսի զարգացման հարցերի լուծմանը զուգընթաց ավելի սերտորեն զբաղվի և արդյունավետ ներազդի տեղերում գործերի վիճակի վրա, բարձրացնի շրջանային ագրոարդյունաբերական միավորումների պատասխանատվությունը պարենային ծրագրով նախատեսվածի լրիվ և ժամանակին կատարման գործում։ Վերջիններս էլ պետք է ազատվեն աշխատանքի գրասենյակային ոճից, թղթաբանությունից և ավելի մոտիկ կանգնեն տնտեսություններին, կազմակերպություններին, միշտ հիշելով, որ իրենք անմիջական պատասխանատվություն են կրում պլանների կատարման համար, ընդ որում՝ յուրաքանչյուր տնտեսության, կազմակերպության կողմից։

Կուսակցական կազմակերպությունները պետք է մշտապես ուշադրություն նվիրեն ներկայումս անցկացվող տնտեսական էքսպերիմենտին, ուժեղացնեն դրա իրականացման վերահսկումը, օգնեն դրանում ընդգրկված կոլեկտիվներին՝ հաջող անցկացնելու այն, սիստեմատիկաբար ընդհանրացնեն և տարածեն աշխատանքի առաջավոր փորձը։

Մենք պետք է ավելի ակտիվ աշխատենք նաև ժողովրդական տնտեսության կառավարման կազմակերպական կառուցվածքի հետագա բարելավման բնագավառում։ Դա պակաս կարևոր նշանակություն չունի, քան տնտեսական մեխանիզմի կատարելագործումը։ Ավելին, դրանք օրգանապես շաղկապված են միմյանց, որն օրակարգի հարց է դարձնում կառավարման կոմպլեքսային կատարելագործումը։

Ավելի շատ ինքնուրույնություն դրսևորել բոլոր մակարդակներում, համարձակ պրպտել, եթե հարկ է, որոշակի ռիսկի դիմել՝ հանուն էկոնոմիկայի արդյունավետության բարձրացման, ժողովրդի բարեկեցության աճի՝ ահա թե այսօր կուսակցությունն ինչ է ակնկալում մեր տնտեսական կադրերից։

Մեր առջև ծառացած խնդիրների հաջող լուծումը, նշում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, անմիջականորեն կապված է կուսակցական ղեկավարման ոճի ու մեթոդների, կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի հետագա կատարելագործման հետ։

ՍՄԿԿ XXVI համագումարից հետո անցած ժամանակամիջոցում կուսակցության կոլեկտիվ միտքը հսկայական աշխատանք է կատարել մեր հասարակության զարգացման արդի փուլի առանձնահատկությունների իմաստավորման, կուսակցության քաղաքականության գիտական հիմունքների մշակման ասպարեզում։ Դժվար է գերագնահատել ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումում զարգացած սոցիալիզմի կատարելագործման փուլի, այդ տևական պատմական ճանապարհին երկրի տեղի մասին արված հետևությունների սկզբունքային նշանակությունը։ «Դրանք հնարավորություն են ընձեռում մեր հասարակության զարգացման պատկերն ավելի պարզ տեսնելու իր ողջ բարդությամբ, հակասականությամբ և բազմազանությամբ,— շեշտում է ընկ. Կ. Ու. Չեռնենկոն։— Դրանք նպաստում են այն խզումների գործնական վերացմանը, որ երբեմն թույլ են տրվել խոսքի ու գործի միջև, հասարակության ռեալ հնարավորությունների և չհիմնավորված կանխատեսումների միջև»։

Տնտեսական և սոցիալական զարգացման, կոմունիստական դաստիարակության խնդիրների բարդությունն ու մասշտաբայնությունն այսօր առավել բարձր պահանջներ են ներկայացնում կուսակցական կոմիտեներին և կազմակերպություններին, որոնց վրա մեծ պատասխանատվություն է ընկած կուսակցության և կառավարության առաջադրանքների կատարման, տնտեսական ու կուլտուրական շինարարության ընթացիկ և հեռանկարային խնդիրների լուծման համար։

Կուսակցական կոմիտեները, սովետական, տնտեսական մարմինները, բոլոր ղեկավար աշխատողները պարտավոր են մշտապես բարելավել մարդկանց հետ տարվող կազմակերպչական ու քաղաքական աշխատանքը, ամրապնդել կապերը մասսաների, աշխատավորական կոլեկտիվների հետ։ Նրանք պետք է կարողանան ժամանակին տեսնել ու պաշտպանել ժողովրդական նախաձեռնությունը, որը մեր առաջընթացի կարևորագույն, անսպառ ռեզերվն է։

Ունկնդրել բանվորական միջավայրից, սոցիալիստական շինարարության առաջագծից եկող խոսքը, խորհրդակցել աշխատավոր մարդկանց հետ՝ սա այսօր ևս, ինչպես նշեց Կենտկոմի փետրվարյան պլենումը, պետք է լինի յուրաքանչյուր կոմունիստ-ղեկավարի առաջնահերթ պարտականությունը, ներքին խոր պահանջմունքը։ Կուսակցական կոմիտեները պետք է մշտապես կատարելագործեն կադրային աշխատանքը, մեծ պատասխանատվություն հանդես բերեն այդ գործում։

Որոշ կուսակցական կոմիտեներ երբեմն մոռանում են, որ յուրաքանչյուր ընկերոջ ղեկավար աշխատանքի առաջ քաշելը սկզբնավորում է նրա հետ տարվող դաստիարակչական աշխատանքի նոր փուլ, չեն հետևում նոր նշանակված կադրերի աճին, նրանց աշխատանքին, պահանջկոտ մոտեցում հանդես չեն բերում նրանց գործունեության արդյունքների նկատմամբ։

Մեր կուսակցական կոմիտեների պարտքն է օգնել կադրերին տիրապետելու աշխատանքի լենինյան ոճին, հասնել այն բանին, որ դրանով տոգորված լինի ղեկավար աշխատողների ողջ գործունեությունը։

«Կուսակցությունը ձգտում է,— նախընտրական ճառում ասաց ընկ. Կ. Ու. Չեռնենկոն,— որ լենինյան ոճն իր ողջ բազմազանությամբ ու հարստությամբ դառնա կուսակցական, սովետական, տնտեսական յուրաքանչյուր ղեկավարի հոգու պահանջմունքը, անփոխարինելի աշխատանքային գործիքը»։

Այսօր հարկավոր է ավելի բարձր պահանջներ ներկայացնել համապատասխան ղեկավար աշխատանքի առաջ քաշված կադրերին։

Բոլոր խնդիրները մարդիկ են լուծում։ Ավելի բարձր արդյունքներ ձեռք են բերվում այնտեղ, ուր առջևում կանգնած են կուսակցության գործին, նրա քաղաքականությանը նվիրված սկզբունքային, եռանդուն, աշխատասեր ընկերներ, պրոֆեսիոնալ բարձր կարողությամբ, գիտելիքների ժամանակակից մակարդակով, կազմակերպչական ընդունակություններով, պահպանողականությունը, քարացածությունը վճռականորեն հաղթահարելու ունակությամբ օժտված ընկերներ։

Չի կարելի մոռանալ, որ ղեկավարի անձնական օրինակն ու վարքագիծն ունեն դաստիարակչական մեծ նշանակություն։ Ուստի մշտապես պետք է բարձրացվի ղեկավարների պատասխանատվությունը, ինչպես և պահանջկոտությունը նրանց նկատմամբ։ Մյուս կողմից, կադրերին հարկավոր է դաստիարակել իրենց իսկ նկատմամբ պահանջկոտության, ինքնավերահսկողության, սեփական արարքները քննադատաբար գնահատելու ոգով։ Որովհետև մարդկանցից պահանջելու բարոյական իրավունք կարող է ունենալ միայն նա, ով ավելի պահանջկոտ է ինքն իր նկատմամբ։

Եվ ապա, կուսակցական կոմիտեները պետք է առանձնակի հոգատարություն ցուցաբերեն երիտասարդ ղեկավարների նկատմամբ, խելամիտ, կշռադատված դաստիարակչական աշխատանքով նրանց պատվաստեն աշխատանքի ճիշտ, խորապես կուսակցական ոճ, օգնեն նրանց կազմավորմանը, ձևավորմանը, հաջողությամբ դիմանալու, եթե կարելի է այսպես արտահայտվել, իշխանության փորձությանը։

Վերջին տարիներս ՀԿԿ Կենտկոմը, կուսակցական կոմիտեներն սկսել են



ավելի մեծ ուշադրություն նվիրել կատարման վերահսկողությանը։ Եվ դա տվել է իր արդյունքները։ Նկատելիորեն ամրապնդվել է կատարողական կարգապահությունը, բայց, ցավոք, դեռ քիչ չեն դեպքերը, երբ վերահսկողությունը կրում է ձևական, թղթային բնույթ, երբ հաշվետու են լինում ոչ թե ընդունված որոշումների, սահմանված առաջադրանքների փաստական կատարմամբ, այլ ամեն կարգի միջոցառումների պլաններով, խոստումներով։ Կուսակցությունն այսպես է դնում խնդիրը. պահանջկոտ վերահսկողություն, խոր վերահսկողություն իրական գործերի նկատմամբ, որն այնպես պիտի ուժեղացնել, որպեսզի զգացվի ամենուրեք։ Կուսակցական խստապահանջությունը կուսակցական ղեկավարման անկապտելի հատկանիշն է։

Կուսակցությունը գտնում է, որ վերահսկողության և կադրերի նկատմամբ պահանջկոտության ուժեղացման հարցերն անբաժանելի են կարգապահության, կարգուկանոնի և օրինականության ամրապնդումից։ Ուստի, մենք, ընկերնե՛ր, պարտավոր ենք ավելի մեծ հաստատակամությամբ ու հետևողականությամբ շարունակել պետական, աշխատանքային և արտադրական կարգապահությունն ամենուրեք ամրապնդելու գործը։ Փետրվարյան պլենումն արմատական, սկզբունքային անվանեց կազմակերպվածության ու կարգուկանոնի հարցը, և այդ մասին երկու կարծիք լինել չի կարող։

Կուսակցական մարմինների՝ որպես քաղաքական ղեկավարման մարմինների, դերի բարձրացումը անմիջականորեն կապված է պետական ու տնտեսական կազմակերպությունների նախաձեռնության և հանձնարարված գործի համար նրանց պատասխանատվության բարձրացման անհրաժեշտության հետ։ Այդ օրգանների ֆունկցիաներից կուսակցական կոմիտեների ֆունկցիաների հստակ սահմանազատումը, նրանց աշխատանքում կրկնորդման վերացումը քաղաքական նշանակության խոշոր հարց է։ Հարկավոր է ճիշտ հասկանալ առաջադրված խնդիրը՝ ակտիվորեն, կոնկրետ զբաղվել էկոնոմիկայի զարգացման հարցերով։

Տնտեսական ղեկավարներին դիմազրկելու պրակտիկան սառն ու անտարբեր է դարձնում կադրերին։ Հարկավոր է լիովին հրաժարվել կրկնորդման և զուգահեռման սովորությունից, քանի որ դրանք հավասարապես վնասում են ինչպես կուսակցական-քաղաքական ղեկավարմանը, այնպես էլ պետական կառավարմանը։

Մենք պետք է լուրջ ուշադրություն նվիրենք սովետների և պետական մյուս մարմինների կուսակցական ղեկավարման ձևերի ու մեթոդների հետագա կատարելագործմանը, կոմունիստ դեպուտատների հեղինակության ու պատասխանատվության բարձրացմանը, պետական հիմնարկությունների կուսակցական կազմակերպությունների աշխատանքի ակտիվացմանը, սովետներում կոմունիստների և կուսակցական խմբերի դերի բարձրացմանը։

Անհրաժեշտ է ըստ ամենայնի հասնել սովետական մարմինների աշխատանքի բարելավմանը, որոնց գործունեության հետ անխզելիորեն կապված են ինչպես մեր տնտեսական գործերը, նույնպես և սոցիալիստական դեմոկրատիայի հետագա խորացումը։ Հարկավոր է այսուհետ ևս բարձրացնել Գերագույն սովետի և տեղական սովետների աշխատանքի մակարդակը, աշխուժացնել նստաշրջանները, ուժեղացնել մշտական հանձնաժողովների ակտիվությունը, ընդլայնել դեպուտատական հարցապնդումների պրակտիկան, նստաշրջաններում սիստեմատիկաբար լսել ենթահաշվետու մարմիններին։

Դեռևս շատ անելիքներ կան տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզում տեղական սովետների ռեալ դերը բարձրացնելու, համապատասխան տերիտորիաներում նրանց կողմից տնտեսական ու սոցիալական զարգացման կոմպլեքսայնությունն ապահովելու, ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և սպասարկումների ոլորտի զարգացման, շրջակա միջավայրի պահպանության վերահսկողությունն ուժեղացնելու, տարբեր ենթակայության ձեռնարկությունների ու կազմակերպությունների գործունեությունը կոորդինացնելու և վերահսկելու իրավունքը լավագույնս օգտագործելու, մինիստրությունների ու գերատեսչությունների հետ իշխանության տեղական մարմինների փոխգործողությունը կատարելագործելու համար։ Նպատակա-

մղվածություն դեպի հրատապ խնդիրների լուծումը, կազմակերպչական գործուն աշխատանք, ընդունված որոշումների կատարման խիստ վերահսկողություն. ահա թե ինչը պետք է գտնվի սովետների մշտական ուշադրության կենտրոնում։

Կառուցել նոր աշխարհ, ասվեց Կենտկոմի փետրվարյան պլենումում, նշանակում է անդուլ կերպով հոգ տանել նոր աշխարհի մարդու ձևավորման, նրա գաղափարաբարոյական աճի մասին։ Հենց այս տեսանկյունից, ինչպես հայտնի է, գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի հարցերը քննության առավ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումը։

Գործի հաջողությունը պայմանավորված է գաղափարախոսական, կազմակերպչական և տնտեսական աշխատանքի միասնության լենինյան սկզբունքի հետևողական կիրառմամբ։

«Էկոնոմիկան անկարելի է որակապես նոր մակարդակի բարձրացնել առանց դրա համար անհրաժեշտ սոցիալական և գաղափարախոսական նախադրյալներ ստեղծելու,— նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումում։— Հավասարապես անկարելի է լուծել սոցիալիստական գիտակցության զարգացման հասունացած պրոբլեմներն առանց հենվելու տնտեսական և սոցիալական քաղաքականության ամուր հիմքի վրա»։

Հենց այսպիսի դիալեկտիկորեն սերտ փոխկապակցությամբ է դրվում հարցը։

Ինն ամիս է անցել ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումից, ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը։ Դա քիչ ժամանակ չէ։ Եվ քիչ բան էլ չի արվել։ Հանրապետական կուսակցական կազմակերպությունը հետևողականորեն աշխատում է գաղափարախոսական, մասսայական-քաղաքական աշխատանքի արդյունավետության բարձրացման ուղղությամբ։ Դա մեծապես նպաստում է կոմունիստական համոզվածության, մասսաների գաղափարայնության ու քաղաքական կուլտուրայի, նրանց աշխատանքային ակտիվության բարձրացմանը։ Գաղափարախոսական աշխատանքն ավելի սերտորեն է շաղկապվում հանրապետության սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրների լուծմանը։ Բարձրացել է քաղաքական և տնտեսագիտական ուսուցման մակարդակը, աճել է մասսայական ինֆորմացիայի միջոցների ներգործունությունը, ակտիվացել է պայքարն ընդդեմ բուրժուական գաղափարախոսության և պրոպագանդայի։ Միաժամանակ նկատելի են նաև այդ աշխատանքում տեղ գտած թերություններն ու վրիպումները։

Հունիսյան պլենումի որոշումների իմաստն այն է, որ շարժման մեջ դրվեն մասսաների գիտակցականության ու գաղափարական համոզվածության պարունակած բոլոր ստեղծագործական ուժերը։ Չէ՛ որ դա նրանց աշխատանքային ու հասարակական ակտիվության հիմքն է։ Իսկ դա պահանջում է ակտիվ, ստեղծագործական, ստերեոտիպից զերծ, հետևողական, կոնկրետ աշխատանք, դրա նոր ձևերի ու մեթոդների որոնում, որոնք համապատասխանեն նյութական արտադրության ոլորտի փոփոխություններին և դրանով էլ ազդեն դաստիարակչական գործունեության արդյունավետության վրա։ Մեզանում, ցավոք, առանձին կուսակցական կոմիտեներ, սկզբնական կուսկազմակերպություններ դեռևս շարունակում են աշխատել հին ձևով։

Հունիսյան պլենումը պահանջեց, որ բոլոր կոմունիստները, բոլոր ղեկավար աշխատողները, սկսած աշխատավորական կոլեկտիվներից և վերջացրած մինիստրություններով ու գերատեսչություններով, մինչև վերջ ըմբռնեն դաստիարակչական ծրագրի սոցիալ-տնտեսական ապահովման նշանակությունը։ Քանզի, եթե արտադրությունում բացակայում են պատշաճ կարգուկանոնն ու կազմակերպվածությունը, գործերը լավ չեն ընթանում, լուրջ թերություններ են լինում աշխատանքի կազմակերպման և մարդկանց վարձատրման մեջ, եթե ինչպես հարկն է չեն լուծվում սոցիալական հարցերը, ապա այդ ամենը բացասաբար է անդրադառնում մարդկանց դաստիարակության վրա և այստեղ, ինչպես ասում են, ոչ մի դասախոսություն և զրույց չի օգնի։

Ցավով պետք է նշել, որ մեզանում քիչ չեն այն կազմակերպություններն ու ձեռնարկությունները, ուր այդպիսին է պատկերը, իսկ ղեկավարներն ու կու-



սակցական կազմակերպությունները դանդաղ են վերակառուցում իրենց աշխատանքը։ Այսօր սոցիալիստական աշխատանքի կազմակերպման նոր, արագ տարածում գտած ձևերից մեկը աշխատանքի բրիգադային եղանակն է։ Ծնվել է նաև աշխատանքի մի այլ հետաքրքրական ձև՝ ընտանեկան աշխատանքային բրիգադը, ընտանեկան կապալը։ Գյուղում գործում է կառավարման նոր ձև՝ շրջանային ագրոարդյունաբերական միավորումը։ Դրանց վարչական-կազմակերպական կառուցվածքն արդեն կարգավորված է։ Իսկ գաղափարախոսական աշխատանքի՞նը. այն պարզապես չի համապատասխանում արտադրության և աշխատանքի կազմակերպման նոր ձևերին։ Կուսակցության քաղկոմները, շրջկոմները պետք է լրջորեն զբաղվեն այս գործով, գաղափարադաստիարակչական աշխատանքի կառուցվածքը համապատասխանեցնեն նոր ձևերին, ծանրության կենտրոնը տեղափոխեն բրիգադ, շրջանային ագրոարդյունաբերական միավորում, աշխատավորական կոլեկտիվներ, այնտեղ, ուր կոնկրետ վճռվում է պլանների կատարման, մեր առաջընթացի բախտը։

Երբեք չի կարելի անտեսել տնտեսական առաջընթացի մարդկային գործոնը։ Եվ այստեղ, առաջին հերթին, անհրաժեշտ է բոլոր աշխատավորների շրջանում մշակել աշխատանքի նկատմամբ հարգալից, սոցիալիստական վերաբերմունք։ Աշխատանքի նկատմամբ հարգանքի դաստիարակումը, ծուլության և թափթփվածության, անբանների ու տեղից տեղ «չվողների» դեմ պայքարը, անկարգապահության, անգործության, անպատասխանատվության հանդեպ արհամարհանքի ու անհանդուրժողականության մթնոլորտի ստեղծումը դաստիարակչական աշխատանքի գլխավոր խնդիրներից են։

Կազմակերպվածության ու կարգուկանոնի բարձրացումը հենց այն օղակն է, որից բռնելով կարելի է դուրս քաշել ամբողջ շղթան։ Ամեն կարգի անկազմակերպվածությունը, անպատասխանատվությունը կրկնակի վնաս են հասցնում, հանգեցնում նյութական ծախսումների և սոցիալ-բարոյական լուրջ վնաս պատճառում։

Մենք այսուհետ ևս մշտապես և անշեղորեն կպայքարենք հափշտակությունների, կաշառակերության, պաշտոնեական դիրքի չարաշահումների, պետական միջոցների շռայլման, աչքակապության և սովետական ապրելակերպին անհարիր բացասական մյուս բոլոր դրսևորումների դեմ։ Եվ ոչ ոքի չենք խնայի։ Այստեղ գործի հաջողությունը պայմանավորված է ղեկավարների բարձր պատասխանատվությամբ ու պահանջկոտությամբ, այդ հարցերի նկատմամբ կուսակցական կազմակերպությունների և աշխատավորական կոլեկտիվների, հասարակության յուրաքանչյուր անդամի ուշադրության աստիճանով, ժողովրդական վերահսկողության, իրավապահպան և արդարադատության մարմինների արդյունավետ աշխատանքով։

Աշխատանքային դաստիարակության պրոբլեմը պետք է դրվի երիտասարդության հետ տարվող մեր ողջ աշխատանքի կենտրոնում։ Ամենալայն մասշտաբներով դպրոցական ռեֆորմի քննարկումը ցույց տվեց դրա հանդեպ մեր ողջ հասարակայնության շահագրգռությունը։ Մեր հանրապետությունում քննարկմանը մասնակցեց մոտ մեկ միլիոն մարդ։ Նրանցից ավելի քան 100 հազարը հանդես եկավ ժողովներում, խորհրդակցություններում, մամուլում, ռադիոյով և հեռուստատեսությամբ։ Ընկերների մեծամասնությունը մատնանշել է, որ անհրաժեշտ է ուժեղացնել աշխատանքային դաստիարակությունը, պաշտպանելով ռեֆորմի նախագծի համապատասխան դրույթները։

Կուսակցական կազմակերպությունները և կոմիտեները պետք է ուշադրության կենտրոնում պահեն երիտասարդության, ինչպես նաև բոլոր աշխատավորների սոցիալիստական գիտակցության զարգացման հարցերը, նրանց դաստիարակեն կոմունիզմի, պրոլետարական և սոցիալիստական ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության իդեալներին անսահման նվիրվածության, ռուս մեծ ժողովրդի, ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների հետ եղբայրական բարեկամության ոգով։

Մեր կուսակցությունը մշտապես հոգ է տանում այն մասին, որ աճեցնի, պատրաստի այնպիսի երիտասարդություն, որը չի երերա, չի կքի երկրի բախտի համար, սոցիալիզմի ու աշխարհի բախտի համար պատմական պատաս-

խանատվության բեռան տակ, այնպիսի երիտասարդություն, որը կարողանար ո՛չ միայն յուրացնել ավագ սերունդների փորձը, այլև այն հարստացնել սեփական մեծագործություններով։ Այստեղից էլ՝ կուսակցական կոմիտեների և կազմակերպությունների, կոմերիտմիության, արհմիությունների, աշխատավորական կոլեկտիվների խնդիրները։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմի պլենումներում բազմիցս խոսվել է այն մասին, որ անհրաժեշտ է բարելավել գաղափարախոսական, քաղդաստիարակչական աշխատանքի բոլոր ուղղությունները, առաջադրվել են խնդիրներ։ Բայց այսօր էլ տակավին մինչև վերջ լուծված չեն կուսակցական լուսավորության ցանցի աշխատանքի ոճը բարելավելու, պրոպագանդիստների, ագիտատորների ակտիվին և հասարակագիտական առարկաների դասախոսներին օպերատիվ ինֆորմացիա տալու, դիտողական ագիտացիան կատարելագործելու, հասարակական կարծիքը լիովին ուսումնասիրելու և այլ հարցեր։

Անհրաժեշտ է գործուն միջոցներ ձեռնարկել նշված թերությունները վերացնելու համար։

Այսօր առավել, քան երբևէ, բարձրանում են մամուլի, մասսայական ինֆորմացիայի մյուս օրգաններին ներկայացվող պահանջները։ Նրանցից մենք ակնկալում ենք ավելի խոր ու հետաքրքրական հրապարակումներ հանրապետության կյանքի վերաբերյալ, ավելի մեծ համարձակություն՝ հասունացած պրոբլեմների առաջադրման գործում։

Անհրաժեշտ է, որ մեր մամուլը, հեռուստատեսությունն ու ռադիոն, մասսայական-քաղաքական աշխատանքի բոլոր միջոցները առավելագույնս ուժեղացնեն հակապրոպագանդան։ Նրանք պարտավոր են հարձակողաբար և օպերատիվ կերպով, համոզիչ փաստարկներով հակահարված տալ իմպերիալիստական պրոպագանդայի, արևմտյան «ձայների», այդ թվում՝ դաշնակցության թշնամական ոտնձգություններին, որոնք փորձում են վարկաբեկել սոցիալիզմը, ՍՄԿԿ-ի ազգային քաղաքականությունը, սովետական պետության խաղաղասիրական քայլերը։ Հարկավոր է շարունակ մերկացնել ամերիկյան իմպերիալիզմի, Արևմուտքի առավել ագրեսիվ ուժերի սանձարձակ ռազմատենչ քաղաքականությունը, նրանց աշխարհակալական նկրտումները, պրոգրեսին հակադրվելու, ժողովուրդների իրավունքները ոտնահարելու, ազատությունները սահմանափակելու քաղաքականությունը։

Կոմունիստական դաստիարակության վերը նշված խնդիրների իրականացման գործում լուրջ անելիքներ ունեն մեր գրականության և արվեստի գործիչները, որոնցից մենք ակնկալում ենք գաղափարապես հագեցած, քաղաքականապես նպատակասլաց և գեղարվեստորեն բարձրարժեք գործեր։

Հատկապես կցանկանայինք նշել հանրապետության գիտության առջև ծառացած խնդիրները։ Այսօր աննախադեպ մեծանում է գիտության դերը արտադրողական ուժերի զարգացման, աշխատանքի արտադրողականության և որակի բարձրացման գործում։ Առանց գիտական հիմնարկությունների և արտադրական ձեռնարկությունների սերտ կապի ու փոխգործողության այստեղ անկարելի է առաջ ընթանալ։ Մենք բնավ չենք կարող բավարարվել պրակտիկայում գիտության նվաճումների ներդրման ներկայիս տեմպերով։ Հանրապետության Մինիստրների խորհուրդը պետք է ավելի ակտիվ զբաղվի այս գործով։ Բարձրանում է գիտության, հատկապես հասարակական գիտությունների դերը գիտական աշխարհայացքի ձևավորման ասպարեզում, դասակարգայնության ու կուսակցականության լենինյան սկզբունքների հաստատման գործում, ամեն կարգի հակագիտական կոնցեպցիաների, միստիկական ու կրոնական նախապաշարումների դեմ մղվող պայքարում։

Այստեղից էլ՝ ակադեմիական, ճյուղային, բուհական գիտության, գիտական հիմնարկությունների և ուսումնական հաստատությունների կուսկազմակերպությունների խնդիրները։

Մեր գաղափարախոսական աշխատանքի օրվա խնդիրն է ՍՄԿԿ Կենտկոմի փետրվարյան պլենումի արդյունքների, ընկեր Կ. Ու. Չեռնենկոյի ելույթների բովանդակած դրույթների ու հետևությունների լայն պրոպագանդումը։

Լայնորեն ծավալված մասսայական-քաղաքական ու կազմակերպչական աշխատանքում գլխավոր ջանքերը պետք է կենտրոնացնել կուսակցության քաղաքականության հետևողականությունն ու հիմնավորվածությունը, աշխատավորության շահերին դրա օրգանական համապատասխանությունը պարզաբանելու վրա։ Պետք է մասսաներին համոզիչ կերպով ցույց տալ, որ կուսակցությունը պարզորոշ տեսնում է հեռանկարը, ունի երկրի առջև ծառացած պրոբլեմների հստակ ըմբռնում, գործողությունների հստակ ծրագիր։

Մշակելով երկրի հետագա զարգացման պլանները՝ մեր կուսակցությունը լիովին հաշվի է առնում աշխարհում ստեղծված իրադրությունը։ Իսկ այն ներկայումս, ինչպես գիտեք, բարդ է ու լարված։

Կուսակցությունն ու սովետական պետությունը գործուն միջոցներ են ձեռնարկում մեր հայրենիքի անվտանգությունն ապահովելու համար, հետևողականորեն և հաստատակամորեն վարում են լենինյան ակտիվ արտաքին քաղաքականություն։ Դա կայուն խաղաղության, ժողովուրդների ազատության ու անկախության քաղաքականություն է, համաշխարհային միջուկային պատերազմի սպառնալիքից մարդկությանը փրկելու քաղաքականություն։ Այդ քաղաքականությունը համապատասխանում է սովետական ժողովրդի և աշխարհի բոլոր ժողովուրդների արմատական շահերին։ Եվ, ինչպես հայտարարվեց Կենտկոմի փետրվարյան պլենումում, այդ քաղաքականությունից մենք ոչ մի քայլ չենք նահանջի։

Երեք օր առաջ տեղի ունեցան ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունները։ Դրանց արդյունքները մի անգամ ևս ցուցադրեցին սովետական մարդկանց բարձր քաղաքական ակտիվությունը, այն, որ մեր ժողովուրդը լիովին և անվերապահ պաշտպանում է ՍՄԿԿ-ի, սովետական պետության ներքին ու արտաքին իմաստուն քաղաքականությունը։

Ընտրությունները հանդիսացան կուսակցության ու ժողովրդի միասնության մի նոր վառ ապացույցը, կոմունիստական շինարարության հոյակապ պլանները լիովին կենսագործելու աշխատավորների վճռականության արտահայտությունը։

Սովետական մարդիկ լավատեսությամբ են նայում ապագային, որովհետև հաստատ գիտեն՝ մեր լենինյան կուսակցությունը, Կենտրոնական կոմիտեն, Կենտկոմի ղեկավար կորիզը՝ քաղբյուրոն, անսասանորեն հավատարիմ են լենինիզմին, մեծ Հոկտեմբերի գործին։ Նրանք հանձին կոմունիստական կուսակցության տեսնում են իրենց փորձված կոլեկտիվ առաջնորդին։ Կուսակցությունը թանկ է գնահատում ժողովրդի վստահությունը և սովետական մարդկանց բարօրությունն ու երջանկությունը համարում է իր գործունեության գերագույն նպատակը։ Կուսակցության և ժողովրդի միասնությունը եղել է, կա և կլինի մեր սոցիալիստական հասարակության ուժի անսպառ աղբյուրը։

Թույլ տվեք, ընկերնե՛ր, հավաստիացնել ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեին, Կենտկոմի քաղբյուրոյին, վերջում ասում է ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը, որ հանրապետական կուսակցական կազմակերպությունը, ինչպես միշտ, կլինի մեր կուսակցության հավատարիմ մարտական, համախմբված ջոկատը, որ Սովետական Հայաստանի կոմունիստները, բոլոր աշխատավորները կաշխատեն ավելի մեծ եռանդով ու բարձր կազմակերպվածությամբ, ուժերի ու գիտելիքների լիակատար նվիրումով՝ հանուն կոմունիստական արարման ծրագրի հաջող կենսագործման, հանուն մեր մեծ հայրենիքի հետագա բարգավաճման և համակողմանի առաջադիմության։ (Բուռն ծափահարություններ)։

## ՍՄԿԿ XXVI համագումարի որոշումները գործողության մեջ

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍՊԱՌՄԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆԸ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՀՈԳԱՏԱՐՈՒԹՅՈՒՆ

**Ս. ՊՅԱՏԿՈՎԱ,**
ՀԿԿ Կենտկոմի թեթև արդյունաբերության և ժողովրդական սպառման ապրանքների բաժնի վարիչ

*ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՍՏՐԱՏԵԳԻԱՅԻ բարձրագույն նպատակը եղել և մնում է ժողովրդի նյութական և կուլտուրական մակարդակի անընդհատ բարձրացումը: Աշխատավորների բարեկեցության աճն անբաժան է բազմազան ապրանքների և ծառայությունների նկատմամբ բնակչության պահանջմունքների առավել լրիվ բավարարումից: Ելնելով դրանից, կուսակցությունը մշտական ուշադրություն է նվիրում ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ճյուղերի զարգացմանը:*

*Ինչպես իր նախընտրական ճառում նշեց ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոն, ներկայումս մշակվում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ու սպասարկումների համակարգի զարգացման ծրագիր, որը պարենային ծրագրի իրականացման հետ մեկտեղ կոչված է լուծելու սովետական մարդկանց բարեկեցության բարձրացման խնդիրը:*

*Այդ հարցին տալով առանձնահատուկ նշանակություն, ՀԿԿ Կենտկոմը, հանրապետության Մինիստրների խորհուրդը մեծ ուշադրություն են նվիրում ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունների տնտեսական և սոցիալական զարգացմանը, արտադրության տեխնիկական վերազինմանը: Գլխավոր խնդիրը, անշուշտ, արտադրության արդյունավետության և թողարկվող արտադրանքի որակի բարձրացումն է՝ որակի կառավարման համակարգի, աշխատանքի կազմակերպման և խթանման առավել արդյունավետ եղանակների ներդրման միջոցով:*

*Մեր հանրապետության տասնմեկերորդ հնգամյակի սոցիալ-տնտեսական պլաններում հստակորեն արտացոլված է ժողովրդի բարեկեցության բարձրացման կուսակցության կուրսը: Այն բնորոշվում է «բ» խմբի ճյուղերի արտադրության զարգացման բարձր տեմպերով: Սպառման ապրանքների արտադրության աճը ուղեկցվում է որակի բարձրացմամբ և տեսականու ընդլայնմամբ:*

*Այս ասպարեզում կուսակցության պահանջներն ու խնդիրները շարադրված են մասսայական սպառման ապրանքների արտադրությունն ավելացնելու, որակը և տեսականին բարելավելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի հայտնի որոշումներում: Դրանց հիման վրա ՀԿԿ Կենտկոմը և Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհուրդը նույնպես ընդունել են համապատասխան որոշումներ, որոնցում կոնկրետացված են հանրապետության*



*մինիստրությունների, գերատեսչությունների և կազմակերպությունների անմիջական խնդիրները:*

*Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության ավելացումը, տեսականու ընդլայնումը և որակի արմատական բարելավումը հանրապետության տասնմեկերորդ հնգամյակի տնտեսական ու սոցիալական ծրագրի առանցքային հարցերից են: Ուստի, գլխավոր ուղղությունը, որի վրա անհրաժեշտ է կենտրոնացնել տնտեսավարների, կուսակցական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունների ջանքերը, պետք է դառնան մասսայական սպառման ապրանքների արտադրության տեխնիկական մակարդակի բարձրացումը, նորագույն տեխնոլոգիական պրոցեսների ներդրումը, արտադրության կառավարման նոր ձևերի կիրառումը:*

*Վերջին տասնամյակում լայն սպառման ապրանքներ արտադրող ճյուղերի արդյունաբերական պոտենցիալն աճել է 2,2 անգամ: Առաջընթացը պարզ պատկերացնելու համար նշենք, որ միայն անցած հնգամյակում «բ» խմբի ճյուղերի զարգացմանը հատկացվել են 326 միլիոն ռուբլու կապիտալ ներդրումներ, այդ թվում 140 միլիոնը՝ տեխնիկական վերազինման համար: Կառուցվել և վերակառուցվել է 30 ձեռնարկություն, տեղադրվել է տասը հազար նոր, բարձրարտադրողական սարքավորում: Ընդհանուր առմամբ շուրջ 80 տոկոսով նորացվել է սարքավորումների տեխնոլոգիական պարկը:*

*Հանրապետությունում ներդրված նոր տեխնիկայի 2.300 միջոցառումներից 830-ը իրականացվել է ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկություններում: Դրանցից 270-ը նպատակամղված է արտադրանքի նոր տեսակների յուրացմանը, 320-ը՝ արտադրական պրոցեսների մեքենայացմանն ու ավտոմատացմանը, պրոգրեսիվ տեխնոլոգիաների յուրացմանը, 190-ը՝ աշխատանքի գիտական կազմակերպման ներդրմանը:*

*Այդ ամենն ապահովեց գործվածքների, տրիկոտաժի, կոշկեղենի, կարի արտադրանքի, ոչ գործվածքային նյութերի, տեքստիլ և գալանտերեային իրերի, գորգերի, ճենապակե և էմալապատ ամանեղենի, բյուրեղապակյա, մելքիորի և պլաստիկ իրերի ու կուլտուր-կենցաղային և տնտեսական գործածության բազմաթիվ այլ ապրանքների թողարկման կարողությունների զգալի աճը: Այսպիսով, ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունները արտադրական-տեխնիկական հզոր բազայի վրա փոխադրվում են որակապես նոր, առավել բարձր տեխնիկական մակարդակի, որի շնորհիվ արդեն տասներորդ հնգամյակում թեթև արդյունաբերության արտադրանքը ավելացավ մեկուկես անգամ, այդ թվում կարի արտադրանքը՝ երկու և կես անգամ, կուլտուր-կենցաղային և տնտեսական ապրանքների արտադրությունը՝ 39,4 տոկոսով, կահույքի, կենցաղային լուսատեխնիկական իրերի, գեղարվեստական-արհեստագործական առարկաների, պլաստմասսաների ու հուշանվերների արտադրանքը՝ 1,8—2,1 անգամ, տեսակավոր ամանեղենինը՝ 3,1 անգամ և այլն:*

*Ընթացիկ հնգամյակի անցած երեք տարիներին նույնպես մեր հանրապետությունում ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունն աճել է բարձր տեմպերով: Բավական է նշել, որ այդ ճյուղերի թողարկած արտադրանքի ծավալն ավելացել է 20,9 տոկոսով՝ պլանավորված 17,9-ի փոխարեն:*

*Էկոնոմիկայի հետագա զարգացման, գիտատեխնիկական բարձր ցուցանիշների ապահովման հիման վրա. կուսակցությունը հետևողականորեն շարունակում է տասնմեկերորդ հնգամյակի սոցիալական ծրագրի իրականացումը, հստատակամորեն պայքարում է ժողովրդական սպառման ապրանքների արտադրության աճի, դրանց որակի բարձրացման ու տեսականու ընդլայնման, ծառայությունների ոլորտի, ձեռնարկությունների ցանցի զարգացման և աշխատանքի բարելավման համար:*

*Առաջադրված նպատակին հասնելու հիմնական միջոցներից մեկը արտադրության տեխնիկական վերազինումն է, որին ուղղված է ճյուղի համար նախատեսված կապիտալ ներդրումների 38 տոկոսը: Լրիվ թափով ընթանում է հնացած մեքենաների փոխարինումը նորերով: Վերջին տարիներին միայն թեթև*

արդյունաբերության ձեռնարկություններում տեղադրվել են երկու հազար միավոր նորագույն, բարձր արտադրողական սարքավորումներ։

Ճյուղի տնտեսական ղեկավարների, կուսակցական կազմակերպությունների առջև ծառացել են կարևոր խնդիրներ՝ մոբիլիզացնել աշխատավորական կոլեկտիվների ջանքերը բարձրորակ ապրանքների արտադրության ավելացման նպատակով, ինչպես բարձրացնել արտադրության արդյունավետությունը, ուժեղացնել խնայողության ռեժիմը։ Լուրջ խնդիր է ժողովրդի համար ապրանքներ արտադրող ձեռնարկություններում արտադրության կառավարման կատարելագործումը, ինժեներական ապահովվածության մակարդակի բարձրացումը, ապրանքների սպառողական արժեքի մեծացումը։

Այսօր, ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող գրեթե բոլոր ձեռնարկություններում ներդրված է արտադրանքի որակի կառավարման կոմպլեքսային համակարգ, որը լայն հնարավորություններ է ընձեռում սպառման ապրանքների որակի բարելավման հետ առնչվող տեխնիկական և կազմակերպական հարցերը լուծելու համար։ Իրականացված միջոցառումների շնորհիվ թեթև արդյունաբերության համակարգում 1983 թ. պետական որականիշով արտադրվող ապրանքների տեսակարար կշիռը հասել է 33,2 տոկոսի, իսկ «Ն» նշանով արտադրանքինը՝ 25,5 տոկոսի։ Համեմատության համար նշենք, որ ընդհանուր միութենական այդ ցուցանիշը համապատասխանաբար 13,9 և 9,8 տոկոս է։ Տեղական արդյունաբերության մինիստրությունում որականիշ է կրում արտադրանքի 20 տոկոսը։

Ձեռնարկություններում ինժեներական ապահովման կոմպլեքսային պլանների ներդրման շնորհիվ բարելավվել է տեխնոլոգիական սարքավորումների պահպանումը և արագացել անցումը բազմահաստոցային սպասարկման։ Բարելավվել է բամբակյա, բրդյա և մետաքսե գործվածքների գեղարվեստական ձևավորումը, որն ավելի է համապատասխանում նորաձևության և մոդելավորման արդի պահանջներին, առավել արժեքավորում արտադրանքի գեղագիտական, ապրանքային տեսքը։ Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության աճին և որակի բարելավմանը մեծապես նպաստում են տեխնիկական առաջընթացը, նորագույն տեխնիկայի և տեխնոլոգիայի ներդրումը։ Այսպես, Իջևանի գորգի կոմբինատի հնացած դազգահները փոխարինվում են Գերմանական Դեմոկրատական Հանրապետության «Տեքստիմա» ֆիրմայի նոր մեքենաներով, որի շնորհիվ ավելանում է որականիշով արտադրանքի բաժինը։ Սովետաշենի տրիկոտաժի արտադրամիավորումում դարձյալ ԳԴՀ-ից «Մուլտիկոմետ» գործող մեքենաների տեղադրմամբ ներդրվեց գործվածքների թեթևացված կառուցվածքը՝ նոր տեսակի հումքի կիրառմամբ։ Դրա շնորհիվ գործվածքների արտադրությունն ավելացել է 300 տոննայով։

Երևանի Ալ. Մյասնիկյանի անվան № 1 տրիկոտաժի միավորումը տեղադրել է 243 միավոր տեխնոլոգիական սարքավորում, որի տնտեսական արդյունքը հասել է 454 հազար ռուբլու։ Յուրացված են տրիկոտաժե իրերի դաջանախշումը, սուբլիմացման, չոր մամլման և նախշերի ջերմային փոխանցման մեթոդը։ Յուրացված է խոր տպագրության հիման վրա գունագեղ ձևավորում ունեցող նոր արտադրատեսակների թողարկումը։ Դա միավորմանը հնարավորություն տվեց արտադրվող բազմագույն բարձրորակ գործվածքների 40 տեսակի մոդելներ ներկայացնել «Ն» ինդեքսի։ Երևանի Կլարա Ցետկինի անվան կարի արտադրամիավորումում ներդրվել է տղամարդու կոստյումներ կարելու կոմպլեքսային մեքենայացված հոսքային գիծ, որը հագեցած է հայրենական և արտասահմանյան բարձր արտադրողական սարքավորումներով։ Պատրաստի կոստյումի որակը բնորոշող՝ վերջնամշակման մի շարք օպերացիաների ավտոմատացումը, առանձին դետալների և հանգույցների պատրաստման պրոգրեսիվ մեթոդների կիրառումը զգալիորեն բարձրացնում են արտադրանքի որակը։ «Գարուն» և Կիրովականի Ստ. Շահումյանի անվան կարի արտադրամիավորումները ընտրել ու արտադրության մեջ ներդրել են կանանց



զգեստների և տղամարդու վերնաշապիկի հատուկ նորաձև մոդելների կոլեկցիաներ։

Այս բոլոր նորամուծությունների շնորհիվ 1983 թվականին թեթև արդյունաբերության ձեռնարկություններում յուրացվել է նոր մոդելի ավելի քան 1,6 հազար արտադրատեսակ, նորացվել է արտադրանքի ավելի քան 55 տոկոսը։ Պետական որականիշի է ներկայացվել ավելի քան 8 հարյուր միավոր, և բարձրորակ արտադրատեսակների ընդհանուր թիվը հասցվել է 1,5 հազարի։

Ընթացիկ հնգամյակում զգալիորեն ընդլայնվում և նորացվում է տեղական արդյունաբերության ձեռնարկությունների արտադրանքի տեսականին։ Անցած երեք տարիներին մշակված և արտադրության մեջ ներդրված է 755 անուն նոր արտադրատեսակ, յուրացված են 110 տեխնոլոգիական նորագույն պրոցեսներ, մեքենայացված և ավտոմատացված են աշխատատար 140 օպերացիաներ։ Այս ամենը հնարավորություն է տվել զգալիորեն բարձրացնելու արտադրանքի որակը։

Տեղական արդյունաբերության ձեռնարկություններում նոր տեխնիկայի ներդրման միջոցառումներից ուշագրավ են «Հայճենապակի» և «Պլաստիկ» արտադրամիավորումներում ներդրված տեխնոլոգիական նոր պրոցեսները, որի շնորհիվ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, յուրացվել են մեծ պահանջարկ վայելող՝ պոլիէթիլենային թաղանթների, ինչպես նաև պոլիէթիլենով և լցանյութային պոլիստրոլով պլաստմասսաների արտադրության տեխնոլոգիական պրոցեսները, որի շնորհիվ խնայվում է դեֆիցիտ հումքը։

Տեխնոլոգիական նոր, առավել կատարյալ պրոցեսներ են յուրացվել և ներդրվել նաև հուշանվերների և ժողովրդական-գեղարվեստական արհեստագործությունների արտադրամիավորումում, Էջմիածնի կենցաղային մետաղյա իրերի կոմբինատում, Լենինականի հեծանիվի գործարանում։ Դրա շնորհիվ ընդլայնվում է արտադրանքի տեսականին, բարձրանում որակը, խնայվում են զգալի ծավալով նյութական և աշխատանքային ռեսուրսներ։ Արտադրության տեխնիկական վերազինումը, տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործումը, գիտության և տեխնիկայի նվաճումների ներդրումը զուգակցվում են աշխատանքի կազմակերպման և խթանման պրոգրեսիվ ձևերի ներդրման հետ։ Թեթև և տեղական արդյունաբերության մի շարք ձեռնարկություններ հանդես են եկել նախաձեռնությամբ՝ «Բրիգադային եղանակի միջոցով՝ դեպի աշխատանքի բարձր կարգապահություն և արտադրանքի գերազանց որակ»։ Այդ շարժումը տալիս է ցանկալի արդյունքներ։ Կիրովականի Ստ. Շահումյանի անվան և Երևանի «Գարուն» կարի արտադրամիավորումները 1983 թվականին պետական որականիշով թողարկվող արտադրանքի տեսակարար կշիռը հասցրել են համապատասխանաբար՝ 71,3 և 68 տոկոսի, կոշիկի «Մասիս», Կ. Ցետկինի անվան կարի, Սովետաշենի տրիկոտաժի արտադրամիավորումները՝ 51—62 տոկոսի։ Արտադրանքի որակի բարձրացման գործում որոշակի հաջողություններ ունեն նաև Երևանի տրիկոտաժի № 1, «Անուշ», Սպիտակի կարի, Լենինականի գուլպա-նասկեղենի արտադրամիավորումները, Երևանի կաշվե գալանտերեայի ֆաբրիկան և այլ ձեռնարկություններ։

Լայն սպառման ապրանքների նկատմամբ բնակչության պահանջմունքները բավարարելու խոշոր ռեզերվներ կան միութենական ենթակայության ձեռնարկություններում։ Դրանք տեխնիկապես հագեցված են, ունեն առաջնակարգ կոնստրուկտորական բյուրոներ և կարող են ու պետք է կազմակերպեն կուլտուր-կենցաղային և տնտեսական նշանակության առավել բարդ իրերի արտադրությունը, որոնց նկատմամբ պահանջարկը լրիվ չի բավարարվում։

Բազմաթիվ ձեռնարկություններ հաջողությամբ են կատարում կուսակցության առաջադրած այդ պահանջները՝ հատուկ ուշադրություն նվիրելով արտադրանքի որակական ցուցանիշների բարձրացմանը։ Այդ առումով շոշափելի արդյունքների են հասել «Հայէլեկտրալույս», Երևանի հաստոցամիավորման, «Հայէլեկտրահաղորդիչ», «Հայ քիմմեքենա», «Էլեկտրասարք» «Հայկենցաղքիմ» արտադրամիավորումները, «Ալմաստ» գործարանը և այլն։ Սակայն ամե-

նուրեք չէ, որ պատշաճ հիմքերի վրա է դրված այդ կարևոր գործը։ Հանրապետության տարածքում գտնվող միութենական ենթակայության շատ ձեռնարկություններ («Հայալտո», «Էլեկտրոն» արտադրամիավորումներ, Երևանի սարքերի գործարան և այլն) աշխատավարձի ֆոնդի մեկ ռուբլու դիմաց թողարկվող ժողովրդական սպառման ապրանքների քանակը շատ փոքր է և 20 կոպեկից չի անցնում։

Օրվա հրամայական պահանջ է լայն սպառման ապրանքների արտադրության կոորդինացումը։ Այժմ խնդիր է դրվում բոլոր ձեռնարկություններում, անկախ դրանց գերատեսչական պատկանելությունից, սահմանել աշխատավարձի ֆոնդի մեկ ռուբլու դիմաց սպառման ապրանքների թողարկման առաջադրանքներ։ Ճիշտ կիրառման դեպքում այդ ցուցանիշը կարող է դառնալ ձեռնարկությունների ու մինիստրությունների վրա ներազդելու գործուն լծակ։

ՀԿԿ Կենտկոմը և ՀՍՍՀ Մինիստրների խորհուրդը այդ գործը կարգավորելու նպատակով մեքենաշինության, քիմիական, նավթաքիմիական արդյունաբերության և երկրաբանական, ինչպես նաև տեղական արդյունաբերության ձեռնարկությունների համար սահմանել են սպառման ապրանքների արտադրության ավելացման և տեսականու ընդլայնման լրացուցիչ առաջադրանքներ։ Միաժամանակ մշակվում և իրականացվում են արտադրանքի տեխնիկական մակարդակի բարձրացման և առավել մեծ պահանջարկ վայելող արտադրատեսակների արտադրությունն ավելացնելու միջոցառումներ։ Դրա շնորհիվ 1985 թվականին մի շարք ապրանքների, մասնավորապես կահույքի, ժամացույցների, կենցաղային քիմիայի առարկաների, պլաստմասսայից պատրաստված իրերի, ավտոմեքենաների մագնիտոֆոնների, գյուղատնտեսական գործիքների, հուշանվերների, կենցաղային գործածության զանազան իրերի արտադրությունը կավելանա շուրջ 40 տոկոսով։

ՍՄԿԿ Կենտկոմի 1984 թ. փետրվարյան պլենումը պահանջեց մեծացնել արտադրական և գիտատեխնիկական պոտենցիալը։ Անդրադառնալով այդ հարցին, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Կ. Ու. Չեռնենկոն իր նախընտրական ճառում խնդիր դրեց լիովին և բարձր հատույցով գործի դնել ապրանքների արտադրությունն ավելացնելու մեծ ռեզերվները։

Հարկ է նշել, որ առայժմ այս պրոբլեմը շատ դանդաղ է լուծվում հանրապետության ժողովրդական տնտեսության որոշ ճյուղերում, այդ թվում և թեթև արդյունաբերության մեջ։ Հայտնի է, որ մանվածքային արտադրությունը ճյուղի ուրիշ շատ ձեռնարկությունների աշխատանքի հիմքն է։ Մինչդեռ, օրինակ, բամբակի մանվածքի արտադրակարողություններն օգտագործվում են միայն 71,7 տոկոսով, մահուդի մանվածքինը՝ 51,5, նուրբ մահուդինը՝ 78,3 տոկոսով։ ՀԿԿ Կենտկոմի 1984 թ. հունվարյան պլենումում նշվեցին հանրապետության արդյունաբերության որոշ ճյուղերում արտադրական կարողությունների օգտագործման ցածր ցուցանիշների հիմնական պատճառները։ Պլանավորման թերությունների, արտադրության անբավարար կազմակերպման, արտադրական օբյեկտների սխալ տեղաբաշխման հետևանքով աշխատուժի պակասի հետ մեկտեղ դրանք բացատրվում են նաև նրանով, որ շատ ձեռնարկություններում արտադրանքի թողարկումը պլանավորվում է փոքր ծավալներով, քանի որ տվյալ արտադրանքը լայն կիրառում չի գտնում և վատ է սպառվում։ Ուստի արտադրության և աշխատանքի կառավարումն ու կազմակերպումը բարելավելու հետ մեկտեղ մենք պետք է հասնենք այն բանին, որ թողարկենք միայն արդիական, լայն պահանջարկ վայելող, տեխնիկական ու տնտեսական բարձր հատկանիշներ ունեցող արտադրանք։ ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը պլենումում խնդիր դրեց, որ ժողովրդական սպառման ապրանքների արտադրության և կենցաղային սպասարկումների ծավալների մեծացման հարցերն իրենց պատշաճ արտացոլումը գտնեն այդ ապրանքների արտադրության և հանրապետության բնակչության սպասարկումների համակարգի զարգացման՝ ներկայումս մշակվող կոմպլեքսային ծրագրերում։

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության աճի ծրագրի իրա-



կանացումը պահանջում է մինիստրությունների, միավորումների ու ձեռնարկությունների տնտեսական ղեկավարների և կուսակցական կազմակերպությունների քաղաքական ու կազմակերպչական աշխատանքի մակարդակի հետագա բարձրացում։ Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. դեկտեմբերյան պլենումում, այստեղ հաջողության բանալին կադրերի պատասխանատվության բարձրացումն է։ Շատ կարևոր նշանակություն ունեն կադրերի հանգամանալի ընտրությունը ըստ նրանց գործարար ու քաղաքական հատկանիշների, արտադրության իսկական կազմակերպիչների,ձեռներեց, ընդունակ աշխատողների դաստիարակումը։ Նրանց նկատմամբ հաստատված բարյացակամ վերաբերմունքը հարկավոր է է՛լ ավելի մեծ չափով զուգորդել բարձր խստապահանջության և սկզբունքայնության հետ։ Ղեկավար կադրերի պատրաստվածությամբ, նախաձեռնությամբ ու պատասխանատվությամբ, մարդկանց հետ աշխատելու ունակությամբ է շատ բանով պայմանավորված ժողովրդատնտեսական պլանների կատարումը, աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացումը։

Ներկայումս ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունները հիմնականում ղեկավարում են իրազեկ, ձեռնհաս, մասնագիտական պատրաստականություն ունեցող հմուտ կազմակերպիչներ և կոլեկտիվի դաստիարակներ։ Այդպիսի ղեկավարներից շատերը, կանգնելով արտադրության ղեկի մոտ, բանվորների և ինժեներատեխնիկական աշխատողների ջանքերը նպատակամղում են գլխավոր արտադրական խնդիրների լուծմանը, պլանային առաջադրանքների ապահովման գործում առկա թերությունների, այսպես կոչված՝ «նեղ տեղերի» բացահայտմանն ու վերացմանը, ձեռնարկության արտադրական-տնտեսական գործունեության բարելավմանը։

Երևանի դեկորատիվ գործվածքների ֆաբրիկան տարիներ շարունակ չէր կատարում պլանային առաջադրանքները, կոլեկտիվում անառողջ մթնոլորտ էր տիրում, նկատվում էին նեգատիվ երևույթներ։ Նոր դիրեկտոր Մ. Մկրտչյանի ակտիվ և հմուտ գործունեության շնորհիվ ֆաբրիկայում վիճակը շտկվում է։ 1983 թվականին կոլեկտիվն ապահովեց պետական պլանների կատարումը, բարելավվեցին որակական ցուցանիշները և ֆաբրիկայի ֆինանսական դրությունը։

Ձեռնարկության գործունեության բարելավման համար քիչ բան չի արել Կիրովականի մանվածքային ֆաբրիկայի դիրեկտոր Ա. Մեժլումյանը։ Իրականացված գործուն միջոցների շնորհիվ ֆաբրիկան հաղթահարեց տևականորեն ետ մնալը, դարձավ առաջավոր և այսօր, չնայած ձեռնարկության վերակառուցման հետ կապված դժվարություններին, նրա կոլեկտիվն աշխատում է չթուլացող տեմպերով և կատարում պլանային առաջադրանքները։

Մինչդեռ որոշ տնտեսական ղեկավարների անկարողության հետևանքով տուժում է ընդհանուր գործը։ Վերջին տարիներին Չարենցավանի կարի ֆաբրիկայում փոխվել է չորս դիրեկտոր, բայց դրանցից և ոչ մեկը չկարողացավ գլխավորել կոլեկտիվի աշխատանքը, այն նպատակամղել արտադրական ու տնտեսական կարևորագույն խնդիրների լուծմանը։

Կան նաև այնպիսի փաստեր, երբ պաշտոնից հանված այս կամ այն տնտեսավարը վերստին նշանակվում է ղեկավար աշխատանքի։ Այսպես, ՀՍՍՀ ժողովրդական վերահսկողության կոմիտեն զբաղեցրած պաշտոնից ազատեց Լենինականի Չկալովի անվան կարի արտադրամիավորման գլխավոր դիրեկտոր Խ. Ավագյանին, սակայն շատ չանցած նա նշանակվեց Մայիսյան ապըստամբության անվան բամբակագործվածքային արտադրության միավորման գործվածքային ֆաբրիկայի դիրեկտոր։

Պրակտիկան ցույց է տալիս, որ լավ ղեկավար լինելու համար ինստիտուտն ավարտելը կամ դասընթացներում վերապատրաստվելը դեռ քիչ է։ Ղեկավարը պետք է իր գիտելիքները հարստացնի մշտապես։ Արտադրական բոլոր օղակների ղեկավար կադրերի աշխատանքի ոճի անհրաժեշտ բաղադրամասերն են գործիմացությունը, ձեռներեցությունը, ձեռք բերվածի նկատմամբ քննադատական մոտեցումը, բարձր պատասխանատվությունը և պահանջկո-

տուրթյունը, առաջադրված խնդիրների լուծման համար կոլեկտիվի բոլոր ան-
դամների ուժերը մոբիլիզացնելու ունակությունը, նորի ձգտումը, համեստու-
թյունը, աշխատանքում և կենցաղում անձնական անբասիր վարքագիծը։
Միայն այդպիսի մարդիկ կարող են ղեկավարել կոլեկտիվը, ժամանակակից
արտադրությունը։

Սթափ կերպով գնահատելով կատարված աշխատանքը, քննադատաբար
վերլուծելով ձեռք բերվածը, կուսակցական կազմակերպությունները ժողո-
վրդական սպառման ապրանքներ արտադրող ձեռնարկությունների կոլեկ-
տիվների ուշադրությունը բևեռում են չլուծված հարցերի ու բացթողումների
վրա, մոբիլիզացնում բոլոր ուժերը՝ աշխատավորների պահանջմունքներն
առավել լրիվ բավարարելու համար։

Ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող կոլեկտիվները սխեղ-
ծագործական նոր եռանդով են աշխատում կուսակցության առաջադրանք-
ները անթերի կատարելու համար։ Վերջերս Աշխատանքային կարմիր դրոշի
շքանշանակիր «Մասիս» կոշիկի արտադրամիավորման կոլեկտիվը, ի թիվս
հանրապետության մի շարք այլ ձեռնարկությունների, սոցիալիստական բարձր
պարտավորություններ ստանձնեց՝ կատարելու և գերակատարելու տնտեսական
ու սոցիալական զարգացման 1984 թվականի պետական պլանը և ողջ հնգամ-
յակի առաջադրանքները, ապահովելու պլանից ավելի աշխատանքի արտադրո-
ղականության բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման՝ ՍՄԿԿ
Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի առաջադրանքների իրագործումը։ Նրանք
պարտավորվել են 1984 թվականին աշխատանքի արտադրողականությունը
արտապլանային կարգով բարձրացնել 1,5 տոկոսով, ինքնարժեքը լրացուցիչ
իջեցնել 0,6 տոկոսով, ստանալ 200 հազար ռուբլու արտապլանային շահույթ,
ապրանքային արտադրանքի թողարկման և իրացման տարեկան պլանը կա-
տարել դեկտեմբերի 26-ին, պլանից ավելի թողարկելով 2 միլիոն 800 հազար
ռուբլու արտադրանք։ Պետական որականիշով կոշիկի թողարկումը կհասցվի
64 տոկոսի, կտնտեսվի մեծ քանակությամբ հումք, էլեկտրաէներգիա և վա-
ռելանյութ։

Առաջավոր կոլեկտիվների այս հայրենանվեր նախաձեռնությունը լայնո-
րեն տարածվում է մյուս ձեռնարկություններում։ Դրանով իսկ մի նոր, առա-
վել բարձր մակարդակի կհասցվի մեր արդյունաբերության ողջ տեխնիկա-
տնտեսական գործունեությունը։ Տնտեսական ղեկավարների, կուսակցական
կազմակերպությունների, աշխատավորական բոլոր կոլեկտիվների առաջնա-
հերթ խնդիրը և պատվի գործը պետք է լինեն արտադրության ինտենսիվացման
և տնտեսավարման մակարդակի բարձրացումը, գիտատեխնիկական առաջըն-
թացի արագացումը, աշխատանքի արտադրողականության և որակի բարձրա-
ցումը, արտադրական պոտենցիալի, նյութական, աշխատանքային և ֆինան-
սական բոլոր ռեսուրսների առավել ռացիոնալ օգտագործումը։ Դա կուսակ-
ցության առաջադրանքների անթերի կատարման և ժողովրդի բարեկեցության
բարձրացման անհրաժեշտ նախապայմանն է։

---

# ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՕՐԵՆՍԴՐՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԿԱՐԳԱՊԱՀՈՒԹՅՈՒՆԸ

**Վ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
ՀԱՄԽ-ի քարտուղար

ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՇԻՆԱՐԱՐՈՒԹՅԱՆ բոլոր փուլերում աշխատանքային օրենսդրությունը էական դեր է խաղացել կոմունիստական կուսակցության և սովետական պետության առաջադրած խնդիրների լուծման գործում, մեծապես նպաստել սոցիալիստական արտադրահարաբերությունների զարգացմանը։

Աշխատանքային օրենսդրության սկզբնավորումն ու զարգացումը անխզելիորեն կապված են մեծ Լենինի անվան հետ, որը չէր հանդուրժում առանձին ղեկավարների կողմից սովետական իշխանության օրենքները, որոշումները և կարգադրությունները չկատարելը։ Վ. Ի. Լենինը հատկապես շեշտում էր, որ եթե մենք կարգապահություն ենք սովորեցնում բանվորներին և գյուղացիներին, ապա պարտավոր ենք այն սկսել հենց մեզանից։

Քաղաքական և սոցիալական մեծ նշանակություն ունեցող իրադարձություն էր 1970 թ. ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից ՍՍՀ Միության և միութենական հանրապետությունների աշխատանքային օրենսդրության հիմունքների ընդունումը։ Մեր հանրապետության օրենսդրության զարգացման գործում խոշոր քայլ էր 1972 թ. հանրապետության Գերագույն սովետի կողմից Հայկական ՍՍՀ աշխատանքային օրենսգրքի ընդունումը, որը կարգավորում է բանվորների ու ծառայողների աշխատանքային հարաբերությունները, նպաստում աշխատանքի արտադրողականության աճին և հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը։

Հանրապետության արհեստակցական միությունները, մինիստրություններն ու գերատեսչությունները շատ բան են արել տնտեսական հարաբերություններում օրինականությունն ամրապնդելու համար։ ՀԱՄԽ-ը, ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեները, սկզբնական կազմակերպություններն ու նրանց կոմիտեները ուժեղացրել են հսկողությունն ու վերահսկողությունը աշխատանքային օրենսդրության ճշգրիտ կիրառման և կարգապահության ամրապնդման նկատմամբ, բարելավել բանվորների ու ծառայողների իրավունքների ու երաշխիքների խախտումները կանխելու և վերացնելու գործը։

Այժմ կուսակցական, սովետական, արհմիութենական, տնտեսական մարմինների, բոլոր աշխատանքային կոլեկտիվների ուշադրության կենտրոնում են ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. նոյեմբերյան և 1983 թ. հունիսյան ու դեկտեմբերյան պլենումների որոշումներով առաջադրված կենսական նշանակության խնդիրները։ Այս փաստաթղթերում մեծ ուշադրություն է նվիրված սոցիալիստական օրինականության պահպանման հարցերին։ Սովետական մարդու, նրա աշխատանքի և կենցաղի պայմանների, հոգևոր զարգացման նկատմամբ հոգատարությունը կուսակցության կարևորագույն խնդիրներից է։

Սոցիալիստական օրինականության ամրապնդման նպատակով իրակա-

դաստիարակության գործում շեշտը դնել աշխատանքային կարգապահության խախտումների դեմ պայքարի կազմակերպման վրա։ Մենք պարտավոր ենք կարգազանցներին դաստիարակել պահանջկոտության բարձրացման միջոցով։ Վերջերս «Իզվեստիա» թերթում Դոնի Ռոստովից մի բանվոր այսպիսի հարց էր բարձրացրել. «Անկարգապահների դեմ պետք է պայքարել, դա անհրաժեշտ է, բայց եթե կարգազանցին հեռացնենք աշխատանքից, ապա նա ինչպե՞ս պետք է ապրի, չէ՞ որ նա պետք է պահի իր ընտանիքը. ուրեմն՝ մեզ մոտ ավելացավ ևս մեկ պորտաբույծ»։ Հարցադրումը ճիշտ է։ Չէ՞ որ աշխատանքից ազատվածի փոխարեն պետք է վերցնել նոր մարդու և նրան նորից սովորեցնել այդ մասնագիտությունը։ Դրա հետևանքով, ինչ խոսք, իջնում է արտադրողականությունը։ Բացի այդ, կարգապահությունը խախտողն էլ, վերջապես, ինչ-որ մի տեղ պե՞տք է տեղավորվի աշխատանքի։

Ցավոք, մի շարք ղեկավարներ մտածում են այսպես. ինչի՞ս է պետք այս գլխացավանքը, թող մյուսները տանջվեն նման աշխատողների ձեռքին։ Մինչդեռ մենք պարտավոր ենք հարցին մոտենալ պետական տեսանկյունից։ Արդյոք հանուն գործի չարժե՞ մի քիչ չարչարվել նման մարդկանց հետ։ Եվ այստեղ է, որ իրենց ծանրակշիռ խոսքը պետք է ասեն արհմիութենական կազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները, ընկերական դատարանները։ Վերջիններս կոչված են ակտիվորեն նպաստելու աշխատավորներին սոցիալիստական սեփականության նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի, սոցիալիստական համակեցության կանոնները պահպանելու ոգով դաստիարակելու գործին։ Հանրապետության ձեռնարկություններում, կազմակերպություններում, հիմնարկություններում ներկայումս գործում են 3.400-ից ավելի ընկերական դատարաններ, որոնց ճնշող մեծամասնության գործելակերպը կարգապահության ամրապնդման ասպարեզում տալիս է շոշափելի արդյունք։ Լավ է գործում, օրինակ, Թալինի շրջանի Արտենի սովխոզ-գործարանի ընկերական դատարանը, որի նախագահն է բրիգադավար, Հայրենական մեծ պատերազմի վետերան Գ. Աբրահամյանը։

Արդյոք բոլոր ընկերական դատարաննե՞րն են գտնվում իրենց կոչման բարձրության վրա։ Ճշմարտությունը պահանջում է ասել, որ դրանց մի մասը ստեղծման օրից մատնվել է անգործության։ ՍՍՀՄ քիմիական արդյունաբերության մինիստրության շինարարական-նորոգման № 5 մոնտաժային վարչությունում աշխատում են 420-ից ավելի բանվորներ ու ծառայողներ։ Մեկ տարում նրանցից մոտ 60-ը ենթարկվել է կարգապահական տույժերի, բայց և ոչ մեկի գործով ընկերական դատարանը չի զբաղվել։ Երքաղսովետի գործկոմի առբաժնի պրոֆիլակտիկ ախտահանման բաժնում աշխատում է հազարից ավելի մարդ։ Մեկ տարում նրանցից 14-ը ադմինիստրացիայի նախաձեռնությամբ ազատվել է աշխատանքից, իսկ 103-ը՝ ենթարկվել կարգապահական տույժի։ Միայն 1982 թ. հունվարի 27-ի հրամանով միանգամից 14 մարդ ստացել են տարբեր տույժեր։ Արժեր, երևի, որ նրանց մի մասի հարցը հասարակական քննարման առարկա դառնար, սակայն, որքան էլ զարմանալի է, ընկերական դատարանը և ոչ մեկի հարցով չի զբաղվել։ Մեզ անհրաժեշտ է այս գործում բարձրացնել հասարակական կազմակերպությունների դերը, լավագույն ձևով օգտագործել կոլեկտիվ ներգործության միջոցները, կարգապահությունը խախտողների վարքագծի կոլեկտիվ քննարկման ուժը։

Խոսելով օրինականության ամրապնդման մասին, չի կարելի չանդրադառնալ բանվորների ու ծառայողների աշխատանքային գրքույկների վարման կարգին առնչվող հարցերին։ Դա, ինչպես առաջին հայացքից կարող է թվալ, հասարակ հարց չէ։ Այն շոշափում է արտոնյալ պայմաններով կենսաթոշակի անցնելու, անընդհատ աշխատանքային ստաժի համար կենսաթոշակի տոկոսային հավելման, ժամանակավոր անաշխատունակության նպաստ ստանալու և այլ իրավունքներ։

Հանրապետությունում շատ բան է արված աշխատանքային գրքույկների վարման գործը կարգավորելու ասպարեզում։ Այդ կապակցությամբ ստուգվել



են շատ ձեռնարկություններ, նույնիսկ կոմպլեքսային ձևով՝ մի քանի շրջաններ։ Ստուգման ընթացքում ի հայտ են բերվել շատ թերություններ, տրվել են հանձնարարականներ, տեղերում կազմակերպվել են օգնություն այդ գործում եղած վրիպումները վերացնելու համար։

Վերջին ժամանակներս կուսակցությունը և կառավարությունը մի շարք որոշումներ են ընդունել աշխատող կանանց աշխատանքային արտոնությունների վերաբերյալ։ Արդյունաբերության մեջ կանանց զբաղվածությունը կազմում է պատկառելի տոկոս։ Մեծ հոգատարություն է ցուցաբերվում մայրության և մանկության նկատմամբ։ Աշխատանքի պաշտպանության կոմպլեքսային պլանների և համաձայնագրերի կատարման շնորհիվ 23.597 կանանց աշխատանքի պայմանները համապատասխանեցվել են սանիտարական նորմաների պահանջներին, ծանր աշխատանքներից ազատվել և թեթև արտադրություն են տեղափոխվել 1.620 կին, վտանգավոր պայմաններ ունեցող արտադրություններից՝ 1.284, գիշերային հերթափոխություններից՝ 212 կին։

Կոլեկտիվ պայմանագրերի կազմման և կատարման ճշտությունը ստուգելիս միաժամանակ պարզվեց, որ արդյունաբերության մի շարք ճյուղերում ինչպես ադմինիստրացիաները, այնպես էլ արհմիության կոմիտեները պատշաճ ուշադրություն չեն նվիրում այնպիսի կարևոր հարցերին, ինչպիսիք են կանանց աշխատանքի, կենցաղի, հանգստի պայմանների բարելավումը և երեխաների դաստիարակության գործում օգնության կազմակերպումը։ Անհրաժեշտ է փոքրահասակ երեխաներ ունեցող կանանց համար ստեղծել աշխատանքի բարենպաստ պայմաններ, հնարավորություն տալ նրանց՝ աշխատելու ոչ լրիվ բանվորական օր կամ շաբաթ։

ԱՇԽԱՏԱՆՔԱՅԻՆ ՕՐԵՆՍԴՐՈՒԹՅԱՆ ԿԻՐԱՌՄԱՆ վիճակի մասին կարելի է գաղափար կազմել նաև աշխատավորներից ստացվող գանգատներով ու դիմումներով, որոնց քանակը չի նվազում։

Ինչպես ՀԱՄԽ-ի բաժինները, նույնպես և արհմիությունների հանրապետական կոմիտեները ժամանակին պատասխանում են ստացված գրավոր և բանավոր դիմումներին ու բողոքներին։ Քաղաքացիների գրավոր և բանավոր դիմումների քննարկման հետ առնչվող հարցերը հիմնականում ճիշտ են լուծվում։ Անցյալ տարի ՀԱՄԽ-ում ստացված 3.737 դիմումներից 2.107-ը կամ ընդհանուր թվի 56,4 տոկոսը, եղել են հսկողության տակ։ Դիմումների մեծ մասը ստուգվում է տեղերում։

Լավ պրակտիկա են դարձել հանրապետության տարբեր շրջաններում ՀԱՄԽ-ի, ճյուղային արհմիությունների հանրապետական կոմիտեների կազմակերպած սեմինար-խորհրդակցությունների անցկացումը, «Բաց դռների օրերը», հանդիպումները առանձին ձեռնարկությունների, կազմակերպությունների աշխատողների հետ, պատասխանները նրանց հուզող հարցերին։ Բարձր մակարդակով անցան ՀԱՄԽ-ի ղեկավարության և բաժինների պատասխանատու աշխատողների հանդիպումները տնտեսական, արհմիութենական ակտիվի հետ Դիլիջան, Լենինական, Ղափան, Կիրովական քաղաքներում, բազմաթիվ այլ շրջաններում։ Լավ արդյունք տվեցին գյուղատնտեսության աշխատողների արհմիության հանրապետական կոմիտեի կազմակերպած սեմինար-խորհրդակցությունները, «Բաց դռների օր» միջոցառումը Սիսիանի, Եղեգնաձորի, Ապարանի, Ամասիայի, Շամշադինի, Աբովյանի, Մասիսի և այլ շրջաններում։ Նույնպիսի միջոցառումներ են անցկացրել ՀԱՄԽ-ի բաժինները, քիմիական և նավթաքիմիական, սննդի արդյունաբերության, պետական հիմնարկությունների աշխատողների արհմիությունների հանրապետական կոմիտեները, մի շարք քաղաքների և շրջանների արհմիութենական կոմիտեներ։

Գտնում ենք, որ շրջաններում, առանձին կազմակերպություններում և ձեռնարկություններում հաճախակի անցկացվող հարց ու պատասխանի, աշխատանքային օրենսդրության հարցերին նվիրված այս տիպի միջոցառումների

շնորհիվ դրականորեն են լուծվում աշխատավորությանը հուզող հարցերը։ Արդյունավետ են հատկապես ՀԱՄԽ-ի՝ արհմիութենական կադրերին և ակտիվին աշխատանքային օրենսդրության հարցերին մոտիկից ծանոթացնելու նպատակով հրավիրած դասընթացները։

Մեր կարծիքով, հասունացել է արդարադատության մինիստրության մասնակցությամբ աշխատանքային օրենսդրության հարցերին վերաբերող հանրամատչելի գրքույկների հրատարակման խնդիրը։ Ի դեպ, աշխատանքային օրենսդրության պահպանման նկատմամբ հսկողության և վերահսկողության իրականացման գործում ՀԱՄԽ-ն սերտ համագործակցության մեջ է հանրապետության արդարադատության մինիստրության, դատախազության, ժողովրդական վերահսկողության կոմիտեի հետ։ Հանրապետության արդարադատության մինիստրության հետ միասին ուսումնասիրել և քննարկել ենք աշխատանքային օրենսդրության պահպանման և աշխատանքային կարգապահության ամրապնդման վիճակը «Հայէլեկտրալույս» արտադրամիավորումում, ժողովրդական վերահսկողության հանրապետական կոմիտեի հետ՝ աշխատանքային գրքույկների վարման վիճակը հանրապետության առողջապահական հիմնարկություններում։

Սովետական Հայաստանի արհմիությունները, կուսակցական կազմակերպությունների ամենօրյա օգնությամբ ու ղեկավարությամբ, կձեռնարկեն անհրաժեշտ միջոցներ՝ դաստիարակչական աշխատանքի հետագա ծավալմամբ ապահովելու բանվոր-ծառայողների և կոլտնտեսականների ակտիվ մասնակցությունը հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացմանը։ Այսօր արհմիութենական կազմակերպությունների համար պայքարի ծրագիր է դարձել արտապլանային կարգով աշխատանքի արտադրողականությունը մեկ տոկոսով բարձրացնելու և արտադրանքի ինքնարժեքը լրացուցիչ 0,5 տոկոսով իջեցնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. դեկտեմբերյան պլենումի առաջադրած խնդիրը։ Աշխատավորական կոլեկտիվները դրան կհասնեն աշխատանքային օրենսդրության պահանջները անշեղորեն կատարելու, ամենուրեք կարգապահությունն ամրապնդելու միջոցով։

---

# ԲԱՐԵԼԱՎԵԼ ՍԱՐՔԱՎՈՐՈՒՄՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ

**Վ. ՍԱՖՅԱՆ**

ԱՐԴԻ ՊԱՅՄԱՆՆԵՐՈՒՄ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ինտենսիվացումն իրագործվում է միմյանց հետ անմիջականորեն փոխազդեցության մեջ գտնվող երկու ուղիով. տեխնիկական առաջընթացի հասումների ներդրման տեմպերի արագացմամբ և արտադրական բոլոր հնարավորությունների ու առաջին հերթին հիմնական արտադրաֆոնդերի օգտագործման բարելավման միջոցով։

Արտադրության մեջ ներդրվում են մեծ կարողության և թանկարժեք մեքենաներ ու սարքավորումներ, մինչդեռ միշտ չէ, որ դրանց քանակական աճին ու կատարելագործմանը զուգընթաց ապահովվում է օգտագործման պատշաճ մակարդակը։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1983 թվականի դեկտեմբերյան պլենումը կարևորեց երկրում կազմակերպչական ու տեխնիկական նոր հիմքի վրա սարքավորումների հերթափոխայնության բարձրացման անհրաժեշտությունը, քանի որ «այստեղ առկա են արտադրության աճի ու արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման հսկայական ռեզերվները»։ Ուսումնասիրությունները հաստատում են, որ սարքավորումների օգտագործումը բարելավելու զգալի հնարավորություններ կան մեր հանրապետության հաստոցագործիքաշինական ձեռնարկություններում։ Հետազոտման տվյալներով 1982 թ. հիմնական արտադրության մեջ տարբեր պատճառներով մեկ օրում բնավ չգործած (շուրջօրյա պարապուրդներ) սարքավորումները կազմել են հիմնական արտադրության մետաղամշակման բոլոր սարքավորումների 11 տոկոսը, ընդ որում առավել բարձր տոկոս են կազմում դարբնոցամամլիչային (15,6) և էլեկտրաեռակցման (20) մեքենաների շուրջօրյա պարապուրդները։ Օրվա ընթացքում ամենևին չաշխատած մետաղահատ հաստոցները կազմել են հիմնական արտադրության բոլոր մետաղահատ հաստոցների* 11 տոկոսը, այդ թվում թվային ծրագրային կառավարմամբ (ԹԾԿ) հաստոցները՝ մեկ օրվա ընթացքում բոլորովին չգործած հաստոցների 15,2 տոկոսը։ ԹԾԿ հաստոցների օգտագործման ցածր մակարդակն ավելի ակնհայտ դարձնելու համար նշենք, որ օրվա ընթացքում բնավ չբանած մետաղահատ հաստոցների 22,3 տոկոսը գտնվել է ռեզերվում կամ պլանով նախատեսված կապիտալ նորոգման մեջ, իսկ օրվա ընթացքում բոլորովին չգործած ԹԾԿ հաստոցների թվում չի եղել նշված պատճառներով չաշխատած և ոչ մի հաստոց։ Ուստի շուրջօրյա պարապուրդների առումով ԹԾԿ հաստոցների օգտագործման մակարդակը հիմնական արտադրության բոլոր մետաղահատ հաստոցների օգտագործման մակարդակից ցածր է եղել (4,2 տոկոս), այն դեպքում, երբ ի թիվս հաստոցների որոշ այլ տեսակների (ունիկալ, դեֆիցիտային և այլն)

---

* Սարքավորումների օգտագործման վերաբերյալ հաշվարկները կատարված են հաստոցագործիքաշինական արդյունաբերության մեջ 1980 թվականի մայիսի 15-ին և 1982 թվականի մայիսի 19-ին ՀՍՍՀ կենտվիճվարչության անցկացրած միաժամանակյա հետազոտման տվյալների համաձայն։

ԹԾԿ հաստոցների համար, հաշվի առնելով արտադրության հարուցած պահանջները, նախատեսվում է օգտագործման ավելի բարձր մակարդակ։

Տեխնիկական առաջընթացի շնորհիվ հաստոցագործիքաշինական սարքավորումների պարկում արագ տեմպերով աճում է որակական բարձր հատկանիշներ ունեցող նոր, այդ թվում ԹԾԿ հաստոցների քանակը։ Ընթացիկ հնգամյակի վերջում Միության ողջ հաստոցագործիքաշինական արդյունաբերության հաստոցային պարկում ԹԾԿ հաստոցների տեսակարար կշիռը կհասնի 10 տոկոսի։

Հանրապետության հաստոցագործիքաշինական ձեռնարկություններում սարքավորումների օգտագործման ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ սարքավորումների պարկում պրոգրեսիվ տեսակների տեսակարար կշռի աճի շնորհիվ դրանց արտադրական հնարավորությունների առավել լրիվ օգտագործումը մեծապես խթանում է արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Ուստի այդ հնարավորությունների իրացման համար անհրաժեշտ է հանգամանորեն ուսումնասիրել հիմնական և օժանդակ արտադրությունների սարքավորումների, առանձին տեխնոլոգիական խմբերի օգտագործման մակարդակները բնորոշող ցուցանիշները (հերթափոխայնության գործակից, շուրջօրյա, շուրջհերթափոխային, ներհերթափոխային պարապուրդներ), ինչպես նաև սարքավորումների պարկի կառուցվածքի մեջ պրոգրեսիվ տեսակների տեսակարար կշռի աճի ու դրանց կիրառման մակարդակի փոփոխության ազդեցությունը ֆոնդահատույցի ցուցանիշի մեծության վրա։

Հանրապետության հաստոցագործիքաշինական ձեռնարկություններում 1982 թ. մայիսին կատարված միաժամանակյա հետազոտման արդյունքները համեմատելով 1980 թվականի հետազոտման տվյալների հետ՝ տեսնում ենք, որ այդ տարիների ընթացքում նորոգման ժամկետների կրճատման, հումքի, նյութերի, գործիքների մատակարարման բարելավման, ավելորդ հարմարանքների քանակի նվազեցման, ինչպես նաև աշխատանքային կարգապահության ամրապնդման շնորհիվ ձեռնարկությունների մեծ մասում սարքավորումների հերթափոխայնության գործակիցները բարձրացել են։ Այսպես, Երևանի «Հիդրոհաղորդակ» գործարանում այդ աճը կազմել է 19,5 տոկոս, Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանում՝ 15, Երևանի Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում՝ 10, Լենինականի հղկող հաստոցների գործարանում՝ 7,2 տոկոս։ Սակայն ճյուղի որոշ ձեռնարկություններում նշված գործակիցները նվազել են։ Լենինականի դարբնոցամամլիչային սարքավորումների գործարանի մետաղամշակման սարքավորումների հերթափոխայնության գործակիցը 1982 թ. 14,4 տոկոսով ցածր էր 1980 թ. մակարդակից, Չարենցավանի հաստոցաշինական գործարանինը՝ 12,4 տոկոսով, Երևանի տեխնոլոգիական սարքերի գործարանինը՝ 9, Չարենցավանի գործիքաշինական գործարանինը՝ 3 տոկոսով։ Եթե նկատի ունենանք, որ այդ գործարանների մետաղամշակման սարքավորումները կազմում են հանրապետության հաստոցագործիքաշինական արդյունաբերության մետաղամշակման բոլոր սարքավորումների 32 տոկոսը, իսկ ԹԾԿ և ունիկալ հաստոցները՝ 47,2 տոկոսը, ապա պարզ կդառնա այդ ձեռնարկություններում արտադրասարքավորումների, հատկապես ԹԾԿ հաստոցների օգտագործման բարելավման կարևորությունը։ Դա, բնականաբար, ազդել է հանրապետության հաստոցագործիքաշինական արտադրության մետաղամշակման սարքավորումների հերթափոխայնության գործակցի մակարդակի վրա, որն այդ տարիների ընթացքում աճել է ընդամենը 1,6 տոկոսով, իսկ հիմնական արտադրության մեջ՝ 3,2 տոկոսով։

Օժանդակ արտադրության մեջ զբաղված մետաղամշակման սարքավորումների հերթափոխայնության գործակիցն այդ ժամանակամիջոցում նվազել է 1,8 տոկոսով, որի հետևանքով ավելի է մեծացել հիմնական ու օժանդակ արտադրությունների համապատասխան գործակիցների մակարդակների տարբերությունը։ Օժանդակ արտադրության սարքավորումների հերթափոխայնության գործակիցը 1980 թվականին հիմնական արտադրության տվյալ ցուցանիշի մակարդակից ցածր էր 11, իսկ 1982-ին՝ 16 տոկոսով։



Ներկայումս օժանդակ արտադրության սարքավորումները հաստոցագործիքաշինական ձեռնարկությունների սարքավորումների պարկի նշանակալից մասն են կազմում (1980-ին՝ 20 տոկոս, իսկ 1982-ին՝ 25)։ Միաժամանակ բարձրացել է դրանց տեխնիկական մակարդակը, իսկ որոշ դեպքերում սարքավորումների բաժանումը ըստ հիմնական և օժանդակ արտադրության նույնիսկ պայմանական բնույթ ունի։ Այսինքն, սարքավորումներն այս կամ այն արտադրությանն են վերագրվում ոչ թե հաշվի առնելով տվյալ ձեռնարկության հիմնական արտադրանքի թողարկման մեջ դրանց ունեցած մասնակցության բնույթը, այլ ելնելով այն բանից, թե տվյալ արտադրամասի (տեղամասի) արտադրանքը սեփական սպառման համա՞ր է, թե՞ առաքվում է այլ ձեռնարկություններ։ Առաջին դեպքում դրանք հաշվառվում են օժանդակ արտադրության, իսկ երկրորդ դեպքում՝ հիմնական արտադրության կազմում։

Հաշվարկները ցույց են տալիս, որ եթե հիմնական և օժանդակ արտադրությունների սարքավորումների հերթափոխայնության գործակիցների 1980 թ. հարաբերակցության մակարդակը պահպանվեր 1982 թվականին, ապա ամբողջ ճյուղում մետաղամշակման բոլոր սարքավորումների հերթափոխայնության գործակիցը կբարձրանար 5 տոկոսով։ Հերթափոխայնության գործակցի այդպիսի բարձրացումը համարժեք է դրանց ընդհանուր քանակի 14 տոկոս ավելացմանը։ Դրա շնորհիվ հանրապետության հաստոցագործիքաշինական արդյունաբերության մեջ ֆոնդահատույցի ցուցանիշը 1982 թվականին կբարձրանար 5,1 տոկոսով։

Հիմնական արտադրության սարքավորումների օգտագործման ցուցանիշների ուսումնասիրությունը վկայում է, որ դեռևս մեծ տարբերություն կա ինչպես առանձին ձեռնարկությունների, այնպես և այդ սարքավորումների տեխնոլոգիական խմբերի ու դրանց առանձին տեսակների օգտագործման մակարդակների միջև։ Այսպես, եթե Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի մետաղամշակման սարքավորումների հերթափոխայնության գործակիցը հանրապետության հաստոցագործիքաշինության համապատասխան ցուցանիշի միջին մակարդակից բարձր է 18 տոկոսով, «Հիդրոհաղորդակ» գործարանինը՝ 14, Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանինը՝ 11 տոկոսով, ապա Երևանի ֆրեզերային հաստոցների, տեխնոլոգիական սարքերի և Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարաններում այդ ցուցանիշը ցածր է 19—22 տոկոսով։ Դա նշանակում է, որ երկհերթափոխային ռեժիմի պայմաններում մետաղամշակման սարքավորումները նշված ձեռնարկություններում գործում են 8 ժամ։

Արտադրական պրակտիկայում սարքավորումների որոշ մասը գտնվում է պլանային նորոգման ու արդիականացման պրոցեսում, սակայն դրանց քանակը հետազոտման ժամանակամիջոցում տեղակայված սարքավորումների (ըստ որոնց հաշվարկվում է հերթափոխայնության գործակիցը) կազմից չի հանվում։ Տեղակայվածների կազմում են նաև այսպես կոչված «պարբերաբար գործող» սարքավորումները, որոնք առանձնահատուկ արտադրական ֆունկցիայի պատճառով սիստեմատիկաբար չեն օգտագործվում բոլոր հերթափոխների ընթացքում։

1982 թ. տվյալների համաձայն, հիմնական արտադրության մետաղամշակման սարքավորումների կազմում պլանով նախատեսված նորոգման ու արդիականացման մեջ են գտնվել 2,4 տոկոսը, ռեզերվում՝ 0,1, իսկ պարբերաբար գործել են 6,5 տոկոսը, որոնց հերթափոխայնության գործակիցը հիմնական արտադրության մեջ գտնվող բոլոր սարքավորումների հերթափոխայնության գործակցի մակարդակից ցածր էր ընդամենը 10,8 տոկոսով։ Սարքավորումների հերթափոխայնության գործակցի ցածր մակարդակը հիմնականում դրանց տեխնոլոգիական խմբերի արտադրական կարողությունների անհամամասնության, նորոգման, արդիականացման աշխատանքների ապակենտրոնացվածության, անհրաժեշտ որոշ մասնագիտությունների կադրերով անբավարար ապահովվածության, հումքի, նյութերի, գործիքների մատակարարման գործում առկա թերությունների հետևանք է։

Մետաղամշակման սարքավորումների տեխնոլոգիական խմբերի մեջ հեր-

թափոխայնության գործակիցը համեմատաբար բարձր է ձուլման արտադրությունում։ Դարբնոցամամլիչային մեքենաների հերթափոխայնության գործակիցը միջինից ցածր է 5,6, իսկ էլեկտրաեռակցման մեքենաներինը՝ 12 տոկոսով։

Ձուլման սարքավորումների հերթափոխայնության գործակցի բարձր մակարդակը պայմանավորված է դրանց նշանակալից մասի եռահերթափոխ աշխատանքի ռեժիմով, քանի որ երկհերթափոխային ռեժիմով աշխատող սարքավորումների համար նորմադրական հերթափոխայնության գործակիցը կազմում է 1,89, իսկ եռահերթափոխային ռեժիմի դեպքում՝ 2,61 (տե՛ս Останенко В. В., Сенчангов В. К., Улучшение использования оборудования, М , 1983 г., стр. 10)։

Մետաղահատ հաստոցների հերթափոխայնության գործակիցը գրեթե համընկնում է (ցածր է 0,8 տոկոսով) մետաղամշակման բոլոր սարքավորումների այդ ցուցանիշի միջին մակարդակին։ Դա պայմանավորված է այն բանով, որ մետաղամշակման սարքավորումների մեջ բարձր է մետաղահատ հաստոցների տեսակարար կշիռը։ Վերջիններիս արտադրահնարավորությունների բացահայտման ու օգտագործման, ինչպես նաև արտադրապրոցեսում այդ հաստոցների առանձին տեխնոլոգիական խմբերի արտադրական կարողությունների միջև համամասնությունների հաստատման համար անհրաժեշտ է ուսումնասիրել հաստոցների առանձին տեսակների հերթափոխայնության գործակիցները։ Հիմնական արտադրության մետաղահատ հաստոցների կազմում համեմատաբար բարձր է ագրեգատային հաստոցների հերթափոխայնության գործակիցը, որն այդ արտադրության մետաղահատ բոլոր հաստոցների միջին գործակցից բարձր է 24,2 տոկոսով։ Խառատային ավտոմատների ու կիսաավտոմատների հերթափոխայնության գործակիցը միջին մակարդակից բարձր է 12 տոկոսով, խառատային խմբի մյուս հաստոցներինը՝ 6,3, իսկ շաղափման հաստոցներինը ցածր է 6,2 տոկոսով, ներտաշ հաստոցներինը՝ 4, հղկող հաստոցներինը՝ 2,3 տոկոսով։

Հաշվարկները վկայում են, որ հերթափոխայնության համեմատաբար ցածր գործակից ունեցող հաստոցների խմբերի օգտագործման մակարդակի բարձրացումը մինչև տվյալ ձեռնարկության միջին մակարդակին, հնարավորություն կընձեռի հաստոցագործիքաշինական արդյունաբերության հիմնական արտադրության մետաղահատ հաստոցների հերթափոխայնության գործակիցն ավելացնել 5 տոկոսով։ Սարքավորումների մյուս տեխնոլոգիական խմբերի և օժանդակ արտադրության հաստոցների օգտագործման բարելավման միջոցով ճյուղի մետաղամշակման սարքավորումների հերթափոխայնության գործակիցը կարելի է բարձրացնել առնվազն 10 տոկոսով։ Նույն չափով էլ կաճի ֆոնդահատույցի ցուցանիշը։

Արտադրապոտենցիալի աճին ու կատարելագործմանը զուգընթաց փոփոխվում է հերթափոխայնության գործակցի ամեն մի տոկոսի տնտեսական նշանակությունը։ Հանրապետության հաստոցագործիքաշինական արդյունաբերության հիմնական արտադրաֆոնդերը, 1970 թվականի համեմատ, 1975-ին աճել են 1,46 անգամ, 1980 թ.՝ 2,36, 1982 թ.՝ 2, 87 անգամ։ Այդ տարիների ընթացքում բարելավվել է սարքավորումների պարկի տեխնոլոգիական կառուցվածքը, արտադրության մեջ ներդրվել են սարքավորումների նոր, առավել պրոգրեսիվ տեսակներ։ Բավական է նշել, որ 1975 թվականի համեմատ 1982 թ. մետաղահատ հաստոցներն ավելացել են մոտ 1,5 անգամ, իսկ ԹԾԿ հաստոցները՝ 4,5 անգամ։

Հիմնական արտադրաֆոնդերի քանակական աճի ու կատարելագործման հետևանքով ավելացել է հերթափոխայնության գործակցի ամեն մի տոկոս աճին ընկնող արտադրանքի ծավալը, որը, 1970 թվականի համեմատ, 1975 թ. ավելացել է 1,7 անգամ, 1980 թ.՝ 2,73, 1982 թ.՝ 3,17 անգամ։ Ուստի այժմ հերթափոխայնության գործակցի բարձրացումը, արտադրապոտենցիալի, հատկապես նոր տեխնիկայի ներդրման առումով, կարևոր տնտեսական նշանակություն ունի։

Տեխնիկական առաջընթացի իրականացումը ենթադրում է նոր սարքավո-



րումների միավորի արտադրողականության մեծացում, բայց սովորական սարքավորումների հետ համեմատած բարձրանում է և դրանց միավորի արժեքը։ Այսպես, սովորական հաստոցների փոխարեն ԹԾԿ հաստոցների կիրառումը հնարավորություն է ընձեռում խառատային և ֆրեզերային հաստոցների արտադրողականությունը բարձրացնել 2—8, ներտաշ և շաղափման հաստոցներինը՝ 2—4 անգամ։

Սակայն ժամանակակից ԹԾԿ հաստոցները միջին հաշվով 3—4 անգամ ավելի թանկ են սովորական հաստոցներից, ուստի հասարակականորեն անհրաժեշտ ժամկետներում այս հաստոցների արժեքի փոխհատուցումը հնարավոր է ապահովել միայն դրանց արտադրակարողություններն ու աշխատաժամանակի ֆոնդը սահմանված մակարդակով օգտագործելու դեպքում։

Նոր տեխնիկան իր համար սահմանված արտադրողականությունը կարող է ապահովել, երբ այն աշխատում է առնվազն երկու հերթափոխների ընթացքում, լրիվ ռեժիմային կարողությամբ, իսկ ունիկալ, թանկարժեք, բարձր արտադրողական ու դեֆիցիտ սարքավորումների համար սահմանվում է աշխատանքի երեք հերթափոխային ռեժիմ։ Մինչդեռ դրանք դեռևս պահանջվող արտադրողականությամբ չեն օգտագործվում։ Չնայած 1980 թ. համեմատ ԹԾԿ հաստոցների հերթափոխայնության գործակիցը 1982 թվականին աճել է 12 տոկոսով, այնուամենայնիվ այն 2,3 տոկոսով ցածր է հիմնական արտադրության բոլոր մետաղահատ հաստոցների հերթափոխայնության գործակցի մակարդակից։ Դա նշանակում է, որ հիմնական արտադրության մեջ ԹԾԿ հաստոցները միջին հաշվով օրական աշխատում են 10—11 ժամ։

Պահանջվող մակարդակով չեն օգտագործվում նաև ծանր և ունիկալ հաստոցների հնարավորությունները, որոնց հերթափոխայնության գործակիցը հիմնական արտադրության բոլոր մետաղահատ հաստոցների այդ ցուցանիշից ցածր է 8 տոկոսով։ Եթե նկատի ունենանք, որ հաստոցների նշված տեսակների նախագծման հաշվարկներն արվում են՝ ելնելով դրանց աշխատանքի երեք հերթափոխային ռեժիմի պայմաններից, ապա այդ հաստոցները օրվա ընթացքում միջին հաշվով պետք է աշխատեն 18—20 ժամ։

ՀԿԿ Կենտկոմի 1984 թ. հունվարյան պլենումում ընկ. Կ. Ս. Դեմիրճյանը նշեց, որ հանրապետության մեքենաշինության, այդ թվում հաստոցաշինության մեջ սարքավորումների հերթափոխայնության գործակցի բարձրացման գործում լուրջ թերություններ կան. դեռևս «ցածր է թվածրագրային կառավարմամբ հաստոցների, ավտոմատացված գծերի հերթափոխայնության գործակիցը»։ Սարքավորումների այս կարևորագույն տեսակների արտադրական կարողությունները լիովին չօգտագործելու պատճառով դրանք արտադրության ինտենսիվացման գործոնի իրենց դերը անհրաժեշտ մակարդակով չեն կատարում։

Հանրապետության հաստոցագործիքաշինական արդյունաբերության ձեռնարկություններում հաստոցների առավել կատարյալ տեսակների տեսակարար կշիռների ու ֆոնդահատույցի փոփոխության կապի ուսումնասիրությունը ցույց է տալիս, թե հաստոցների այդ տեսակների անբավարար օգտագործումն ինչպես է անդրադառնում հիմնական արտադրաֆոնդերի արդյունավետության մակարդակի վրա։

Այսպես, 1982 թ. Զարենցավանի հաստոցաշինական գործարանի նորագույն հաստոցների տեսակարար կշիռը հանրապետության հաստոցաշինության տվյալ ցուցանիշի միջին մակարդակից բարձր էր 42 տոկոսով, մինչդեռ ֆոնդահատույցը ցածր էր 24 տոկոսով։ Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում այդ ցուցանիշները համապատասխանաբար կազմել են 40 և 21 տոկոս, ֆրեզերային հաստոցների գործարանում՝ 20 և 5 տոկոս։ Ուրեմն այդ ձեռնարկություններում, որտեղ համեմատաբար բարձր է նորագույն հաստոցների տեսակարար կշիռը, դրանց անբավարար օգտագործումը բացասաբար է անդրադարձել ֆոնդահատույցի վրա։

Կիրովականի ճշգրիտ հաստոցների և Երևանի «Հիդրոհաղորդակ» գործարաններում, որտեղ ժամանակակից հաստոցների տեսակարար կշիռը համեմատաբար ցածր է և կազմում է միջին մակարդակի 34 և 52,4 տոկոսը, ֆոն-

դահատույցի ցուցանիշը միջին մակարդակից բարձր է 125 և 13 տոկոսով։ Հաստոցագործիքաշինական մյուս ձեռնարկություններում ևս առկա է նույն երևույթը։ Նորագույն սարքավորումների տեսակարար կշռի համեմատաբար բարձր և ֆոնդահատույցի ցածր մակարդակները հետևանք են այն բանի, որ սարքավորումների պրոգրեսիվ տեսակները, այդ թվում ԹԾԿ հաստոցները, որոնց արժեքը մի քանի անգամ գերազանցում է սովորական հաստոցներին, դեռևս արտադրողաբար չեն աշխատում։

1975 թ., երբ սարքավորումների պարկում համեմատաբար ցածր էր կատարյալ սարքավորումների տեսակարար կշիռը, դրանց օգտագործման վիճակը նշանակալից ազդեցություն չէր գործում ֆոնդահատույցի ցուցանիշի վրա։ Այժմ բոլորովին այլ է վիճակը։ Զարենցավանի հաստոցաշինական գործարանի ֆոնդահատույցի ցուցանիշը հաստոցաշինական գործարանների միջին մակարդակից 1975 թ. ցածր էր ընդամենը 4 տոկոսով, իսկ 1982 թ.՝ 24 տոկոսով։ Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի նշված ցուցանիշները համապատասխանաբար 7 և 21 տոկոս են։ Ֆրեզերային հաստոցների գործարանինը 1975 թ. միջին մակարդակից բարձր էր մեկ տոկոսով, իսկ 1982 թ. ցածր էր 5 տոկոսով։ Մինչդեռ Կիրովականի ճշգրիտ հաստոցների գործարանինը 1975 թ. միջին մակարդակից բարձր էր 45 տոկոսով, իսկ 1982 թվականին՝ արդեն 2,25 անգամ։

Սարքավորումների օգտագործման բարելավման աշխատանքների իրականացման համար կարևոր նշանակություն ունի պարապուրդների պատճառների ուսումնասիրությունը։ 1982 թվականի հետազոտման տվյալները ցույց են տալիս, որ օրվա ընթացքում չգործած սարքավորումների մեջ համեմատաբար մեծ տեսակարար կշիռ են կազմել բանվորներով կոմպլեկտավորված չլինելու (25 տոկոս), պլանային նորոգման ու արդիականացման (21,6 տոկոս) և անսարքության (15,4 տոկոս) պատճառներով չգործող սարքավորումները։ Եթե այդ քանակից հանենք պլանային նորոգման ու արդիականացման, ինչպես և ռեզերվում գտնվող սարքավորումները, ապա անսարքության ու բանվորներով չկոմպլեկտավորվածության պատճառով չգործող սարքավորումների տեսակարար կշիռը կկազմի օրվա ընթացքում չգործածների 52,1 տոկոսը։ Անսարքության պատճառով չգործող սարքավորումների մեջ հատկապես բարձր է ԹԾԿ հաստոցների տեսակարար կշիռը, որը կազմում է այդ օրվա ընթացքում բոլորովին չգործած ԹԾԿ հաստոցների 87 տոկոսը։

Նախորդ (1980 թ.) հետազոտման տվյալների համաձայն անսարքության պատճառով չգործող ԹԾԿ հաստոցների տեսակարար կշիռը կազմել է օրվա ընթացքում չգործած այդ հաստոցների 31 տոկոսը, որը ընթացիկ նորոգման աշխատանքներն անբավարար կատարելու հետևանք է։ Պետք է նշել, որ տեխնիկական առաջընթացի արդի պայմաններում ընդհանուր պարկի մեջ նոր, առավել բարդ սարքավորումների քանակի ավելացմանը զուգընթաց դրանց օգտագործման մակարդակի բարձրացման համար առաջնակարգ նշանակություն ունեն ինչպես սարքավորումների պլանային նորոգումն ու արդիականացումը, այնպես էլ սեղմ ժամկետներում խափանումների վերացումը։ Այս բնագավառում լուրջ դժվարություններ է հարուցում նշված աշխատանքների ապակենտրոնացվածությունը։ Այդ աշխատանքները մեկ ձեռնարկության մեջ կենտրոնացնելու դեպքում հնարավոր կլինի ստեղծել ևս մի ծառայություն, որը կզբաղվի նոր, ավելի բարդ տեխնիկայի, այդ թվում ԹԾԿ հաստոցների օգտագործման ընթացքում տեղի ունեցող խափանումները վերացնելու գործով։

Հանրապետության հաստոցագործիքաշինական արդյունաբերության մեջ սարքավորումների տեխնոլոգիական խմբերի կարողությունների միջև համամասնությունների հաստատման, ներգործարանային առավել մասնագիտացման ու դետալային կոոպերացման ընդլայնման գործում, ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. դեկտեմբերյան պլենումում, կարևոր խթան կհանդիսանա սարքավորումների աշխատանքի հերթափոխայնության գործակիցը բարձրացնելու շարժումը։ Դա կնպաստի սարքավորումների հնարավորությունների առավել լրիվ օգտագործմանը, հիմնական արտադրաֆոնդերի արդյունավետության բարձրացմանը։

---



# ՆՈՐԱՍՏԵՂԾ ՇՐՋԱՆԻ ԱՌԱՋԻՆ ՔԱՅԼԵՐԸ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ նախագահության 1983 թ. մայիսի 6-ի հրամանագրով Հոկտեմբերյանի և Թալինի շրջանների որոշակի տարածության, պետական ու կոլեկտիվ տնտեսությունների և արդյունաբերական ձեռնարկությունների բազայի վրա ստեղծվեց Բաղրամյանի շրջանը։ Այն ներառում է յոթ գործող և նույնքան նորաստեղծ տնտեսություններ, ինչպես նաև խոզաբուծական երկու համալիր և տոհմային վերարտադրության խոզաբուծական մեկ տնտեսություն։ Նրա տարածքում գործում են արդյունաբերական մի շարք ձեռնարկություններ (համակցված կերերի, երկաթբետոնե կոնստրուկցիաների, պահածոների և գինու գործարաններ, թեթև լցանյութերի արտադրամիավորում, գործարանային մասնաճյուղեր) և շինարարական երեք կազմակերպություն։

Շրջանի ստեղծման գլխավոր նպատակներից մեկը խամ ու խոպան հողերի յուրացումն է։ Նոր ձևավորվող պետական յոթ տնտեսություններից յուրաքանչյուրը տարիներ հետո միջին հաշվով կունենա 2.000 հեկտար մշակելի հողատարածություն։

Նորաստեղծ շրջանի էկոնոմիկան տեսակարար զգալի կշիռ ունի հանրապետության ժողովրդական տնտեսության ընդհանուր արդյունքում։ Բավական է ասել, որ նրա արդյունաբերության և գյուղատնտեսության տարեկան համախառն արտադրանքի ծավալը կազմում է շուրջ 100 միլիոն ռուբլի։

Անտարակույս, նորաստեղծ շրջանի առջև ծառացած են՝ լուրջ խնդիրներ, որոնց լուծումը կապված է որոշակի դժվարությունների հաղթահարման հետ։ Այդ առնչությամբ մեր հատուկ թղթակից **Արտավազդ Սաքանյանը** հարցազրույց ունեցավ ՀԿԿ Բաղրամյանի շրջկոմի առաջին քարտուղար **Թեւման Դիլանյանի** հետ։

**Հարց.**— Շրջանն ինչպե՞ս փակեց տասնմեկերորդ հնգամյակի առանցքային տարին, ինչպե՞ս է իրականացնում պարենային ծրագիրը։

**Պատասխան.**— Նախ, օգտվելով առիթից, ասեմ, որ նոր շրջանի ստեղծումը մեր հանրապետության նկատմամբ ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության ցուցաբերած հոգատարության մի վառ արտահայտություն է։

Վարչական նոր օղակի ստեղծումը մեծ պատասխանատվությամբ է համակել շրջանի կուսակցական, սովետական և տնտեսական մարմիններին, սկզբնական կուսկազմակերպություններին և աշխատավորական կոլեկտիվներին։ Մենք շարունակելու ենք մեր նախորդ սերունդների փառավոր ավանդույթները՝ շենացնել երբեմնի անմարդաբնակ Սարդարապատի անապատի անմշակ տարածքները, ստեղծել նոր ու բարգավաճ սոցիալիստական տնտեսություններ։

Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի նախագահության հրամանագրից անմիջապես հետո, ՀԿԿ Կենտկոմի բյուրոյի որոշմամբ ստեղծվեց Բաղրամյանի շրջանի կազմկոմիտե, որի առջև խնդիր դրվեց մշակել միջոցառումների գործնական ծրագիր և լուծել շրջանի կազմավորմանն առնչվող հարցերը։ Կազմկոմիտեն, իրոք, ակտիվ գործունեություն ծավալեց և ՀԿԿ Կենտկոմին ու Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդին ներկայացրեց շրջանի ներկա վիճակի բարելավմանը և սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարներին վերաբերող մի շարք հարցեր։ Նա գործնականորեն զբաղվեց կուսշրջկոմի, շրջսովետի գործկոմի ու նրա բաժինների ապարատների աշխատողների ընտրությամբ և տեղաբաշխմամբ, ժողովրդական դեպուտատների շրջանային սովետի ընտրությունների և անդրանիկ նստաշրջանի նախապատրաստմամբ ու անցկացմամբ, ուսումնասիրեց և ՍՄԿԿ XXVI համագումարի ու ՀԿԿ XXVII

համագումարի որոշումների լույսի ներքո վերլուծեց շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների, կոլեկտիվ ու պետական տնտեսությունների, շինարարական կազմակերպությունների գործունեության մի շարք հարցեր և միջոցառումներ մշակեց դրանց լուծման համար: Եվ մեր ձեռնարկումները որոշակի արդյունքներ տվեցին:

Հարցնում եք՝ ինչպե՞ս ենք փակել տնտեսական տարին: Ուղղակի ասեմ՝ ոչ վատ: Բանն այն է, որ շրջանը իր պլանները «ստացել» է տնտեսական տարվա ավարտից երկու ամիս առաջ և, հետևաբար, վերջնարդյունքների մասին խոսելը վաղ է: Սակայն արտադրական միավորները (կոլտնտեսությունները ու սովխոզները, արդյունաբերական ու գյուղատնտեսական մյուս ձեռնարկությունները) ունեցել են իրենց կոնկրետ ծրագրերը, որոնք սահմանվել են նախապես: Այդ իմաստով էլ որոշակի ասելիք կա: Շրջանը կատարեց արդյունաբերական արտադրանքի թողարկման և շինմոնտաժային աշխատանքների պլանները: Գործերը, մասնավորապես, բարեհաջող են համակցված կերերի գործարանում, որի կոլեկտիվը ժամկետից շուտ զեկուցեց տարեկան պլանը կատարելու մասին և նախատեսված 24 միլիոնի փոխարեն թողարկեց ավելի քան 30 միլիոն ռուբլու արտադրանք:

Այժմ գյուղատնտեսության և, մասնավորապես, պարենային ծրագրի կատարման նախնական արդյունքների մասին: Պարենային ծրագրի իրագործման կարևոր պայմանը գյուղատնտեսական արտադրության ճիշտ կազմակերպումն է, աշխատանքի որակի ըստ ամենայնի բարձրացումը, ակտիվ պայքարը, ինչպես հանգամանորեն նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թվականի նոյեմբերյան պլենումում, այն բանի համար, որ ներդրվող հսկայական միջոցները փոխհատուցում տան արդեն այսօր և է՛լ ավելի մեծ փոխհատուցում՝ վաղը: Իսկ աշխատել արդյունավետ և որակով, նշանակում է հայտնաբերել ու լիովին գործողության մեջ դնել գյուղատնտեսական արտադրանքի ծավալների մեծացման բոլոր ռեզերվները ու հնարավորությունները յուրաքանչյուր տնտեսությունում և բրիգադում, ինտենսիվացնել արտադրությունը, լայնորեն ներդնել գիտականորեն հիմնավորված համակարգեր և այդ ճանապարհով ապահովել բերքատվության և մթերատվության էական աճ:

Պարենային ծրագրի կատարման նախնական արդյունքները հուսադրող են: Շրջանի պետական ու կոլեկտիվ տնտեսությունները կատարել ու գերակատարել են գյուղատնտեսական հիմնական մթերքների արտադրության ու պետական մթերումների պլանները: 1982—1983 թվականներին անասունների ձմեռումը հաջողությամբ անցկացնելու, անասնապահական մթերքների արտադրության պետական մթերումները ավելացնելու համար Հուշակերտի կոլտնտեսությունը հաղթող ճանաչվեց համամիութենական սոցիալիստական մրցությունում և արժանացավ ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԿԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրին: Հուշակերտցիները 1983 թ., պլանով նախատեսված 222-ի փոխարեն, պետությանը վաճառել են 882 տոննա պտուղ, գերակատարել են նաև խաղողի, հացահատիկի, բանջարեղենի և անասնապահական մթերքների արտադրության ու մթերումների պլանները: Կոլտնտեսության անցած տարվա օգուտները կազմեցին ավելի քան մեկ միլիոն ռուբլի: Տնտեսական տարին լավ փակեցին նաև Բագարանի, Երվանդաշատի կոլտնտեսությունները, № 2 խոզաբուծական համալիրը, տոհմային վերարտադրության տնտեսությունը և այլ կոլեկտիվներ:

Պարենային ծրագրի կատարման գործում արժանի ավանդ են մուծում հատկապես արտադրության առաջավորները: Նրանց ձեռք բերած արդյունքները այն բնագծերն ու նշակետերն են, որոնց հասնելու համար ցանկություն, կամք ու համառություն է հարկավոր: Նրանք այն մարդիկ են, որոնք մշտապես քայլում են սոցիալիստական մրցության առաջին շարքերում և օրինակ ծառայում գործընկերներին:

Ահա նրանցից մեկը՝ Հուշակերտի կոլտնտեսության կթվորուհի Վարդիզար Գևորգյանը: Համեստ, իր գործը սիրող աշխատավորուհի է: Անասունների խնամքն ու կերակրումը լավ կազմակերպելու շնորհիվ անցած տարի կովերի միջին կաթնատվությունը հասցրեց 3.444 կիլոգրամի: Մսի արտադրության ասպարեզում լավ արդյունքի է հասել խոզաբուծական № 2 համալիրի օպերատոր Էմմա Հակոբյանը, որը անեցման արտադրամասում է հանձնել 28 կգ միջին քաշով ավելի քան 1.600 գլուխ խոճկոր: Ընդ որում խնայվել է զգալի քանակությամբ կեր:

Այգեգործական առաջավոր կոլեկտիվներից է Մյասնիկյանի սովխոզի № 9 բրիգադը, որը ավելի քան 22 տարի ղեկավարում է ՍՄԿԿ անդամ, Հոկտեմբերյան հեղափոխության և «Պատվո նշան» շքանշանների ասպետ Ավետիք Ափինյանը:

Վարդիզարի և Էմմայի նման բարեխիղճ աշխատողները, Ավետիքի նման հմուտ ղեկավարները շատ են մեր տնտեսություններում: Եվ նրանց ենք պարտական պարենային ծրագրի իրագործման ասպարեզում մեր ձեռք բերած հաջողությունների համար:

**Հարց.**— Ինչպիսի՞ հոգսեր ու դժվարություններ կան էկոնոմիկայի ասպարեզում: Կուսշրջկոմն ու սկզբնական կազմակերպությունները ինչպե՞ս են զբաղվում դրանց հաղթահարման հարցերով:

**Պատասխան.**— Իրոք, կան ոչ քիչ հոգսեր ու դժվարություններ, որոնք խոչընդոտում են շրջանի էկոնոմիկայի առաջընթացը, արտադրության աճը:

Մեզ շատ հոգսեր են պատճառում արդյունաբերության բնագավառի թերացումները ու թերությունները: Շրջանային կուսկազմակերպության հիմնադիր կոնֆերանսում նշվեց, որ թեթև լցանյութերի արտադրամիավորումը և Հայկոոպի Քարակերտի պահածոների գործարանը իրենց արտադրական կարողությունները օգտագործում են ոչ լրիվ չափով (45—65 տոկոսով): Այս ձեռնարկությունները հաճախ խախտում են պետական ստանդարտները ու տեխնիկական պայմանները, ցածրորակ արտադրանք թողարկելու պատճառով վճարում մեծ չափերի հասնող տուգանքներ: Արտադրամիավորումը «մասնագիտացել» է սոսկ մեկ-երկու արտադրատեսակների թողարկմամբ և դրանով էլ կատարում է իր պլանները:

Այսօր մեր մտահոգության առարկան հանրային արտադրության արդյունավետության և թողարկվող արտադրանքի որակի էական բարձրացումն է, մի խնդիր, որը կուսակցությունը անչափ կարևորում է: Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները և տնտեսական ղեկավարները հիմնական ուշադրությունը բևեռել են ձեռնարկություններում աշխատանքային ու տեխնոլոգիական կարգապահության ամրապնդման, ամենուրեք կարգ ու կանոնի հաստատման, աշխատաժամանակի արդյունավետ օգտագործման, պայմանագրային պարտավորությունների կատարման վրա: Մենք ղեկավարվում ենք ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի դեկտեմբերյան պլենումի առաջադրած այն պահանջով, որ ապահովվի աշխատանքի արտադրողականության մեկ տոկոսի արտապլանային աճ և արտադրանքի ինքնարժեքի 0,5 տոկոսի լրացուցիչ իջեցում: Մենք դա համարում ենք որպես պլանիատիվ կուսակցության լրացուցիչ առաջադրանք:

Գյուղատնտեսության բնագավառում մեզ խիստ մտահոգում է մի շարք տնտեսություններում պտղաբուծության և խաղողագործության անմխիթար վիճակը: Բանն այն է, որ դեռևս ցածր է այդ ճյուղերի վարման կուլտուրան, անբավարար են կիրառվում ագրոմիջոցառումները, բարձր է այգիների նոսրության տոկոսը (20—25): Դրա պատճառով տնտեսությունները մեծ վնաս են կրում: Զարմանալ ու զայրանալ կարելի է, երբ Օրջոնիկիձեի անվան սովխոզի (դիրեկտոր՝ Գ. Մնացականյան, կուսբյուրոյի քարտուղար՝ Գ. Գևորգյան) 400 հեկտար խաղողի այգիներում պակասում է 350 հազար վազ կամ 130 հեկտարը ամուլ-անպտուղ է: Նման վիճակ է նաև Մյասնիկյանի անվան սովխոզում: Այգիների նոսրության վերացման, ծերացած ու խառնասորտ այգիների քանդման և նորերի հիմնման գործը խիստ դանդաղում է: Ինչ վերաբերում է անասնապահությանը, ապա այստեղ գլխավոր թերությունը կովերի կաթնատվության և մթերվող անասունների կենդանի քաշի ցածր մակարդակն է: Բարվոք չէ վիճակը խոզաբուծական առաջին համալիրում, որը հնգամյակի անցած երեք տարում պետությանը պակաս է վաճառել 4500 տոննա միս: Ի դեպ, դրա հիմնական պատճառներից մեկը արտադրատեխնիկական անհրաժեշտ պայմանների բացակայությունն է:

Եվս մեկ այլ լուրջ թերություն, որի վերացման համար մեծ ջանքեր են հարկավոր: Գյուղատնտեսության տեխնիկական զինվածության աճին հակառակ, ցածր է տեխնիկայի օգտագործման աստիճանը, վատ են կազմակերպվում դրա խնամքն ու պահպանությունը: Տարիներ շարունակ այն պահվում է բաց երկնքի տակ. չեն կառուցվել արհեստանոցներ ու գարաժներ, ցածր է անասնապահության աշխատատար պրոցեսների մեքենայացման մակարդակը, տեղադրված էլեկտրակթի ագրեգատները, ջրի ավտոմատ խմոցները և մյուս սարքավորումները չեն գործում:

Կուսշրջկոմը, շրջսովետի գործկոմը և նրա գյուղվարչությունը, համապատասխան մինիստրությունների, գիտահետազոտական ինստիտուտների հետ միասին, այժմ միջոցառումներ են մշակում անասնապահության և դաշտավարության վարման կուլտուրան բարձրացնելու, ցեղաբուծական աշխատանքը բարելավելու, աշխատատար պրոցեսները մեքենայացնելու, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն ու անասունների մթերատվությունը ավելացնելու համար: Կուսկազմակերպությունների առջև խնդիր է դրվել՝ ավելի մոտիկից զբաղվել արտադրության կուսակցական ղեկավարման հարցերով, կատարելագործել սոցիալիստական մրցության կազմակերպումն ու ծավալումը, արտադրության մարդկանց շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքը:

Մի քանի խոսք կադրային հարցի մասին: Պարենային ծրագիրն իրագործելու համար հարկավոր է տնտեսությունները, դրանց արտադրական օղակներն ապահովել գործիմաց կադրերով, բարձրացնել նրանց պատասխանատվությունը, ուժեղացնել կուսկազմակերպությունների մարտունակությունը, զարգացնել կոմունիստների նախաձեռնությունը, հայտնաբերել ու գործադրել արտադրության զարգացման նոր ռեզերվներ ու հնարավորություններ: Այդ առումով էլ մենք կուսշրջկոմի պլենումում քննարկեցինք Քարակերտի պետական տնտեսության սկզբնական կուսկազմակերպության բյուրոյի հաշվետվությունը ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների որոշումների կենսագործման ասպարեզում կատարած աշխատանքի մասին:

Քարակերտի սովխոզը շրջանի ամենախոշոր տնտեսություններից է, մեծ է նրա տեսակարար կշիռը շրջանի ընդհանուր արդյունքում: Բավական է ասել, որ այն մշակում է ավելի քան 700 հեկտար խաղողի և պտղատու այգի, զբաղվում անասնապահությամբ: Տասնմեկերորդ հնգամյակի առաջին երկու տարում այստեղ գործերը բարեհաջող են եղել, գերակատարվել են խաղողի, կաթի ու մսի արտադրության ու մթերումների պլանները, որոշակի աշխատանք է կատարվել այգիների նորության վերացման, արտադրվող մթերքների որակի բարելավման, սոցմրցության կազմակերպման, աշխատանքային և պետական կարգապահության ամրապնդման գործում: Բարելավվել է կուսակցական, քաղաքական և կազմակերպչական աշխատանքը, կուսժողովներում և բյուրոյի նիստերում քննարկման առարկա են դարձել արտադրության ինտենսիվացման, արդյունավետության բարձրացման հարցեր:

Ասածից գուցե թվա, թե գործերը լավ են ու թերևս հարկ չկար անդրադառնալ այդ կազմակերպության հարցին: Բայց, ո՛չ: Քննարկման առիթը լուրջ էր. հնգամյակի առանցքային տարում արտադրական մի շարք օղակներում նկատվում էր նահանջ նախկինում նվաճած բնագծերից: Մենք այդ քննարկումով պարզեցինք, որ կուսկազմակերպության գործունեության մակարդակը դեռևս լիովին չի համապատասխանում ՍՄԿԿ XXVI և ՀԿԿ XXVII համագումարների պահանջներին:

Պլենումը մշակեց կոնկրետ միջոցառումներ տնտեսությունն այդ վիճակից հանելու համար: Մասնավորապես խնդիր դրվեց արդյունավետ օգտագործել հողը, ջուրը, պարարտանյութերն ու քիմիկատները, գյուղտեխնիկան, բարձրացնել այգիների բերքատվությունը, ամրապնդել կերի բազան, կովերի կաթնատվությունը հասցնել 2.500, մթերվող տավարի միջին կենդանի քաշը՝ 380 կիլոգրամի: Կուսբյուրոյին տրվեցին նաև կադրերի հետ տարվող և քաղաքական-դաստիարակչական աշխատանքը բարելավելու, կոմունիստների պատասխանատվությունը բարձրացնելու, սոցմրցության գործարարությունն ապահովելու, ընդունած որոշումների կատարման ու ստուգման գործը բարելավելու և այլ հանձնարարականներ: Տնտեսությանը, գյուղի սոցիալական զարգացմանը, կուսկազմակերպությանն օգնելու առաջադրանքներ ստացան շրջսովետի գործկոմն ու կուսշրջկոմի բաժինները և շրջանային համապատասխան կազմակերպությունները:

Այո՛, գաղտնիք չէ. երկրի սոցիալ-տնտեսական զարգացման խնդիրների լուծման բանալին կուսակցությունը տեսնում է կադրերի ճիշտ ընտրության, նրանց արդյունավետ գործունեության, բարձր սկզբունքայնության և կոմունիստական շինարարության գործին նվիրվածության մեջ: Հատկանշական է, որ շրջանի ժողովրդական տնտեսության հիմնական ճյուղերը և սկզբնական կուսկազմակերպությունները ղեկավարում են բարձրագույն կրթությամբ մասնագետներ, գաղափարապես կոփված կոմունիստներ: Նրանց նկատմամբ հոգատարությունը մենք զուգակցում ենք բարձր



պահանջկոտության հետ: Կուսշրջկոմը ղեկավարների գործունեությունը գնահատում է ոչ միայն տնտեսական արդյունքներով, այլև նրանց վստահված կոլեկտիվներում բարոյաքաղաքական մթնոլորտի վիճակով, մասսաների քաղաքական ու աշխատանքային ակտիվության աստիճանով: Մեզ համար ուղեցույց է այդ առթիվ ՀԿԿ Կենտկոմի 1983 թ. ապրիլյան պլենումում Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանի տված հետևյալ առաջադրանքը. «Կուսակցական կազմակերպությունները պարտավոր են զբաղվել նրանց նախաձեռնությունը զարգացնելու, արտադրության տեխնիկական, կազմակերպական ու տնտեսական պրոբլեմների լուծման գործում նրանց ակտիվությունը բարձրացնելու հարցերով»: Ի դեպ, աշխատավորների հետ կապի ամրապնդմանը, նրանց ակտիվության բարձրացմանը էապես նպաստում է բնակչությանը հուզող հարցերը պարզաբանելու նպատակով ստեղծված հանձնաժողովը, որը արդյունավետ գործունեություն է ծավալում: Հանձնաժողովի անդամները պարբերաբար լինում են տեղերում, հանդիպումներ ունենում աշխատավորական կոլեկտիվների և բնակչության խմբերի հետ, ունկնդրում մարդկանց և հենց տեղում էլ նրանց առաջադրած հարցերին տալիս համապատասխան ընթացք:

**Հարց.**— Որո՞նք են այժմ շրջանի առջև ծառացած գլխավոր խնդիրները, ինչպե՞ս են լուծվում դրանք:

**Պատասխան.**— Բնական է՝ նոր շրջանն ունի լուծման կարոտ լուրջ պրոբլեմներ ու խնդիրներ: Դրանք հիմնականում առնչվում են բնակավայրերի սոցիալական զարգացման հետ և բխում են տնտեսական առաջընթացի շահերից: ՍՄԿԿ Կենտկոմի 1982 թ. մայիսյան պլենումը նշեց, որ գյուղի սոցիալական վերակառուցման միջոցառումները կազմում են պարենային ծրագրի օրգանական մասը: Պլենումը խնդիր դրեց գյուղական վայրերում ընդլայնել բարեկարգ բնակարանների, դպրոցների, նախադպրոցական հիմնարկությունների, ակումբների շինարարությունը, բարելավել բնակչության բժշկական, առևտրական և կենցաղային սպասարկումը, զարգացնել անձնական օժանդակ տնտեսությունը:

Երբ մենք այս ասպարեզում մեր շրջանում կատարվող աշխատանքը գնահատում ենք պլենումի առաջադրած պահանջների չափանիշով, ապա ակնհայտ կերպով երևում են և՛ ձեռքբերումները, և՛ թերացումներն ու ստվերոտ կողմերը: Գործող տնտեսություններում շարունակվում, իսկ նորաստեղծ երկու սովխոզներում սկսվել է բնակարանային շինարարությունը: Պետության հատկացրած միջոցներով կառուցվում են բնակելի տներ, որոնք ունեն տնամերձ հողամասեր: Նորաստեղծ մնացած հինգ սովխոզներում բնակելի տների կառուցումը կձեռնարկվի ընթացիկ տարվանից: Նախագծային ինստիտուտները մշակում են նոր բնակավայրերի հատակագծերը և շենքերի նախագծերը:

Այո՛, այսօրվա գյուղը պետք է ապահովված լինի կրթամշակութային և առողջապահական օջախներով ու բնակչության սպասարկման բազմաբնույթ օբյեկտներով: Այսօր այդպիսի պայմաններ ունեն Մյասնիկյանի սովխոզի ավանը, Քարակերտ, Դալարիկ, Ծենիկ, Հուշակերտ գյուղերը: Նախատեսվում է նորաստեղծ սովխոզներում կառուցել դպրոցների ու մսուր-մանկապարտեզների շենքեր, կուլտուր-կենցաղային և բնակչության սպասարկման այլ օբյեկտներ:

Այսօր շրջանում աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ տեղաբաշխման, օգտագործման ու վերարտադրության, հետևաբար և ժողովրդական տնտեսության համաչափ զարգացման համակարգում ամենալուրջ պրոբլեմը շինարարական աշխատանքի մակարդակի բարձրացումն է: Սակայն այն դեռևս մեզ չի գոհացնում: Շինարարական և պատվիրատու կազմակերպությունները գործում են անհամաչափ, ձգձգում արդյունաբերական, գյուղատնտեսական, սոցիալ-տնտեսական կարևոր նշանակության օբյեկտների կառուցման աշխատանքները: Այսպես, 1979 թ. Բագարան գյուղում սկսված 300 տեղանոց ակումբի շինարարությունը չափազանց դանդաղ է ընթանում: Նախատեսված գումարները նույնիսկ կիսով չափ չեն իրացվում, իսկ ահա Երվանդաշատի տնտեսությունում շինարարության համար հատկացված կապիտալ ներդրումները մինչև օրս չեն օգտագործվել: Ծուրջ 12 տարի առաջ սկսվել, սակայն չի ավարտվում հանրապետության գունավոր մետալուրգիայի վարչությանը պատկանող քարաձուլվածքների կոմբինատի շինարարությունը, որի շինմոնտաժային աշխատանքի արժեքը կազմում է երեք միլիոն ռուբլի:

Շրջանի սոցիալական զարգացումը, հասկանալի է՝ նաև պարենային ծրագրի իրագործումը, պայմանավորված են սովխոզային շինարարության ճիշտ կազմակերպմամբ: Մինչդեռ № 4 տնկարանային տնտեսությունում, օրինակ, բնակշինարարությունը խիստ ետ է մնում հողաշինարարական, ջրաշինարարական և արտադրության կազմակերպման աշխատանքներից: Այստեղ ավարտվել են 2.350 հեկտար հողերի կուլտուր-տեխնիկական մշակության աշխատանքները, շրջանառության մեջ են դրվել 1.137 հեկտար նոր ոռոգելի հողեր, ժամկետից շուտ կազմակերպվել են նոր այգիների հիմնումը և տնկանյութի արտադրությունը, սակայն վերջին չորս տարում կատարվել է ընդամենը մեկ միլիոն 200 հազար ռուբլու բնակարանային շինարարական աշխատանք, շահագործման չի հանձնվել ոչ մի քառակուսի մետր բնակելի տարածություն:

Սոցիալական զարգացման ասպարեզում մեր առջև ծառացած լուրջ պրոբլեմներից են նաև բնակավայրերի ջրամատակարարումը, կոյուղացումը, գազիֆիկացումը, էլեկտրաէներգիայի մատակարարման բարելավումը: Ճիշտ է, ինժեներական կոմունիկացիաների նախագծման աշխատանքներն ընթացքի մեջ են, սակայն դրանց տեմպերը մեզ չեն բավարարում և տեղիք են տալիս բնակչության իրավացի դժգոհությանը: Թերություններ շատ կան կապի, առևտրի, հասարակական սննդի, կենցաղային սպասարկման բնագավառներում: Այդ օբյեկտներն ուղղակի անմխիթար վիճակում են: Նորաստեղծ շրջանը չունի բուժսպասարկման տարրական պայմաններ, վատ է նաև ավտոբուսային կապը գյուղի և ժամանակավոր շրջկենտրոնի (Մյասնիկյան գյուղ) միջև: Այդ ամենը վկայում է, որ սոցիալական զարգացման խնդիրների լուծման գործում մենք շատ ենք զգում հանրապետության պետպլանի և առանց բացառության բոլոր մինիստրությունների ու գերատեսչությունների գործնական օգնության կարիքը:

**Հարց.**— Ի՞նչ կասեիք տնտեսական և սոցիալական զարգացման հեռանկարների մասին:

**Պատասխան.**— Հեռանկարները անսպառ հուսադրող են: Նախ ասեմ, որ շրջանին հատկացվել է 45.800 հեկտար հողատարածություն, որից 18.950 հեկտարը՝ նոր կազմակերպված պետական տնտեսություններին: Այժմ գործող տնտեսությունները օգտագործում են 9 հազար հեկտար վարելահող: Նախատեսվում է առաջիկա տարիներին նույնքան էլ յուրացնել ու դարձնել մշակելի: Այսպիսով, մենք կունենանք 18 հազար հեկտար գյուղատնտեսական օգտագործելի հողատարածություն: Մեր կարծիքով, պետք է մեծ տեղ հատկացնել պտղաբուծությանն ու խաղողագործությանը այն հաշվով, որպեսզի շրջանը տարեկան արտադրի 100 հազար տոննա պտուղ ու խաղող: Բնականաբար, ցանքաշրջանառության կիրառման շահերից ելնելով, մենք պետք է զբաղվենք նաև հացահատիկի, բանջարեղենի, կերային կուլտուրաների արտադրությամբ: Դա նշանակում է, որ նորաստեղծ պետական տնտեսություններում հարկ է զարգացնել նաև անասնապահությունը: Մեր նախնական հաշվարկները ցույց են տալիս, որ շրջանը, խոզաբուծական համալիրներով հանդերձ, կկարողանա պետությանը տարեկան վաճառել 10 հազար տոննա միս: Հանրային հոտի կերակրումն ու խնամքը և ցեղաբուծական աշխատանքը ճիշտ կազմակերպելու դեպքում կարող ենք արտադրել նաև 10 հազար տոննա կաթ: Հաշվի առնելով, որ նոր յուրացված հողերը առաջին հերթին պետք է հատկացնել բազմամյա խոտաբույսերին, մասնավորապես առվույտին, ապա հնարավոր է ոչ միայն մեր շրջանը, այլև հանրապետությունն ապահովել առվույտի սերմացուով:

Շրջանի համար բազային № 4 տնկարանային տնտեսությունում նախատեսվում է գործը կազմակերպել այնպես, որ բավարարվի ոչ միայն շրջանի, այլև հանրապետության՝ կորիզավոր պտղատեսակների տնկանյութի պահանջը:

Խաղողագործությունը զարգացնելու նպատակով մտադիր ենք հիմնականում ներդնել այնպիսի ցրտադիմացկուն սորտեր, որոնք բացառեն այգեթաղի ու այգեբացի դժվարին գործը: Նման փորձնական աշխատանք կատարվելու է Հուշակերտի կոլտնտեսությունում, № 4 տնկարանային տնտեսությունում: Առկա են առաջին արդյունքները. 1982—1983 թվականների խիստ ձմռան պայմաններում Հուշակերտում հիմնած չորս հեկտար խաղողի բերքատու այգին փաստորեն չտուժեց և բարձր բերք տվեց:



Խաղողի և պտուղների արտադրության աճին զուգընթաց անհրաժեշտություն կառաջանա շրջանում կառուցելու պահածոների խոշոր գործարան՝ սառնարանային տնտեսությամբ:

Այդ ծրագրերն իրագործելու համար հարկավոր է արագացնել ջրաշինարարական ու մելիորացիոն աշխատանքները: Նախատեսվում է ընդարձակել ոռոգման ցանցը, որն անմխիթար վիճակում է: Այժմյան 3.000 հեկտարի փոխարեն տարիներ հետո մենք ունենալու ենք վեց անգամ ավելի ոռոգելի հողատարածություն: Հետևաբար, անհրաժեշտ է, որպեսզի գյուղատնտեսության, ջրային տնտեսության և մելիորացիայի մինիստրությունները, «Հայգլխջրշին» վարչությունը մեզ ժամանակին ապահովեն նախագծային-նախահաշվային փաստաթղթերով, հատկացնեն նյութական ու ֆինանսական անհրաժեշտ միջոցներ:

Աշխատուժը ռացիոնալ օգտագործելու համար կհիմնվեն արդյունաբերական նոր ձեռնարկություններ ու ֆաբրիկագործարանային մասնաճյուղեր:

Սոցիալական զարգացման բնագավառում ևս շատ անելիքներ ունենք: Գլխավորը, իհարկե, նոր շրջկենտրոնի հիմնումն է: «Հայպետնախագիծ» ինստիտուտը մշակում է դրա գլխավոր հատակագիծը, ինչպես նաև կառուցապատման նախագիծը: Շինարարությունը կսկսվի ընթացիկ տարվանից: Փաստորեն կստեղծվի Բաղրամյան անունով նոր ավան՝ առաջին փուլում 10 հազար բնակչի համար: Նախատեսվում է 1985—1990 թթ. շրջկենտրոնում կառուցել հիվանդանոց, պոլիկլինիկա, կրթամշակութային օջախներ, կենցաղային սպասարկման, առևտրի ու հասարակական սննդի բազմաթիվ օբյեկտներ: Ֆինանսական բոլոր աղբյուրներով կապիտալ շինարարության ծավալը 1983—2000 թթ. կկազմի 476 միլիոն ռուբլի:

Այսօր փաստորեն բաղրամյանցիները գրում են շրջանի տարեգրության առաջին էջերը: Կոմունիստները, ողջ աշխատավորությունը լի են վճռականությամբ՝ կուսակցության զինվորին և սովետական մարդուն հատուկ լավատեսությամբ հաղթահարելու առկա դժվարությունները, հաջողությամբ նվաճելու տասնմեկերորդ հնգամյակի բնագծերը:

Այդ հայրենաշահ աշխատանքում, մեր ընթացիկ և հեռանկարային խնդիրները լուծելիս մեզ համար գործողության ուղեցույց կլինի ՀԿԿ Կենտկոմի հունվարյան (1984 թ.) պլենումում Կենտկոմի քարտուղար Կ. Ս. Դեմիրճյանի առաջադրած հետևյալ պահանջը. «Մենք պետք է սոցիալիստական մրցությունը նպատակամղենք պլանների և առաջադրանքների կատարմանն ու գերակատարմանը, վերջնական բարձր արդյունքների ձեռքբերմանը, աշխատանքի արտադրողականության արտապլանային բարձրացման և արտադրանքի ինքնարժեքի իջեցման՝ կուսակցության լրացուցիչ առաջադրանքների անվերապահ կատարմանը, նյութական և աշխատանքային ռեսուրսների օգտագործման բարելավմանը, դրանց համակողմանի խնայողությանը»:

ԲԱՂՐԱՄՅԱՆԻ ԱՆՈՒՆԸ ԿՐՈՂ շրջանը առաջին քայլերն է անում ինքնահաստատման ճանապարհին: Եվ վստահ են այդ քայլերը: Շրջանի կուսակցական կազմակերպությունը խնամքով կապակցում, վարչական ու տերիտորիալ նոր ինքնուրույն միավորի մեջ ի մի է բերում էկոնոմիկայի տարբեր օղակները, ջանում, որ դրանք գործեն ամբողջական օրգանիզմի ներդաշնակությամբ: Կոմունիստները, բոլոր աշխատավորները, ոգևորված ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան (1983 թ.) պլենումի որոշումներով, Հայաստանի կոմկուսի Կենտկոմի հունվարյան (1984 թ.) պլենումի առաջադրած պահանջներով, աննահանջ հաստատակամությամբ պայքարում են էկոնոմիկայի ու սոցիալ-կուլտուրական զարգացման խնդիրներն իրագործելու համար:

---

# ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵԼ ԿԱԴՐԵՐԻ ՊԱՏՐԱՍՏՄԱՆ ԵՎ ՕԳՏԱԳՈՐԾՄԱՆ ՀԱՄԱԿԱՐԳԸ

**Ռ. ՎԱԼԵՍՅԱՆ**

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆՆ արտադրաուժերի որակական վերափոխման սոցիալ-տնտեսական բարդ պրոցես է։ Այն ընդգրկում է ողջ արտադրությունը, աշխատանքի պայմանները, բնույթն ու բովանդակությունը, աշխատանքի հասարակական բաժանման և արտադրաուժերի կառուցվածքը։

Արդի պայմաններում հստակորեն դրսևորվում է գիտատեխնիկական հեղափոխության երկակի կապը բարձրագույն կրթության համակարգի հետ։ ԳՏՀ-ի արագ ու անընդմեջ զարգացումը որոշակի քանակական ու որակական պահանջներ է առաջադրում բարձրագույն կրթության համակարգին, բազմակողմանիորեն ներազդում մասնագետների պատրաստման ողջ պրոցեսի վրա։

Միաժամանակ, այդ համակարգը դառնում է սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման կարևոր ազդակը։ Գիտության վերածումն անմիջական արտադրաուժի անհնար է առանց բարձրագույն կրթության համակարգի ակտիվ գործունեության, քանի որ այն գիտության համար կադրերի պատրաստման միակ աղբյուրն է, գիտական պոտենցիալի վերարտադրության կարևորագույն միջոցը։

Սահմանելով հնգամյակի հիմնական սոցիալ-տնտեսական խնդիրները, ՍՄԿԿ XXVI համագումարը կարևորեց բարձրագույն կրթության համակարգի կատարելագործման, մասնագետների պատրաստման որակի և ժողովրդական տնտեսության մեջ նրանց օգտագործման արդյունավետության բարձրացման անհրաժեշտությունը։ Այդ հարցերին պատշաճ ուշադրություն նվիրեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը։ Պլենումի որոշման մեջ նշվեց, որ անհրաժեշտ է «զգալիորեն բարելավել բուհերում և տեխնիկումներում մասնագետների պատրաստումը ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերի համար, ուսանողության գաղափարաքաղաքական կոփումը»։ Այս կոմպլեքսային պրոբլեմը հարկավոր է դիտել երկու բաղկացուցիչ խնդիրների փոխպայմանավորվածության մեջ։ Ընդ որում որոշիչը ժողովրդական տնտեսության մեջ մասնագետների օգտագործումն է նյութական բարիքների արտադրության կամ ծառայությունների ոլորտում։ Այստեղ են քանակական և որակական պահանջներ առաջադրվում բարձրագույն կրթության համակարգին, բնութագրվում մասնագետների պատրաստման արդյունավետությունն ու որակը։

Գիտատեխնիկական հեղափոխությունը, անընդմեջ կատարելագործելով տեխնիկան ու տեխնոլոգիան, արտադրության կազմակերպման ու կառավարման ձևերն ու մեթոդները, աստիճանաբար դուրս է մղում ոչ որակյալ աշխատանքը։ Ինչպես վկայում են հաշվարկները, արդյունաբերական արտադրության բազմաթիվ տեսակներ պահանջում են 35—57 տոկոս ոչ որակյալ ու սակավ որակյալ բանվորներ, 7—8 տոկոս՝ միջնակարգ մասնագիտական կրթության տեր մարդիկ և միայն 1—2 տոկոս՝ ինժեներներ բարձրագույն կրթությամբ, այն ժամանակ, երբ ավտոմատացված ձեռնարկություններում



զբաղված կլինեն 40—50 տոկոս որակյալ բանվորներ, 40—60 տոկոս՝ միջնակարգ մասնագիտական կրթությամբ, 20—40 տոկոս՝ բարձրագույն կրթությամբ (Сборник НТР и социальный прогресс. М., 1974, стр. 18)։

Մեր երկրում մշտապես մեծ ուշադրություն է նվիրվել բարձրագույն կրթության զարգացմանը։ Որակյալ մասնագետների բանակի ստեղծման պրոբլեմը Վ. Ի. Լենինը դիտում էր որպես կոմունիստական հասարակարգի կառուցման կարևորագույն խնդիրներից մեկը։ «Առանց գիտության, տեխնիկայի, փորձի, զանազան ճյուղերի մասնագետների ղեկավարության անկարելի է սոցիալիզմին անցնելը» (ԵԼԺ, հ. 36, էջ 219)։

Այժմ երկրում գործում է 891 բարձրագույն ուսումնական հաստատություն, որոնցում ուսանում է 5,3 միլիոն մարդ։ 1940—41 թթ. համեմատությամբ, բարձրագույն ուսումնական հաստատությունների շրջանավարտների թիվը 1981—82 թթ. աճել է 6,6 անգամ և հասել 831,2 հազար մարդու (СССР в цифрах в 1981 г., М., 1982, стр. 210)։

Արագ տեմպերով է զարգանում բարձրագույն կրթությունը Հայկական ՍՍՀ-ում։ Վերջին 40 տարում հանրապետության բուհերի թիվը հասել է 13-ի, իսկ դրանցում սովորող ուսանողների թիվն աճել է ավելի քան 5 անգամ և կազմել 58,6 հազար։ 1982 թ. բուհերն ավարտել է 11 հազար մարդ։

Բարձրագույն կրթության համակարգի զարգացման արագ տեմպերի պայմաններում մասնագետների պատրաստման ու օգտագործման սոցիալ-տնտեսական կարևոր պրոբլեմ են ամբողջ աշխատուժի կառուցվածքային փոփոխությունները՝ բարձրագույն կրթությամբ մասնագետների տեսակարար կշռի աճի միտումով։ 1940-ից մինչև 1982 թվականն ընդգրկող ժամանակամիջոցում բարձրագույն կրթությամբ մասնագետների տեսակարար կշիռը ՍՍՀՄ-ում զբաղված բնակչության ընդհանուր թվաքանակի մեջ 2,7 տոկոսից հասել է 11-ի։ Իսկ Հայկական ՍՍՀ-ում՝ համապատասխանաբար 4,7-ից 13,3 տոկոսի։

Արտադրության մեքենայացումն ու ավտոմատացումը, տնտեսական մեխանիզմի, կառավարման և պլանավորման հետագա կատարելագործումը, գիտության վերածումն անմիջական արտադրաուժի, ժողովրդի կուլտուրական մակարդակի աճը բարձրագույն կրթությամբ մասնագետների տեսակարար կշռի մեծացման հիմնական սոցիալ-տնտեսական պայմաններն են։

Մասնագետների հարաբերական աճն արդյոք ունի՞ որոշակի սահմաններ, թե՞ դա մշտապես գործող, օբյեկտիվ միտում է։ Սովետական բարձրագույն դպրոցի զարգացումը վկայում է, որ զբաղված բնակչության ընդհանուր թվաքանակի մեջ բարձրագույն կրթությամբ մասնագետների տեսակարար կշիռն աճում է։ Դա հիմք է հանդիսացել գրականության մեջ արտահայտելու այն կարծիքը, թե այդ պրոցեսն ունի մշտական զարգացման միտում, պատճառաբանելով, որ բարձրագույն կրթության համակարգը հնարավոր է ընդլայնել մինչև այնպիսի մի մակարդակի, երբ կրթության պահանջ զգացող ամեն ոք կկարողանա բավարարել այն։ Սակայն հարկավոր է հաշվի առնել, որ բարձրագույն կրթություն ստանալու բնակչության պահանջմունքնածանցյալ է այդպիսի կրթությամբ մասնագետների հասարակության պահանջմունքի համեմատ։ Ուստի միայն դրա հիման վրա կարելի է սահմանել բարձրագույն կրթության մասշտաբները, կառավարել այդ ասպարեզում բնակչության պահանջմունքները։ Բարձրագույն կրթությամբ մասնագետների թվաքանակի աճը սահմանափակում են որոշակի գործոններ, ինչպես, օրինակ, տնտեսական մեխանիզմի նորմալ գործունեության համար անհրաժեշտ մինչբուհական որակավորում ունեցող աշխատուժը, բարձրագույն կրթության համակարգն ընդլայնելու հասարակության հնարավորությունները և այլն։ Կադրերի պատրաստումն ընդլայնելու վրա ազդում է նաև դեմոգրաֆիական գործոնը, որը նույնպես չի կարելի անտեսել։ Աշխատուժի մեջ կատարված կառուցվածքային տեղաշարժերը, բարձրագույն կրթությամբ մասնագետների տեսակարար կշռի ավելացման առումով, հավանաբար կշարունակվեն նաև ապագայում, սակայն մինչև որոշակի աստիճանի, որը սահմանափակված կլինի վերը նշված օբյեկտիվ գործոններով։ Այսպես, արդեն այսօր ինչպես Միությունում, այնպես էլ Հայկական ՍՍՀ-ում, բուհերի ընդունելությունը կայունացել է։ Աշխատանքի

ինտելեկտուալացման նկատմամբ գիտատեխնիկական հեղափոխության առաջադրած պահանջը վերաբերում է ողջ աշխատուժին։ ԳՏՀ-ի պայմաններում անհրաժեշտ են գիտական բարձր որակավորում ունեցող մարդիկ, բայց այդ պահանջը վերաբերում է կրթության ողջ համակարգի կատարելագործմանը, և չպետք է մեկնաբանվի միակողմանի՝ բարձրագույն կրթությամբ կադրերի պատրաստման առավել բարձր տեմպերի և մասշտաբների մեծացման իմաստով։

Մինչդեռ համապատասխան որոշումներում, ուսումնական հաստատությունների աշխատողների խորհրդակցություններում բազմիցս շեշտվել է, որ բարձրագույն դպրոցը երկրում հասարակական պահանջմունքները բավարարում է հիմնականում քանակապես։ ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումը նշեց, որ մեզ լրիվ չափով չի բավարարում ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերի համար մասնագետների պատրաստման մակարդակը։ Այս պայմաններում մասնագետների թվի հետագա հարաբերական աճն արդեն վերածվում է էկոնոմիկայի զարգացման էքստենսիվ գործոնի։ Այնինչ, սոցիալիստական վերարտադրության ողջ պրոցեսի, այդ թվում և կրթության համակարգի նկատմամբ գիտատեխնիկական հեղափոխության հարուցած ամենահրատապ պահանջն անցումն է ինտենսիվ գործոնների, մասնագետների պատրաստման և դրանց օգտագործման արդյունավետության աճի պրոբլեմի կոմպլեքսային լուծման։

Ուսանողների ընտրությամբ է սկսվում մասնագետի ձևավորման պրոցեսը և բուհերի համար կատարվող ճիշտ ընտրությամբ է մեծապես պայմանավորված ապագա մասնագետների որակը, նրանց օգտագործման արդյունավետությունը։ Ներկայումս կիրառվում են բուհերի ընտրության հետևյալ ձևերը՝ ըստ մասնագիտական (մասնագիտական ընտրություն) և ֆիզիկական պիտանիության, ըստ գիտելիքների և սոցիալական կազմի։ Եթե ըստ ֆիզիկական պիտանիության և ըստ գիտելիքների մակարդակի ընտրությունը կիրառվում է բոլոր բուհերում, ապա մասնագիտական ընտրությունը կատարվում է մասնագիտությունների մի աննշան շրջանի համար (արվեստ, ֆիզկուլտուրա և սպորտ) ու, որպես կանոն, կրում է մասնագիտությունից լրացուցիչ քննության բնույթ։

Մրցութային քննություններն այսօր ըստ գիտելիքների ընտրության առավել ընդունելի ձևն են։ Սակայն դրա հիմնական թերությունն այն է, որ հիշողության, գիտելիքների ծավալի գնահատումն իր ձևով ի վիճակի չէ բացահայտելու դիմորդի տրամաբանական մտածողության, մտքի վերլուծականության, ստեղծագործական ունակությունները։ Հետևաբար, ըստ գիտելիքների ընտրության ձևերի ու մեթոդների կատարելագործումը բարձրագույն կրթության ողջ համակարգի արդյունավետության բարձրացման կարևոր պայմանն է։

ԳՏՀ-ի պայմաններում բուհերում ուսուցման բովանդակության պրոբլեմն առաջին հերթին ընդհանուր գիտական լայն պատրաստման ճիշտ զուգակցումն է նեղ մասնագիտացման հետ։ Այսօր բարձրագույն կրթության համակարգի զարգացումն առաջադրում է մասնագիտությունների մշտական դիֆերենցման ու ինտեգրացման պրոբլեմը, դրանց ռացիոնալ զուգակցումը հասարակական պահանջմունքների հետ։ Այժմ հասարակության և ԳՏՀ-ի պահանջներն առաջին պլան են մղում մասնագիտությունների ինտեգրացման պրոցեսը։ Դա ելնում է գիտության ինտեգրացումից, որը տեղի է ունենում գիտությունն անմիջական արտադրողական ուժի վերածվելու պայմաններում։

Սակայն այժմ տեղի է ունենում մասնագիտությունների ոչ թե խոշորացման, այլ հետագա տարբերակման պրոցես։ Եթե 1958 թվականին երկրի բուհերը կադրեր էին պատրաստում 319 մասնագիտություններով, ապա այսօր՝ ավելի քան 420 մասնագիտությունների և 700 մասնագիտացումների գծով։

Մասնագետների պատրաստման աշխատանքի առանցքը սովորողներին գիտության ընդհանուր օրինաչափություններն ու հիմունքները, հետազոտության մեթոդաբանությունը հաղորդելն է, ինքնուրույն մտածողության, տրամաբանական վերլուծության, ինչպես նաև ինքնապատրաստման, ինքնուրույն աշխատանքի հմտությունների զարգացումը։ Արդի ԳՏՀ-ի պահանջներին համապատասխան՝ բարձրագույն դպրոցը կոչված է ձևավորելու մտածողության ոճ, այլ ոչ թե սովորողների հիշողությունը ծանրաբեռնելու բազմապիսի տեղեկություններով։

Բարձրագույն կրթության համակարգի ինտենսիվացման, մասնագետների պատրաստման որակի բարձրացման կարևոր պրոբլեմ է կրթության վրա կատարվող ծախսումների աճի միտումը։ Մեր կարծիքով, անհրաժեշտ է ապահովել կրթության համակարգում կապիտալ ներդրումների աճի առաջանցիկ տեմպերը՝ նյութական արտադրության և գիտության մեջ կատարվող ներդրումների համեմատությամբ։ Դա բացատրվում է աշխատանքի գործադրման մյուս ոլորտների համեմատությամբ կրթության ողջ ոլորտի առաջանցիկ զարգացման անհրաժեշտությամբ, քանզի սոցիալիզմի օրոք գիտատեխնիկական հեղափոխության ազդեցությամբ կրթությունը դառնում է աշխատուժի վերարտադրության, մարդու համակողմանի զարգացման կարևորագույն գործոն։ Մինչդեռ մեզ մոտ կրթության ծախսերը 4,4 անգամ պակաս են ժողովրդական տնտեսության մեջ կատարվող կապիտալ ներդրումներից։ Ըստ մասնագետների հաշվարկների, կրթության ծախսումների բաժինը ազգային եկամտի նկատմամբ անհրաժեշտ է ներկայիս 7 տոկոսից 1990 թվականին հասցնել 12 տոկոսի, իսկ այնուհետև գերազանցել կրթության համար մյուս զարգացած երկրների ծախսումների հարաբերական մակարդակը (տե՛ս Научно-образовательный потенциал Сибири. «Наука», 1980, стр. 150)։

Հայկական ՍՍՀ-ում ազգային եկամտի նկատմամբ կրթության համար կատարվող ծախսերի ցուցանիշն առավել ցածր է։ Բացի դրանից, նկատվում է դրա նվազման միտում (1970 թվականի 4,5 տոկոսից մինչև 3,9 տոկոսի՝ 1981 թվականին)։ Բարձրագույն կրթության վրա կատարվող ծախսերը ազգային եկամտի նկատմամբ հանրապետությունում վերջին տասը տարում չի փոխվել և մնացել է մեկ տոկոսի մակարդակով (հաշվարկը կատարված է ըստ «Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսությունը» հոբելյանական վիճակագրական տարեգրքի, Երևան, 1982)։

Անհրաժեշտ է նշել, որ կրթության համակարգի ցանկացած մակարդակում դասախոսական կազմի որակական աճը հնարավոր է միայն այն դեպքում, եթե նրա աշխատավարձը մյուս ճյուղերի համանման որակավորում ունեցող մասնագետների աշխատավարձից ցածր չէ։

Կրթության համակարգում կարևոր է ըստ պատրաստության մակարդակի ուսուցման տարբերակման պրոբլեմը, բարձրագույն կրթության երկաստիճան համակարգի ստեղծումը։ Դեռևս 70-ական թվականներին ակադեմիկոսներ Ն. Բելյաևը, Մ. Լավրենտևը, պրոֆեսոր Վ. Կիրիլով-Ուգրյումովը առաջարկում էին անցնել բարձրագույն կրթության երկաստիճան համակարգի։

Ըստ պատրաստության մակարդակի տարբերակման անհրաժեշտությունը բխում է առաջին հերթին մասնագետների օգտագործման ոլորտի պահանջմունքներից, հանրային արտադրությունն արդյունավետ դարձնելու նկատմամբ ԳՏՀ-ի առաջադրած պահանջներից։ Տնտեսական և կուլտուրական գործունեության ամեն մի ոլորտում էլ կան այնպիսի աշխատանքներ, որոնց կատարման համար պահանջվում է բարձրագույնից ցածր, բայց միջնակարգ մասնագիտականից բարձր կրթություն։ Այժմ այդպիսի աշխատանք հիմնականում կատարում են բարձրագույն կրթությամբ մասնագետները։ Բարձրագույն կրթության երկաստիճան համակարգի անցնելու հնարավորությունը բխում է բուհերում պատրաստականության, ընդունակությունների ու հակումների տարբեր մակարդակ ունեցող ուսանողների առկայությունից։

Մասնագետների պատրաստման պրոցեսի արդյունավետության ու որակի բարձրացման կարևոր պրոբլեմ է բուհերի գործունեությունն ըստ վերջնական արդյունքների գնահատելու ցուցանիշների մշակումը։ Առ այսօր բուհերի աշխատանքի գնահատումն ըստ առաջադիմության տոկոսի հանգեցնում է օբյեկտիվության նվազեցման, իրական արդյունքների համահարթման, ուսումնական հաստատությունների դաստիարակչական ֆունկցիաների արդյունավետության իջեցման, անբավարար առաջադիմության պատճառով մաղումների արհեստական կրճատման։ Մեր կարծիքով, առաջադիմության պատճառով

մաղման չափը չպետք է արհեստականորեն սահմանափակվի, և դա կդառնա ուսուցման պրոցեսի որակի բարձրացման խթանիչ գործոն։

Գիտատեխնիկական հեղափոխության նվաճումների ներդրման, հասարակական արտադրության արդյունավետ գործունեության հարցում որոշիչ նշանակություն ունի բարձր որակավորում ունեցող մասնագետների ռացիոնալ և արդյունավետ օգտագործումը, որը երկկողմանի անմիջական կապի մեջ է մասնագետների պատրաստման հետ։ Որքան ավելի արդյունավետ է «օգտագործում—պատրաստում» կապը, այնքան ավելի արդյունավետ է «պատրաստում—օգտագործում» կապի հատուցումը։ Սակայն հանրային արտադրությունն արդյունավետ դարձնելու նկատմամբ ԳՏՀ-ի ներկայացրած պահանջները «օգտագործում—պատրաստում» կապն ամրապնդելուց բացի առաջադրում է մասնագետների օգտագործումն անմիջապես արդյունավետ դարձնելու մի շարք պրոբլեմներ։

Մասնագետների արդյունավետ օգտագործման պրոբլեմն ունի երկու ասպեկտ։ Առաջին՝ մասնագետների ռացիոնալ տեղաբաշխումը ըստ ժողովրդական տնտեսության ճյուղերի և տվյալ ռեգիոնի քաղաքների ու շրջանների։ Ֆունկցիոնալ տեսակետից դա մտնում է բարձրագույն կրթության համակարգի մեջ։ Երկրորդ՝ մասնագետների արդյունավետ օգտագործումն անմիջականորեն աշխատատեղում, նրա արտադրողականության բարձրացումը։ Այս ֆունկցիաները դուրս են բարձրագույն կրթության համակարգի շրջանակներից և մտնում են կադրերին օգտագործող ճյուղային մինիստրությունների, գերատեսչությունների ու մարմինների իրավասության մեջ։ Ընդ որում առաջին ասպեկտը կանխորոշում է երկրորդը։

Հանրապետությունում երիտասարդ մասնագետների տեղաբաշխման ընդհանուր վիճակի վերլուծությունը վկայում է, որ ամեն տարի բուհական շրջանավարտների 10 տոկոսը չի մեկնում նշանակված վայրերը, որը, ինչ խոսք, չի նպաստում հանրապետության ժողովրդական տնտեսության զանազան ճյուղերում և շրջաններում մասնագետներով հագեցվածության անհամամասնության հաղթահարմանը։ Այսպես, 1975-ից մինչև 1982 թվականն ընդգրկող ժամանակաշրջանում հանրապետության գյուղատնտեսության մինիստրության երկու բուհերի շրջանավարտների թիվն աճել է 1,2 անգամ։ Իսկ հանրապետության գյուղատնտեսության հագեցվածությունը բարձրագույն կրթությամբ մասնագետներով նույն ժամանակաշրջանում աճել է միայն 1,05 անգամ։

Այժմ գյուղատնտեսական բարձրագույն կրթություն ունեցող 10,2 հազար մասնագետներից, որոնք զբաղված են Հայկական ՍՍՀ ժողովրդական տնտեսության մեջ, անմիջականորեն գյուղատնտեսության մեջ աշխատում է 4,7 հազարը, այսինքն՝ կեսից պակասը։ Համանման է նաև մանկավարժական, համալսարանական, մի քանի տեխնիկական կադրերի օգտագործման պատկերը։

Կադրերի օգտագործման պրոբլեմներ են հարուցում նաև մասնագետների տարածքային տեղաբաշխման անհամամասնությունները։ Այսպես, Երևան քաղաքի տեսակարար կշիռը հանրապետությունում զբաղված բնակչության թվաքանակում կազմում է մոտ 40 տոկոս, մինչդեռ այստեղ զբաղված է բարձրագույն կրթությամբ մասնագետների 70 տոկոսից ավելին։ Արտադրամիավորումների պաշտոնական նոմենկլատուրաների ապահովվածությունը մասնագետներով հանրապետության զանազան շրջանների մասնաճյուղերում 3—5 անգամ ավելի քիչ է, քան մայրաքաղաքում գտնվող ձեռնարկություններում։ Դրա հետևանքով Երևանում բարձրագույն կրթությամբ մասնագետների շրջանում նկատվում է կատարվող ֆունկցիաների առավել մեծ անհամապատասխանություն ստացած բազային կրթության հետ։ Մասնագետների տեղաբաշխման ու օգտագործման հիմնական պրոբլեմը դրանց նկատմամբ պահանջմունքի պլանավորման ու կանխատեսման անբավարար մակարդակն է։ Միշտ չէ, որ նորմավորումը կատարվում է գիտական մակարդակով։ Մասնագետների նկատմամբ պահանջմունքը որոշելու համար անհրաժեշտ է համակողմանիորեն հաշվի առնել ճյուղի զարգացման պլանային և տեխնիկատնտեսական ցուցանիշները՝ արտադրության ծավալը, աշխատողների թվակազմը, արտադրողականության աճը,



նոր տեխնիկայի և աշխատանքի գիտական կազմակերպման արմատավորումը, կապիտալ ներդրումների ծավալը, գիտության, կուլտուրայի, սպասարկման ոլորտի զարգացումը և այլն։ Սակայն համապատասխան մեթոդիկաների անբավարար մշակվածության պատճառով չի ապահովվում այսպիսի համակողմանի կապակցումը։

Մասնագետների պատրաստման ու տեղաբաշխման պլանավորման մյուս լուրջ պրոբլեմը ձեռնարկությունների և ճյուղային մինիստրությունների ներկայացրած հայտերի ուռճացածությունն է։ Դա բացատրվում է ռեալ պահանջը որոշելու համար գիտականորեն հիմնավորված նորմաների բացակայությամբ, ինչպես նաև այն հանգամանքով, որ մասնագետների անվճար (ձեռնարկությունների համար) օգտագործումը շահավետ է դառնում, երբ նրանք զբաղեցնում են բարձրագույն կրթություն չպահանջող հաստիքներ։ Այս պրոբլեմը լուծելու համար անհրաժեշտ է երկարաժամկետ փոխկապվածություն բուհերի ու արտադրության միջև, ձեռնարկությունների տնտեսական ու իրավական պատասխանատվության ուժեղացում՝ մասնագետների ոչ ռացիոնալ օգտագործման համար։ Տվյալ պրոբլեմի լուծման ճանապարհին կարևոր քայլ կհանդիսանա և՛ ճյուղային, և՛ տերիտորիալ առումով մասնագետների պատրաստումն ու տեղաբաշխումը կառավարելու միասնական համակարգի ստեղծումը։ Այստեղից հետևում է նաև ապրանքափողային հարաբերությունների և համապատասխան տնտեսական լծակների առավել լրիվ կիրառման անհրաժեշտությունը մասնագետների տեղաբաշխման ու օգտագործման հարցում։

Բարձրագույն կրթությամբ մասնագետների օգտագործման արդյունավետության աճը արդի ԳՏՀ-ի պայմաններում անմիջականորեն առնչվում է ետբուհական ուսուցման համակարգի զարգացման ու կատարելագործման հետ, որը ճիշտ կլինի հանձնել բարձրագույն դպրոցի իրավասությանը։ Բուհում մասնագետների ստացած կրթության և կիրառական գիտության ու արտադրության պահանջների միջև, ինչպես նաև գիտելիքների արագ հնանալու հետևանքով օբյեկտիվորեն առկա ճեղքվածքի վերացման անհրաժեշտությունը պահանջում է աշխատանքային ողջ գործունեության շրջանում մշտական ուսուցման կազմակերպում։ Հենց բուհերն են, որ իրենց գիտական պոտենցիալով և նյութատեխնիկական բազայով ի վիճակի են ստանձնելու այդ գործը։ Բացի դրանից, ետբուհական ուսուցումը պետք է տրամաբանորեն կապակցված լինի բուհական ծրագրերի հետ։

Բարձրագույն կրթությամբ մասնագետների ճիշտ տեղաբաշխման ու օգտագործման, հատկապես մեր հանրապետության պայմաններում մասնագետներով ճյուղային ու տերիտորիալ հագեցվածության անհամամասնությունների վերացման հրատապ պրոբլեմ է ծայրամասային, առավել ևս գյուղական շրջանների սոցիալ-կենցաղային թույլ ինֆրակառուցվածքը, որը, բնականաբար, դուրս է բարձրագույն կրթության համակարգի իրավասության շրջանակներից։

Մասնագետների պատրաստման հանգուցային պրոբլեմը ուսուցման և սովորողների կոմունիստական դաստիարակության օրգանական միաձուլումն է, առանց որի արդի պայմաններում անհնար է խոսել բարձրագույն կրթության ողջ մեխանիզմի արդյունավետ գործունեության մասին։ Այս պահանջը հստակորեն ձևակերպված է ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1983 թվականի հունիսյան պլենումում, որտեղ նշվեց, թե կուսակցությունը ձգտում է հասնել նրան, որ մարդը մեզ մոտ դաստիարակվի ոչ թե որպես պարզապես գիտելիքների որոշակի պաշար կրող, այլ նախ և առաջ որպես սոցիալիստական հասարակության քաղաքացի, կոմունիզմի ակտիվ կառուցող՝ իրեն հատուկ գաղափարական հիմնադրույթներով, բարոյականությամբ ու հետաքրքրություններով, աշխատանքի ու վարվելակերպի բարձր կուլտուրայով։

---

# ԳՅՈՒՂԻ ՍՈՑԻԱԼ-ԴԱՍԱԿԱՐԳԱՅԻՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ՓՈՓՈԽՄԱՆ ՄԻՏՈՒՄՆԵՐԸ

Ա. ԽՈՋՈՅԱՆ

ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ արդի փուլում, երբ առավել դինամիկ բնույթ են կրում հասարակական տեղաշարժերը, փոխվում է նաև բնակչության սոցիալ-դասակարգային կառուցվածքը: Որակապես փոխվել է հանրապետությունների սոցիալական կառուցվածքը, նրանցից յուրաքանչյուրում աճել է ժամանակակից բանվոր դասակարգ, նոր, կոլտնտեսային ուղիով է ընթանում գյուղացիությունը, ստեղծվել է սեփական մտավորականություն, դաստիարակվել են որակյալ կադրեր պետական և հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Դա պայմանավորված է էկոնոմիկայի ասպարեզում կուսակցության իրականացրած խոշոր միջոցառումներով, որոնց շնորհիվ առաջընթաց լուրջ քայլ կատարվեց միջդասակարգային տարբերությունների վերացման բնագավառում: Իսկ հասարակության սոցիալական կառուցվածքը պահանջում է ակնդետ ուշադրություն, քանզի այն «...բնորոշվում է այնպիսի փոփոխություններով, որոնք եթե չպարզաբանվեն, անկարելի կլինի մի քայլ անգամ անել հասարակական գործունեության ցանկացած բնագավառում» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 20, էջ 228):

Հասարակության սոցիալական միատարրության տանող ուղու կարևորագույն նախապայմանը բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության միջև սոցիալ-դասակարգային տարբերությունների վերացումն է: Այդ խնդրի լուծման նպատակով ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումից հետո կարևոր միջոցառումներ են իրականացվել լենինյան այն կանխատեսման հիման վրա, ըստ որի անհրաժեշտ է «...անգիտակցաբար, հնօրյա ձևով տարվող հողագործության զբաղմունքը դարձնել մի այնպիսի զբաղմունք, որը հիմնված է գիտության և տեխնիկայի նվաճումների վրա» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 37, էջ 444):

Վերջին մեկուկես տասնամյակում գյուղատնտեսության հիմնական արտադրաֆոնդերն աճել են ավելի քան երեք անգամ և 1982 թվականին հասել 272 **մլրդ** ռուբլու: Գյուղատնտեսության էներգետիկ հզորությունները մեծացել են 2,8 անգամ՝ հասնելով 665,8 մլն ձիաուժի, իսկ մեկ աշխատողի աշխատանքի էներգազինվածությունը 1982 թվականին կազմել է 28,3 ձիաուժ՝ ավելանալով 3,3 անգամ: Հայկական ՍՍՀ-ում գյուղատնտեսության էներգետիկ հզորությունները 1965—1982 թվականներին ավելացել են 2,3 անգամ, բայց մեկ աշխատողի աշխատանքի էներգազինվածությունը դեռևս բավականին ցածր է միութենական միջին ցուցանիշից:

1970—1980-ական թվականներին նկատելիորեն ընդլայնվեց տեխնիկական պարկը: Եթե մինչ այդ գյուղատնտեսությունն ստանում էր միայն առանձին մեքենաներ, տասներորդ հնգամյակում անցում կատարվեց դեպի ավարտուն կոմպլեքսային մեխանիզմների արտադրությունը՝ հողագործության և անասնապահության արտադրապրոցեսների լրիվ մեքենայացման նպատակով:



Գիտատեխնիկական առաջընթացի հասումների ներդրումը և արդյունաբերական հիմքի վրա գյուղատնտեսական արտադրության կազմակերպումը հանգեցնում է գյուղում նոր, ինդուստրիալ տիպի աշխատողի ձևավորմանը: Խոսքն ամենից առաջ վերաբերվում է մեխանիզատորներին, որոնք, հանդիսանալով գյուղացիության մի մասը, միաժամանակ տարբերվում են նրանից իրենց սոցիալական ակտիվությամբ ու կրթությամբ և աշխատանքի բնույթով մոտ են բանվոր դասակարգի արդյունաբերական ջոկատին:

Գյուղական մեխանիզատորների սոցիալական դերի աճը պայմանավորված է ոչ միայն նրանով, որ գյուղատնտեսության տեխնիկական վերելքը պահանջում է տրակտորիստ-կոմբայնավարների, տրակտորիստների, վարորդների թվաքանակի արագ աճ, այլև այն բանով, որ ավելանում է նոր մասնագիտությունների ու մասնագետների պահանջարկը: Այսպես, ժամանակակից գյուղում աշխատում են էլեկտրիկներ, մեքենայական կթի վարպետներ, ռադիոտեխնիկներ, փականագործներ և շատ այլ մասնագետներ:

Մեքենայացման մակարդակի աննախադեպ աճի հետևանքով կոլտնտեսություններում մեխանիզատորների թիվը 1965 թվականի 1.876 հազարից 1983 թվականին հասավ 2.224 հազարի, այսինքն՝ ավելացավ գրեթե 1,2 անգամ: Նույն ժամանակամիջոցում կոլտնտեսականների թվաքանակը 18,9 միլիոնից իջել է 13,1 միլիոնի (1,4 անգամ): Այս տեղաշարժն առավել ցայտուն է դարձնում մեխանիզատորների տեսակարար կշռի աճը կոլտնտեսություններում, և եթե 1965 թվականին 10 կոլտնտեսականներից մեկն էր մեխանիզատոր, ապա 1983 թվականին՝ 6-ից մեկը: Ընդ որում երկրի մասշտաբով մեխանիզատորների թիվը դեռևս չի համապատասխանում գյուղատնտեսական արտադրության պահանջներին, մասնագետների կարծիքով, նույնիսկ արդի պայմաններում պահանջարկը կրկնակի անգամ գերազանցում է առաջարկին:

Դրությունը նույնն է նաև մեր հանրապետությունում: Կոլտնտեսային գյուղացիության մեջ մեխանիզատորների տեսակարար կշռի աճը միջին միութենականի համեմատությամբ դեռևս ցածր է (1983 թվականին Հայկական ՍՍՀ-ի կոլտնտեսություններում աշխատում էր 7,4 հազար մեխանիզատոր, այսինքն՝ 10 կոլտնտեսականից մեկը): Այնուամենայնիվ, կոլտնտեսություններում մեխանիզատորների տեսակարար կշիռը տասնամյակի ընթացքում բավականին աճել է: Այսպես, եթե 1972 թվականին մեկ կոլտնտեսությանը միջին հաշվով հասնում էր 17 մեխանիզատոր, ապա 1982 թվականին՝ 26 մեխանիզատոր, թեև նշված ժամանակաշրջանում նկատելիորեն կրճատվել է կոլտնտեսությունների թիվը:

Գյուղատնտեսական արտադրությունը մեխանիզատորական կադրերով ապահովելու համար 70-ական թվականներին կատարելագործվեց և ընդլայնվեց միջնակարգ մասնագիտական ուսումնարանների ցանցը: Դրա շնորհիվ մեխանիզատորական կադրերի թվաքանակը միայն 1982 թվականին երկրում ավելացավ 1.460 հազարով, 1965 թվականի 773 հազարի փոխարեն: Մեր հանրապետությունում նույն ժամանակամիջոցում մեխանիզատորական կադրերի պատրաստումը 1.603-ից հասավ մինչև 7.798 մարդու: Բացի դրանից, շատ դպրոցներում ընդհանուր կրթությանը զուգահեռ իրագործվում է նաև աշխատանքային ուսուցում, իսկ 9—10-րդ դասարանների 83,1 հազար աշակերտների 27,1 տոկոսը ստանում է գյուղատնտեսական արտադրության զանազան մասնագիտություններ: Սակայն նրանց զգալի մասը տարբեր պատճառներով չի աշխատում ըստ մասնագիտության: Մեխանիզատորները գյուղում կենտրոնական դեմք են և անհրաժեշտ է այդ կադրերի նկատմամբ լինել հոգատար, ուշադիր, ջանք չխնայել կոլտնտեսություններում ու սովխոզներում նրանց ամրացնելու համար:

Մեխանիզատորների թվաքանակի ավելացումից բացի, կարևոր նշանակություն ունի նրանց որակավորումը, որովհետև մշտապես բարդանում է աշխատանքը, արտադրությունն ստանում է նոր, առավել կատարյալ մեքենաներ: 1982 թվականին երկրի բոլոր կոլտնտեսություններում իրենց որակավորումը բարձրացրել են 2.923 հազար մասնագետներ, որը 1970 թվականի համեմատությամբ ավելի է երկու անգամ: Սակայն կադրերի պատրաստման և վերապատրաստման գործող սիստեմը լի-

վին չի համապատասխանում արդի պահանջներին: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1982 թվականի մայիսյան պլենումում, գյուղի համար կադրերի պատրաստման և վերապատրաստման սիստեմը բավարար չափով չի համապատասխանում արտադրության աճած պահանջներին: Մասնավորապես գյուղատնտեսական ուսումնական հաստատություններ քիչ են ուղարկվում երիտասարդներ կոլտնտեսությունների և սովխոզների երաշխավորությամբ: Գյուղատնտեսությունը բարձրորակ կադրերով ապահովելը լրջորեն նպաստում է արտադրության զարգացմանը, կոմպլեքսային մեքենայացմանը, միջտնտեսային կոոպերացմանը և ագրոարդյունաբերական ինտեգրացման տեմպերի արագացմանը:

Վերջին տասնամյակում իրականացվել են գյուղատնտեսական արտադրության ինտենսիվացմանն ուղղված մի շարք կարևոր միջոցառումներ, որոնց շնորհիվ ագրոարդյունաբերական ինտեգրացման համար ստեղծվեցին առավել նպաստավոր պայմաններ: Այդ գործում կարևոր ուղենիշ է ՍՄԿԿ Կենտկոմի «Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման բազայի վրա գյուղատնտեսական արտադրության մասնագիտացումն ու համակենտրոնացումն է՛լ ավելի զարգացնելու մասին» 1976 թվականի և «ՍՍՀՄ գյուղատնտեսության հետագա զարգացման մասին» 1978 թվականի որոշումները, որոնց հետևողական կենսագործումն արագացնում է ագրոարդյունաբերական ինտեգրացման պրոցեսները: Այսպես, 1982 թվականին միջտնտեսային ձեռնարկությունների թիվը հասավ 9.767-ի՝ 1970 թվականի 4.580-ի դիմաց, իսկ անդամ-տնտեսությունների թիվը 68.721-ից աճեց մինչև 159.732-ի:

Մեր հանրապետությունում 1982 թվականի վերջին կային 77 միջտնտեսային ձեռնարկություններ, կազմակերպություններ, միավորումներ, որոնց ընդհանուր թվից գյուղատնտեսական ուղղություն ունեին 66-ը: Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման հետագա զարգացման գործում մեծ նշանակություն ունեցավ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1982 թվականի մայիսյան պլենումը, որն ընդունեց ՍՍՀՄ պարենային ծրագիրը: Վերջինիս հիմնական ուղղություններից մեկն ագրոարդյունաբերական կոմպլեքսի համամասնական և հաշվեկշռված զարգացումն է, դրա բոլոր ճյուղերում կառավարման, պլանավորման և տնտեսական խթանման կատարելագործումը՝ արտադրությունն առավելագույնս կողմնորոշելով դեպի վերջնական բարձր արդյունքների ձեռքբերումը: Այդ նպատակով տասնմեկերորդ հնգամյակում գյուղատնտեսությանը հատկացված են 189,6 **մլրդ** ռուբլու կապիտալ ներդրումներ: Դա անշուշտ գյուղատնտեսության աննախադեպ զարգացման կարևոր երաշխիք է, սակայն այժմ հիմնական խնդիրը կատարվող ներդրումների արդյունավետության ապահովումն է, որին ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. դեկտեմբերյան պլենումը տվեց առանձնահատուկ նշանակություն:

«Հանրապետությունների, երկրամասերի, մարզերի կուսակցական ու սովետական մարմինների առաջնահերթ պարտականությունն է,— նշվեց պլենումում,— հաստատակամորեն մեծացնել գյուղատնտեսության մեջ ստեղծված պոտենցիալի օգտագործումը, ագրոարդյունաբերական համալիրի զարգացման համար տրամադրվող ռեսուրսների հատույցը, նպատակ ունենալով լիովին լուծելու բնակչությանը սննդամթերքի մատակարարման խնդիրը»: Ագրոարդյունաբերական ինտեգրացման միջոցով հողագործության և անասնապահության սինթեզն արդյունաբերության հետ և դրա շնորհիվ բարձր արդյունքների ստացումը հարցի միայն մեկ՝ տնտեսական կողմն է: Ագրոարդյունաբերական ինտեգրացումն օժանդակում է աշխատանքային ռեսուրսների առավել համաչափ և լրիվ օգտագործմանն ամբողջ տարվա ընթացքում (գյուղատնտեսության բնագավառում աշխատանքների սեզոնայնության պատճառով տարեկան գյուղատնտեսական արտադրության մեջ կորչում է աշխատաժամանակի մինչև 30 տոկոսը), նպաստում է բնակչության նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացմանը: Այն միաժամանակ առաջընթաց քայլ է բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության միջև առկա սոցիալ-դասակարգային տարբերությունների վերացման ճանապարհին: Ինչպես նշվեց ՍՄԿԿ XXVI համագումարում, «Գյուղի սոցիալական կառուցվածքի վրա մեծ ազդեցություն են գործում սոցիալիստական



սեփականության երկու ձևերի մերձեցումը, միջտնտեսային կազմակերպությունների զարգացումը, որոնց մասնակցում են թե՛ կոլտնտեսությունները, թե՛ պետական ձեռնարկությունները» (**ՍՄԿԿ XXVI համագումարի նյութերը,** էջ 85):

60—70-ական թվականներին նոր սովխոզների կազմակերպումը, ինչպես նաև տնտեսապես թույլ կոլտնտեսությունների բազայի վրա գյուղատնտեսական պետական ձեռնարկությունների ստեղծումը, իրականացված մյուս միջոցառումները մեծ ազդեցություն գործեցին գյուղի սոցիալ-դասակարգային կառուցվածքի վրա: Զգալիորեն ավելացավ գյուղում աշխատող բանվորների թիվը՝ ի հաշիվ կոլտնտեսականների թվի:

Հանրապետությունում արագորեն մեծանում է բանվոր դասակարգի ագրարային ջոկատի տեսակարար կշիռը, և կոլտնտեսային գյուղացիությունը տակավին 1970 թվականին գյուղում արդեն մեծամասնություն չէր:

ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումը, անդրադառնալով սոցիալիստական սեփականության երկու ձևերին, նշեց, որ այդ երկու ձևերի միավորումը մեկ համաժողովրդական սեփականության մեջ տեղի կունենա ոչ թե կոլտնտեսությունները մեխանիկորեն սովխոզների վերածելու միջոցով: Պրակտիկան ցույց է տալիս, որ կան այլ ուղիներ, օրինակ՝ ագրոարդյունաբերական ինտեգրացումը, միջկոլտնտեսային և կոլտնտեսային-սովխոզային միավորումների զարգացումը:

Ագրոարդյունաբերական ինտեգրացման շնորհիվ հաղթահարվում են ոչ միայն միջդասակարգային՝ բանվոր դասակարգի և կոլտնտեսային գյուղացիության, այլև ներդասակարգային՝ բանվոր դասակարգի արդյունաբերական և ագրարային ջոկատների միջև եղած սոցիալական տարբերությունները: Այս առումով ագրոարդյունաբերական միավորումները սովխոզների համեմատությամբ ունեն որոշակի առավելություններ, որոնք հիմնականում վերաբերվում են կոմպլեքսային մեքենայացման առավել բարձր մակարդակին: Մինչդեռ մեր հանրապետությունում կոմպլեքսային մեքենայացումը դեռևս բավարար մակարդակի վրա չի գտնվում, սովխոզների և կոլտնտեսությունների զգալի մասը բազմաճյուղ են, դեռևս մեծ է ձեռքի աշխատանքով զբաղվածների թիվը: Առանձին պրոցեսներում ձեռքով է կատարվում աշխատանքների $^3/_4$-ը: Ցածր են նաև աշխատանքի արտադրողականության աճի տեմպերը, մինչդեռ գյուղատնտեսության մեջ արտադրողականության տեմպերի արագացումը սոցիալ-դասակարգային տարբերությունների հաղթահարման կարևորագույն պայմաններից է:

Գյուղատնտեսության մեջ բարձրագույն և միջնակարգ կրթությամբ մասնագետների պակասը նկատվում է նաև միջտնտեսային ձեռնարկություններում ու միավորումներում: Սա նույնպես միջտնտեսային կոոպերացման ցածր տեմպերի հետևանք է: Ուստի արդի պայմաններում այդ տեմպերի զգալի արագացումը սոցիալ-դասակարգային տարբերությունների վերացման պրոցեսի ակտիվացման գրավականն է, որովհետև միջտնտեսային կոոպերացումը և ագրոարդյունաբերական ինտեգրացումը հարուցում են աշխատակազմի որակական փոփոխություններ: Դրանց շնորհիվ գյուղում ավելանում են մասնագետների և կրճատվում՝ ցածր որակավորում ունեցողների թիվը: Միջտնտեսային կոոպերացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման հատկանշական գծերից է նաև այն, որ նման ձեռնարկություններում կենտրոնանում են մասնագիտական բարձր որակավորում ունեցող կադրերը, երիտասարդությունը: Հետևաբար, մասնագիտությունների լայն շրջանակը, մեքենայացման բարձր մակարդակը երիտասարդությանը գյուղում ամրացնելու կարևոր միջոց են:

Միջտնտեսային կոոպերացումն ու ագրոարդյունաբերական ինտեգրացումը գտնըվում են զարգացման և կատարելագործման փուլում, դրանք դեռևս չեն ընդգրկում գյուղատնտեսության բոլոր ճյուղերը: Ուստի հաջորդ փուլում կոմպլեքսային մեքենայացման, լրիվ կոոպերացման և արդյունաբերության ու գյուղատնտեսության ինտեգրացման շնորհիվ ռեալ պայմաններ կստեղծվեն սոցիալ-դասակարգային տարբերությունների վերացման համար: Կոլտնտեսային գյուղացիության թվաքանակն առավել կնվազի գյուղատնտեսական արտադրության մասնագիտացման, համակենտրոն-

նացման և ագրոարդյունաբերական ինտեգրացման հետևանքով, քանի որ արտադրողականության բարձրացումն ինքնին կրճատում է աշխատողների քանակը: Բացի այդ, կոլտնտեսային արտադրության մի շարք ճյուղեր, անցնելով միջտնտեսային ձեռնարկությունների և միավորումների տրամադրության տակ, հասունացած օբյեկտիվ պայմաններին համապատասխան աստիճանաբար կորցնում են իրենց կոոպերատիվ-կոլտնտեսային բնույթը և վերածվում համաժողովրդական սեփականության: Միասնական համաժողովրդական սեփականության հաստատմանը զուգընթաց փոխվում է նաև հասարակության սոցիալական կառուցվածքը:

Սոցիալ-դասակարգային տարբերությունների վերացման կուսակցության կուրսը հասարակության հետագա առաջընթացի ուղենիշն է: Զարգացած սոցիալիզմի պատմական ժամանակաշրջանում փաստորեն կվերանան կոլտնտեսային գյուղացիության և բանվոր դասակարգի սոցիալական տարբերությունները: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թվականի հունիսյան պլենումում, «Կուսակցության ներքին քաղաքականության բնագավառի այս բոլոր խոշոր խնդիրների լուծումը նկատելի առաջընթաց կնշանավորի դեպի հասարակության սոցիալական միատարրություն: Այդ վեհ նպատակը, որ նշել են տեսության մեջ, որ երազել են կոմունիստների մի քանի սերունդներ, մեզ համար այսօր դարձել է անմիջական պրակտիկայի հարց: Կյանքը հուշում է, որ հասարակության անդասակարգ կառուցվածքի ձևավորումը, դատելով ըստ ամենայնի, գլխավորապես և հիմնականում տեղի կունենա արդեն հասուն սոցիալիզմի փուլում»: Այդ նպատակին հասնելու կարևորագույն ուղիներից է հասարակության սոցիալ-դասակարգային կառուցվածքի հետագա կատարելագործումը:

---

# ՆՈՐ ՏԻՊԻ ՄԱՍՆԱԳԵՏՆԵՐԻ ՊԱՏՐԱՍՏՈՒՄԸ ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆՈՒՄ

**ՅՈՒ. ՎԱՐԴԱՆՅԱՆ**
**Ֆիզիկամաթեմատիկական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր, ԵՊՀ-ի ռադիոֆիզիկայի ֆակուլտետի դեկան**

ՄԵՐ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ դարձել է ռադիոֆիզիկական գիտության և արդյունաբերության խոշոր կենտրոն: Տասնմեկերորդ հնգամյակի պլաններում հատուկ ուշադրություն է նվիրվում Հայաստանում արդյունաբերության ու գիտության այդ հույժ կարևոր և ժամանակակից ուղղության հետագա զարգացմանը: Գիտատեխնիկական հեղափոխության արդի փուլում շատ կարևոր նշանակություն ունի այնպիսի երիտասարդ մասնագետների պատրաստումը, որոնք համատեղում են համալսարանական կրթության հիմնարարությունն ու ընդգրկունությունը կիրառական բնույթի ուղղությունների հետ: Հենց այդպիսի խընդիրների իրագործման նպատակով է, որ Երևանի պետական համալսարանում արդեն ավելի քան ութ տարի է գործում է ռադիոֆիզիկայի ֆակուլտետը: Ֆակուլտետի կազմակերպման ժամանակ հանրապետության գիտությունների ակադեմիայի պրեզիդենտ, ակադեմիկոս Վ. Հ. Համբարձումյանը գրել է. «Կիրառական ֆիզիկայի բնագավառում համալսարանական կրթությամբ երիտասարդ մասնագետների պատրաստումը խիստ անհրաժեշտ է մեր հանրապետության համար: Այս առնչությամբ մեծ անելիքներ ունի Երևանի պետական համալսարանում նոր կազմակերպված ռադիոֆիզիկայի ֆակուլտետը»: Այժմ կարելի է ասել, որ ֆակուլտետի կոլեկտիվը պատվով է կատարում իր խնդիրները: Իր գոյության ընթացքում այն տվել է ավելի քան 500 երիտասարդ մասնագետներ, որոնք աշխատանքի են անցել հանրապետության գիտահետազոտական ինստիտուտներում, ռադիոֆիզիկական բնույթի կոնստրուկտորական բյուրոներում և գիտաարտադրական ձեռնարկություններում:

Ռադիոֆիզիկայի ֆակուլտետն այժմ ունի երեք ամբիոն և մեկ պրոբլեմային լաբորատորիա: Ամբիոններում աշխատում են ՀՍՍՀ ԳԱ մեկ ակադեմիկոս, երկու թղթակից-անդամ, գիտության վեց դոկտոր, ավելի քան քսանհինգ թեկնածու: Մեր ֆակուլտետի ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ամբիոնում կատարվում են հետաքըրքըրական գիտական հետազոտություններ՝ նվիրված քվանտային ռադիոֆիզիկայի և գերբարձր հաճախականությունների ֆիզիկայի բնագավառներին: Կիսահաղորդիչ նյութերի պրոբլեմային լաբորատորիայում և ամբիոնում մեծածավալ գիտական աշխատանքներ են տարվում նոր կիսահաղորդչային նյութերի և միկրոէլեկտրոնային սարքերի ստեղծման ու հետազոտման նպատակով: Պրոբլեմային լաբորատորիայում փորձեր են կատարվում կիսահաղորդչային ֆոտոէլեկտրոդների օգնությամբ ջրի քայքայման եղանակով արեգակնային էներգիան գազային ջրածնի էներգիայի վերափոխելու մարզում: Ալիքային պրոցեսների տեսության և ֆիզիկայի ամբիոնում ծավալվող գիտական հետազոտություններն ունեն տեսական բնույթ և նվիրված են տիեզերական ֆիզիկայի որոշ հրատապ պրոբլեմների, ինչպես նաև ճառագայթման տեսության խնդիրներին: Ֆակուլտետի ամբիոններում ծավալվել են տնտպայմանագրային աշխատանքներ, որոնց մասնակցում են բարձր կուրսերի ուսանողները: Իր գիտական պրոդուկցիայով ֆակուլտետը հավասարվել է խոշոր գիտահետազոտական ինստիտուտներին:

Ֆակուլտետի ուսումնական պլանները համընկնում են բարձրագույն դպրոցի նոր տիպի, այսպես կոչված՝ տեխնիկական համալսարանների ուսումնական պլաններին:

Այդպիսի բուհերի աշխատանքի հիմնական սկզբունքն է երիտասարդ մասնագետների պատրաստման գործում լայնորեն համագործակցել գիտահետազոտական ինստիտուտների, խոշոր արտադրամիավորումների հետ: Մեր երկրում հաջողությամբ գործում են մի շարք այդպիսի բուհեր, որոնց թվում ամենից առաջ պետք է նշել Մոսկվայի ֆիզիկատեխնիկական և ինժեներաֆիզիկական ինստիտուտները, Նովոսիբիրսկի համալսարանը և մի շարք այլ ուսումնական հաստատություններ: Մեր փոքր հանրապետությունում աննպատակահարմար է առանձին այդպիսի բուհի գոյությունը: Դրա ֆունկցիան պետք է դրվի համալսարանի և, որոշ դեպքերում՝ պոլիտեխնիկական ինստիտուտի օղակների վրա: Բարձրագույն դպրոցի նոր, հեռանկարային ուղղությունները միշտ սկիզբ են առել համալսարանում, որը ո՛չ միայն երիտասարդ մասնագետների դարբնոց է, այլև՝ դարբնոցների դարբնոց: Բոլորովին չնսեմացնելով բուն համալսարանական մասնագիտությունների դերը ինչպես հումանիտար, նույնպես և բնական գիտությունների ասպարեզում, մեր կարծիքով, կիրառական ուղղությունները նույնպես պետք է լինեն մեր համալսարանի հիմնական ուղղությունների շարքում: Այդ առնչությամբ հարկ է նշել, որ համալսարանի ռադիոֆիզիկայի ֆակուլտետի կոլեկտիվը, ռեկտորատի և բարձրագույն կրթության մինիստրության որոշ կազմակերպչական օգնության դեպքում, հնարավորություն ունի պատրաստելու կադրեր մի նոր, շատ հեռանկարային կիրառական մասնագիտության՝ կիսահաղորդիչների և դիէլեկտրիկների ֆիզիկայի ուղղությամբ: Այդպիսի մասնագետների պատրաստումն այժմ կատարվում է ֆակուլտետի սահմաններում: Դրա ընդլայնումն ինքնուրույն մասնագիտության՝ կարևոր նշանակություն կունենա այդ պրոֆիլի գիտական ու արտադրական ձեռնարկությունների համար, որոնք մեծ պահանջ ունեն համալսարանական կրթությամբ այդպիսի մասնագետների: Պետք է նշել, որ ժամանակին մեր համալսարանն ունեցել է այդ մասնագիտությունը: Անհրաժեշտ է այն վերականգնել:

Երիտասարդ մասնագետների պատրաստման նպատակով ֆակուլտետը սերտ համագործակցում է հանրապետության առաջավոր ռադիոֆիզիկական գիտական և արտադրական կենտրոնների հետ, որոնց թվում ամենից առաջ պետք է նշել գիտությունների ակադեմիայի ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի, ինչպես և ֆիզիկական հետազոտությունների ինստիտուտները, որոնց առաջատար մասնագետները ուսանողների համար կարդում են հատուկ դասընթացներ, ղեկավարում կուրսային և դիպլոմային աշխատանքներ: Պրակտիկումների անցկացման, ինչպես նաև կուրսային և դիպլոմային աշխատանքների կատարման ժամանակ լայնորեն օգտագործվում է այդ ինստիտուտների լաբորատոր բազան: Նշված ինստիտուտների հետ համալսարանի կապն ավելի ամրապնդելու, ինչպես նաև համապատասխան ուղղություններով գիտահետազոտական աշխատանքները ընդլայնելու նպատակով վերջերս բարձրագույն կրթության մինիստրության որոշմամբ ֆակուլտետի ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի ամբիոնը վերակազմավորվեց երկու ինքնուրույն ամբիոնների— գերբարձր հաճախականությունների և քվանտային ռադիոֆիզիկայի: Այդ ուղղություններով բարձր կուրսերի ուսանողներին մասնագիտացնելու մարզում ամբիոնները կկատարեն բազային ամբիոնների դեր: Գիտատեխնիկական հեղափոխությունը պահանջում է ստեղծել բարձրագույն դպրոցի նոր, ավելի արդյունավետ կապեր գիտության և արտադրության հետ: Հենց այդպիսի նպատակների է ծառայում բազային ամբիոնների կազմակերպումը: Դրանով իսկ հնարավորություն է ընձեռվում 4-րդ և 5-րդ կուրսերի ուսանողներին շաբաթվա մեծ մասը լինելու ինստիտուտներում և արդեն ուսանողական տարիներից ակտիվ մասնակցելու գիտահետազոտական աշխատանքներին: Այդպիսի ամբիոնների կազմակերպմանը չպետք է խոչընդոտի տիպային ամբիոնների համեմատությամբ ժամերի սակավաթվությունը, չէ՞ որ դրանց ընթացքում պետք է ավանդվեն միայն տվյալ մասնագիտացմանը վերաբերող առարկաներ, որոնք մեծ քանակ չեն կարող կազմել: Չմոռանանք նաև այն հանգամանքը, որ ոչ բոլոր շրջանավարտներն աշխատանքի կընդունվեն տվյալ ինստիտուտը: Շրջանավարտների մի մասը կարող է տեղավորվել մոտ պրոֆիլի արտադրական ձեռնարկություններում: Այդպիսի ամբիոնների կազմակերպմամբ կամրապնդվի բուհ—գիտահետազոտական ինստիտուտ—արտադրական ձեռնարկություն կապը:

Մեր համալսարանում միշտ էլ համատեղության կարգով դասավանդել են անվանի գիտնականներ, գիտության և արտադրության ականավոր կազմակերպիչներ: Մեծ են նրանց ծառայությունները երիտասարդ մասնագետների պատրաստման գործում: Առաջիկայում ևս մենք պետք է պատշաճ ուշադրություն ցուցաբերենք նրանց նկատմամբ այդ շատ կարևոր գործը վարելու համար:

Մի երկու խոսք երիտասարդ մասնագետների բաշխման վերաբերյալ: Քանի որ մեր շրջանավարտների մեծ պահանջ կա, ապա մենք այժմ արդեն հնարավորություն ունենք բաշխումը կատարելու չորրորդ կուրսից, իսկ գործի լավ կազմակերպման դեպքում՝ նույնիսկ երրորդ կուրսի վերջից: Հարկ չկա պարզաբանելու, թե որքան նպատակասլաց կդառնա այդ դեպքում կրթությունը բարձր կուրսերում: Սակայն բաշխման պրոցեսին խիստ խանգարում է մի շատ կարևոր հանգամանք: Բանն այն է, որ մեր ուսանողների մեծամասնությունը Երևան քաղաքի բնակիչներ չեն և համալսարանն ավարտելուց հետո, ապահովված չլինելով բնակարաններով, ձգտում են վերադառնալ աշխատելու իրենց բնակավայրերը, մինչդեռ պետպլանի կողմից ռադիոէլեկտրոնիկայի գծով սահմանված աշխատանքի տեղերը սովորաբար լինում են Երևան քաղաքում: Մեր կարծիքով, այս հարցը պետք է ունենա երկակի լուծում: Մի կողմից՝ պետք է խնդրել պետպլանին թույլատրել փոխել նշանակումները, հնարավորություն տալով շրջանավարտներին ավարտելուց հետո վերադառնալ իրենց բնակավայրերը և աշխատանքի անցնել տվյալ պրոֆիլի ձեռնարկություններում, թեկուզ և ավելի երկրորդական, քան այն, որը գտնվում է Երևանում, իսկ մյուս կողմից, խնդրել համապատասխան մարմիններին՝ պարտավորեցնել Երևանում գտնվող և երիտասարդ մասնագետների մեծ պահանջ ունեցող գիտաարտադրական խոշոր հիմնարկություններին՝ կառուցել հանրակացարաններ երիտասարդ մասնագետների համար:

Յուրաքանչյուր բուհի աշխատանքների արդյունավետ կազմակերպումը շատ հարցերում մեծ չափով պայմանավորված է ընդունելության քննությունների հաջող կազմակերպմամբ: Ռադիոֆիզիկայի ֆակուլտետի կոլեկտիվը միշտ էլ ուշադրության կենտրոնում է պահել դպրոցների շրջանավարտների պրոֆեսիոնալ կողմնորոշման հարցերը: Այդ առնչությամբ ամեն տարի կազմակերպվում են դասախոսների հանդիպումներ ինչպես Երևանի, նույնպես և հանրապետության այլ քաղաքների ու շրջանների դպրոցականների հետ, ձմեռային և գարնանային արձակուրդների ժամանակ դպրոցների շրջանավարտների համար կազմակերպվում են հանդիպումներ ֆակուլտետի լաբորատորիաներում և ամբիոններում: Ֆակուլտետի կոմերիտական կազմակերպության ջանքերով գյուղական վայրերում ապրող դպրոցականների համար գործում է «Երիտասարդ ֆիզիկոս» հեռակա դպրոցը: Սակայն այդ աշխատանքները դեռ չեն տալիս բավարար արդյունք, և մենք այս ասպարեզում շատ անելիքներ ունենք: Դրա վկայությունն է այն հանգամանքը, որ համալսարանում ֆիզիկամաթեմատիկական չորս ֆակուլտետներում արդեն մի քանի տարի է ընդունելության քննությունների ժամանակ մեկ տեղի համար դիմորդների թիվը չի գերազանցում 1,5-ից: Այդպիսի ցածր մրցույթի դեպքում ստացվում է մի այնպիսի անընդունելի պատկեր, երբ, ասենք, բժշկական ինստիտուտ ընդունվելու համար անհրաժեշտ են լինում ավելի խոր գիտելիքներ ֆիզիկայից, քան համալսարանի ֆիզիկայի ֆակուլտետում, կամ ժողովրդական տնտեսության ինստիտուտի դիմորդը պետք է շատ ավելի լավ տիրապետի մաթեմատիկային, քան մեխանիկամաթեմատիկական ֆակուլտետինը: Իհարկե, այս հարցի վերջնական լուծումը պահանջում է երկար ժամանակ և կապված է շրջանավարտների հետ պրոֆեսիոնալ կողմնորոշման աշխատանքներն ավելի ակտիվացնելու և սիստեմատիկ դարձնելու, ինչպես և հանրակրթական դպրոցներում ֆիզիկայի և մաթեմատիկայի դասավանդման մակարդակի բարձրացման հետ: Սակայն հարցի լուծմանը կնպաստեր նաև, եթե համալսարանի ֆիզիկամաթեմատիկական ֆակուլտետում երկրի մի շարք բուհերի օրինակով ընդունելության քննություններն անցկացվեին հուլիսին: Այս դեպքում մրցույթից դուրս մնացած դիմորդները հնարավորություն կունենային մասնակցելու նաև տեխնիկական այլ բուհերի ընդունելության քննություններին, որտեղ պահանջներն այնքան բարձր են, որքան համալսարանում: Այդ հանգամանքը, անշուշտ, կբարձրացներ մեզ մոտ մրցույթի կազմակերպման մակարդակը: Այս հարցը բազմիցս արծարծել է համալսարանի ղեկավարությունը, սակայն այն դեռևս չի լուծվել:

Մեր օրերում բարձրագույն դպրոցի խնդիրն է պատրաստել այնպիսի երիտասարդ մասնագետներ, որոնք ունենան տեսական խոր գիտելիքներ և պրոֆեսիոնալ լավ պատրաստականություն, օժտված լինեն բարոյական վեհ հատկանիշներով:

---

## Գաղափարախոսական պայքարի ճակատներում

# ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ «ՄԱՐՔՍԱԲԱՆՈՒԹՅԱՆ» ՀԱԿԱՍՈՎԵՏԱԿԱՆ ԷՈՒԹՅՈՒՆԸ

**Բ. ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

*ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ արդի փուլին հատկանշական են միջազգային ասպարեզում գաղափարախոսական պայքարի անասելի սրումն ու բարդացումը։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի 1983 թ. հունիսյան պլենումում նշվեց, որ մեր ժամանակաշրջանը նշանավորված է բևեռայնորեն հակադիր երկու աշխարհայացքների, երկու քաղաքական կուրսերի՝ սոցիալիզմի ու իմպերիալիզմի, այնպիսի հակամարտությամբ, որն իր ինտենսիվությամբ և սրությամբ աննախադեպ է ողջ ետպատերազմյան ժամանակաշրջանում։ Պայքար է ընթանում մոլորակի միլիարդավոր մարդկանց մտքերի ու սրտերի համար։*

*Արդի իմպերիալիզմի հակակոմունիստական գաղափարախոսական ստրատեգիայի գլխավոր միտումը կոմունիստական կուսակցությունների, սոցիալիստական երկրների նպատակների ու քաղաքականության, մարքսիզմ-լենինիզմի տեսության ու պրակտիկայի, ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության փորձի համաշխարհային պատմական նշանակության խեղաթյուրումն է։ Դրանով բուրժուական գաղափարախոսները ջանում են խոչընդոտել մարքս-լենինյան գաղափարների տարածմանը կապիտալիստական ու զարգացող երկրներում, հնարավորին չափ սահմանափակել գիտական սոցիալիզմի ազդեցությունը աշխատավորական զանգվածների վրա։ Նրանք միաժամանակ զուր ճիգեր են թափում գաղափարախոսական պայքարը տեղափոխել սոցիալիստական համագործակցության երկրներ։*

*Այդ նպատակներին է ծառայում «մարքսաբանությունը», որը «սովետաբանության» հետ մեկտեղ (այս հասկացությունները հաճախ օգտագործվում են որպես հոմանիշներ) 1970-ական թթ. վերջերից դարձել է բուրժուական հասարակագիտական մտքի ամենաընդարձակ բնագավառը և, որպես այդպիսին, կոչված է նաև տեսական հիմք դառնալու բուրժուական, ռևիզիոնիստական ու ռեֆորմիստական գաղափարախոսությունների հետագա սերտաճման համար։ Լինելով բազմադեմ մի գոյացություն, «մարքսաբանությունը» հանդես է գալիս թե՛ «ակադեմիական» սոցիոլոգիական ու տնտեսագիտական տեսությունների, թե՛ կեղծ սոցիալիստական «մոդելների» վերաբերյալ «նեոմարքսիստական» հայեցակետերի ձևով։*

*Սոցիալիստական երկրներում միլիոնավոր աշխատավորներ ուսումնասիրում են Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունները, երիտասարդությունը դաստիարակվում է մարքս-լենինյան գաղափարների ոգով։ Դա միանգամայն բնական է ու հասկանալի։ Սակայն արդի գաղափարախոսական պայքարի պայմաններում իմաստավորման կարիք ունի և այն ուշագրավ փաստը, որ վերջին տարիներս բուրժուական Արևմուտքում, գլխավորապես Միացյալ Նահանգներում, զգալիորեն աճել է հետաքրքրությունը գիտական կոմունիզմի հիմնադիրների կյանքի ու գործունեության, մարքս-լենինյան ուսմուն-*



*քի, ռեալ սոցիալիզմի նկատմամբ։ Դա վերաբերում է հատկապես երիտասարդ մտավորականությանն ու ուսանողությանը, որոնց քաղաքական համոզմունքները դեռևս չեն ձևավորվել, բայց որոնք խորհում են իրենց ապագայի մասին, տեսնում բուրժուական հասարակական հարաբերությունների հակադեմոկրատական, հակամարդկային էությունը և սոցիալական այլընտրանքն են փնտրում։ Նրանց դասախոսները ստիպված խոստովանում են, թե ուսանողները, հաճախ անկախ սոցիալական դիրքից ու ծագումից, պահանջում են, որպեսզի համալսարաններում ու կոլեջներում դասավանդվի «Կարլ Մարքսի փիլիսոփայությունը»։ Այդ պրոֆեսորները բացահայտ հակակոմունիստներ են և ձգտում են ներկայանալ իբրև «Մարքսի գիտակներ», նույնիսկ «աշակերտներ»։ Այդ երևույթի հիմքում այն օբյեկտիվ իրողությունն է, որ մարքս-լենինյան ուսմունքը հսկայական ազդեցություն է գործում արդի աշխարհի սոցիալ-տնտեսական ու գաղափարաքաղաքական պրոցեսների զարգացման վրա։ Նրա իդեալները, տեսական հիմքերը, բարոյական սկզբունքները նվաճում են հարյուր միլիոնավոր մարդկանց մտքերն ու սրտերը։ Մարքս-լենինյան ուսմունքը հնարավորություն է ընձեռում գիտական հետևողականությամբ լուսաբանելու արդիականության այն պրոբլեմները, որոնք անկարող է լուծել արդի բուրժուական միտքը։ Բուրժուական շատ գիտնականներ ստիպված խոստովանում են Կ. Մարքսի ուսմունքի գիտական խորությունը, դեմոկրատիզմն ու հումանիզմը։ Վիճաբանելով մարքսիզմի հետ, նրանք փորձում են օգտագործել այն, «հարմարեցնել» իրենց հայացքներին։ Հայտնի է, որ Ժ. Պ. Սարտրը մարքսիզմը համարում էր «մեր դարաշրջանի չգերազանցված փիլիսոփայություն», իսկ Մ. Հայդեգերը գրում էր, որ «պատմության մարքսիստական ըմբռնումը գերազանցում է որևէ այլ պատմագրության»։ Ամերիկյան սոցիալ-փիլիսոփայական մտքի խոշորագույն ներկայացուցիչներից է. Ֆրոմն իր* Մարդու կերպարը Մարքսի մոտ *գրքում գրում է. «...միայն մարքսիստական մտածողության փաստական բովանդակության ըմբռնման միջոցով... մենք ի վիճակի կլինենք հասկանալ մեր իրականությունը, բանական և կոնստրուկտիվ կերպով լուծել նրա առաջադրած պրոբլեմները»։ Տնտեսագետ Ջ. Գելբրայթը հայտարարում է. «Ոչ ոք երբեք չի հանդգնի պնդել, թե աշխարհը կլիներ նույնը, եթե Մարքսը չլիներ»։ Արդի ամերիկյան «ակադեմիական» հակակոմունիզմի սյուներից մեկը՝ հանրահայտ սոցիոլոգ Դանիել Բելն «Ամերիկյան սոցիոլոգիական ամսագրում» հրապարակած իր «Մարքսն անցյալում և ապագայում» հոդվածում, կոչ անելով «լավ ուսումնասիրել Մարքսին», իրեն հռչակում է «պոստ-մարքսիստ, հետազոտող, որը ձգտում է խորամուխ լինել մարքսիստական ուսմունքի մեջ՝ դրան նվիրելով իր կյանքի կեսը»։ Կ. Մարքսի ուսմունքի հեղինակության աճի մասին է վկայում նաև այն փաստը, որ 8-րդ միջազգային սոցիոլոգիական կոնգրեսի կապիտալիստական երկրների պատվիրակներից շատերը բանավեճերի ընթացքում ստիպված էին ընդունել Մարքս-գիտնականի անդրդվելի հեղինակությունը։ Ամերիկյան սոցիոլոգ, հակակոմունիստ Ս. Լիպսեթը մի առիթով նկատել է. «Ես չհասկացա, թե որտեղ եմ գտնվում՝ Կանադայո՞ւմ, թե՞ սոցիալիստական որևէ երկրում, Տորոնտոյի՞ համալսարանում, թե՞ Մոսկվայի համալսարանում» (տե՛ս* Социология и современность. М., 1976, т. 2, стр. 17*)։*

*Սոցիալիզմի տեսության ու պրակտիկայի դեմ հակակոմունիզմի «խաչակրաց արշավանք» ձեռնարկելու փորձերը զուգակցվում են մարքս-լենինյան ուսմունքի գիտականակերպ աղավաղումների, Մարքս-գիտնականի հասցեին արվող հաճոյախոսությունների հետ։ Հակակոմունիստական շրջաններում համոզվում են, որ սոցիալիզմի տեսության ու պրակտիկայի աղավաղումը չի կարելի վստահել միայն «դեղին մամուլը» ներկայացնող հրապարակախոսներին։ Այն հարկավոր է «գիտական» հիմքերի վրա դնել, գիտականակերպ դարձնել՝ ներգրավելով այդ գործի մեջ բուրժուական առաջատար հասարակագետներին։ Անհրաժեշտ են կադրեր և հաստատություններ, որոնք «պրոֆեսիոնալ մակարդակով կուսումնասիրեն» գիտական սոցիալիզմի տեսությունն ու պրակտիկան։ Սոցիալիզմի դեմ ուղղված իր գաղափարախոսական-դիվերսիոն գործունեության մեջ իմպերիալիզմը «մարքսաբանությանը» հատուկ տեղ է հատ-*

կացնում. «Համոզված կոմունիստների վրա «արևմտյան» փաստարկները ազդեցություն չեն գործում,— հայտարարում է արևմտագերմանական «մարքսաբան» Գյունտեր Բարշը:— Միայն մարքսիստական փաստարկները կարող են նրանց շփոթեցնել, շեղել և մտատանջել» (տե՛ս Р. Бауэрман и др. Нищета «марксологии». Критика фальсификаций учения Маркса и Энгельса. М., 1976, стр. 12):

Այդօրինակ փորձեր էին արվում նաև նախկինում, սակայն, հասկանալի պատճառներով, ոչ այնքան զանգվածային ու կազմակերպված, ինչպես ներկայումս: Հենց դա նկատի ուներ Վ. Ի. Լենինը, երբ Կարլ Մարքսի ուսմունքի պատմական բախտը աշխատության մեջ գրում էր. «Պատմության դիալեկտիկան այնպիսին է, որ մարքսիզմի տեսական հաղթանակը նրա թշնամիներին ստիպում է մարքսիստի զգեստ հագնել: Ներքուստ նեխված լիբերալիզմը փորձում է վերակենդանացնել իրեն որպես սոցիալիստական օպորտունիզմ» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 23, էջ 3):

Միայն ԱՄՆ-ում ներկայումս գործում են հարյուր հիսունից ավելի «մարքսաբանական» կենտրոններ, որոնք հրատարակչական ինտենսիվ աշխատանք են կատարում: 1973 թ. Նյու-Յորքում լույս է տեսել Մարքսիզմը, կոմունիզմը և արևմտյան հասարակությունը ութ հատորանոց հանրագիտարանը, որի նախապատրաստության և խմբագրման գործում ներգրավվել են 15 կապիտալիստական երկրների ներկայացուցիչներ: Այդ հաստատություններն ունեն իրենց պարբերականները՝ «Սովետական մտքի ուսումնասիրություններ», «Կոմունիզմի պրոբլեմներ» և այլն: Թարգմանվում են ՍՍՀՄ-ում և սոցիալիստական մյուս երկրներում լույս տեսնող շատ կենտրոնական ամսագրեր ու թերթեր: Միայն 1979 թ. ԱՄՆ-ում, Կանադայում և Անգլիայում պաշտպանվել է «մարքսաբանական» պրոֆիլի 204 դոկտորական դիսերտացիա:

«Մենք պետք է հասկանանք,— գրում է Ինդիանայի համալսարանի «մարքսաբանական» կենտրոնի ղեկավար Ռ. Բիրնսը, դիմելով կառավարող շրջաններին,— որ Ռուսաստանն ու Արևելյան Եվրոպան ֆինանսավորման հարցում պետք է առավելություն ունենան այնպիսի առարկաների նկատմամբ, ինչպիսիք են ԱՄՆ-ի պատմությունը, անգլիական գրականությունը, քաղաքատնտեսությունը»: Բիրնսը նկատի ունի գիտական սոցիալիզմի տեսության ու պրակտիկայի ուսումնասիրությունը: Մարքս-լենինյան ուսմունքի, ռեալ սոցիալիզմի բուրժուական «ուսումնասիրությունները», այդպիսով կոչված են կատարելու խոշոր կապիտալի գաղափարախոսական պատվերը:

Արդ, բուրժուական գաղափարախոսները դիմում են ամեն միջոցի՝ նսեմացնելու լենինիզմի ինտերնացիոնալ բնույթն ու համաշխարհային-պատմական նշանակությունը, ցույց տալու, թե իբր Վ. Ի. Լենինի հայացքները, ՍՄԿԿ գործունեությունը, Հոկտեմբերյան հեղափոխությունն ու ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության փորձը ընդհանուր ոչինչ չունեն Կ. Մարքսի կանխագծումների հետ: Վերջիններս, իբր, բխում են «արևմտյան կուլտուր-պատմական ավանդույթներից», իսկ լենինիզմի ավանդները «զուտ ռուսական» են: Այս գաղափարը, որպես լեյտմոտիվ, անցնում է վերը հիշատակված Մարքսիզմը, կոմունիզմը և արևմտյան հասարակությունը հանրագիտարանի միջով և սնվում է ռուսական նախահեղափոխական հասարակական մտքում առկա «ռուսական ուղու բացառիկության», «ռուսական առեղծվածային ոգու» (Բերդյաև) հայեցակետից: Վերջինիս տեսանկյունից, ռուսական պատմությունը, ունենալով իր ուրույն օրինաչափությունները, արմատապես տարբերվում է արևմտաեվրոպական պատմությունից:

«Մարքսաբանների» տեսական այդ վարժանքներն ուղղված են «մարքսիզմի ու սոցիալիզմի պլյուրալիստական մոդելների» տեսության հիմնավորմանը, այն բանի «հիմնավորմանը», որ իբր եվրոպական երկրների ու Ռուսաստանի հեղափոխական շարժումների միջև ընդհանուր ոչինչ չկա: Փորձելով ժխտել համաշխարհային պատմական պրոցեսի միասնականության սկզբունքը, հասարակական զարգացման ընդհանուր օրինաչափությունների գոյությունը, «մարքսաբանները» գռեհիկ կերպով աղավաղում են մարքսիզմը: Նրանց «փաստարկները» նորույթ չեն և գիտականորեն մերժվել են Վ. Ի. Լենինի,



մարքսիստ հասարակագետների կողմից: Հայտնի է նաև, որ դեռ Ֆ. Էնգելսը, հետևելով Ռուսաստանում հեղափոխական շարժման զարգացմանը, նշում էր, որ պրոլետարիատի հեղափոխական շարժման կենտրոնը XIX դարի վերջերից Արևմտյան Եվրոպայից տեղափոխվում է Ռուսաստան:

Միմյանց հակադրելով Կ. Մարքսին ու Վ. Ի. Լենինին, մարքսիզմն ու լենինիզմը, «մարքսաբանները» փորձում են ապացուցել, ինչպես նշում է Յու. Վ. Անդրոպովը, «թե իբր այն հասարակարգը, որ ստեղծվել է ՍՍՀՄ-ում, մյուս եղբայրական երկրներում, չի համապատասխանում սոցիալիզմի այն ձևին, որ պատկերացնում էր Մարքսը: Խոսում են այն մասին, թե իբր ռեալությունը, հեռացել է իդեալից: Բայց գիտակցաբար թե անգիտակցաբար աչքաթող են անում, որ ինքը՝ Մարքսը, մշակելով իր ուսմունքը, ամենից քիչ էր ղեկավարվում մաքրամաքուր, կոկիկ «սոցիալիզմի» ինչ-որ մի վերացական իդեալի պահանջներով» (Յու. Վ. Անդրոպով, Կարլ Մարքսի ուսմունքը և ՍՍՀՄ-ում սոցիալիստական շինարարության մի քանի հարցեր: «Հայաստան» հրատ., 1983, էջ 8):

Բուրժուական «մարքսաբանների» դիրքորոշման հիմքում ընկած է Մարքս-գիտնականի, տեսաբանի հակադրումը Լենին-քաղաքական գործչին, հեղափոխության ստրատեգին և տակտիկին: Լենինիզմի ստեղծագործական, նորարարական բնույթը ներկայացվում է որպես «շեղում» Մարքսի ուսմունքից, մասնավորապես, պատմական մատերիալիզմի սկզբունքներից: Ի տարբերություն Կ. Մարքսի «տնտեսական դետերմինիզմի», գրում է, օրինակ, Դ. Բելը, Վ. Ի. Լենինը շեշտը դնում էր հեղափոխության «դասակարգային-քաղաքական» գործոնների վրա՝ դրանով, իբր թե, «վերանայելով» Մարքսի ուսմունքը: Հոկտեմբերյան հեղափոխությունը, ըստ Դ. Բելի, պատմական մատերիալիզմի տեսանկյունից «անսպասելի էր»:

Գիտական սոցիալիզմի հիմնադիրները բանվորական շարժման տարբեր փուլերում տարբեր տեսական խնդիրներ են լուծել: Բայց դա չի կարող հիմք ծառայել այն հետևության համար, թե Մարքսն ու Էնգելսը զուտ տեսաբաններ, «կաբինետային գիտնականներ» են եղել, իսկ Լենինը՝ «զուտ պրակտիկ»: Հենց Մարքսն ու Էնգելսն էին, որ հիմնադրեցին I ինտերնացիոնալը, ղեկավարում էին, ուղղություն տալիս արևմտաեվրոպական պրոլետարիատի քաղաքական ելույթներին: Սրանք հանրահայտ փաստեր են: Ինչ վերաբերում է պրոլետարիատի քաղաքական տիրապետության վերաբերյալ դրույթին, ապա դա ձևակերպվել է ոչ թե Լենինի, այլ Մարքսի կողմից՝ Փարիզյան Կոմունայի փորձի լույսի տակ:

Վ. Ի. Լենինը գործել է նոր պատմական դարաշրջանում՝ իմպերիալիզմի և սոցիալիստական հեղափոխությունների դարաշրջանում, երբ հեղափոխության տնտեսական օբյեկտիվ նախադրյալները մի շարք երկրներում արդեն առկա են կամ հասունանում են: Ուստի կարևորվում է գլխավորապես հեղափոխության քաղաքական գործոնների հարցը, կուսակցության դերի հարցը: Վ. Ի. Լենինը ոչ միայն մշակեց նոր տիպի կուսակցություն ստեղծելու ուսմունքը, այլ նաև, բացահայտելով կապիտալիզմի զարգացման նոր օրինաչափությունները իմպերիալիզմի փուլում՝ առաջադրեց սոցիալիստական հեղափոխության տեսությունը և իրականացրեց այն: Դա ոչ այլ ինչ էր, քան մարքսիզմի ստեղծագործական զարգացումը նոր պատմական պայմաններում:

Բուրժուական գաղափարախոսները աղավաղելով մարքսիզմ-լենինիզմը, Մարքսին վերագրում են հասարակական զարգացման նատամբ «դետերմինիստական-ճակատագրապաշտական» մոտեցումը, իսկ Լենինին՝ «սուբյեկտիվիստական-վոլյունտարիստականը»: Ամերիկյան պատմաբան Կիլրոյ-Սիլքն իր Սոցիալիզմը Մարքսից հետո գրքում գրում է. «Եթե Մարքսը բացարձակ դետերմինիստ էր, շեշտում էր էկոնոմիկայի առաջնակարգ նշանակությունը... ապա Լենինն իր ուշադրությունը կենտրոնացնում էր գլխավորապես քաղաքականության վրա և մշակում էր «մտածված գործողությունների» պլան, որպեսզի ապահովի կոմունիստների հաղթանակը՝ անկախ նրանից, դա կբխի պատմական օրինաչափություններից, թե ոչ»: Նույն միտքն է արտահայտում

Ռեյգանի մերձավոր խորհրդականներից հակակոմունիստ-պրոֆեսոր Ռ. Փայփսն իր Ստրուվեն որպես աջ լիբերալ, 1905—1944 գրքում։

Պատմության մատերիալիստական ըմբռնման այդօրինակ ավավաղումներին առաջինը հակահարված է տվել Ֆ. Էնգելսը։ Մերժելով «տնտեսական դետերմինիզմի» մեջ Մարքսին մեղադրելու փորձերը, Ի. Բլոխին ուղղված նամակում Ֆ. Էնգելսը գրում էր. «...Պատմության մատերիալիստական ըմբռնման համաձայն, պատմական պրոցեսում որոշիչ հանգամանքը վերջին հաշվով իրական կյանքի արտադրությունն ու վերարտադրությունն է։ Ոչ ես, ոչ Մարքսը երբեք ավելին չենք պնդել։ Իսկ եթե որևէ մեկն այս դրույթը խեղաթյուրում է այն իմաստով, թե իբր տնտեսական հանգամանքը միակ որոշիչ հանգամանքն է, ապա նա այդ պնդումը վերածում է ոչինչ չասող, վերացական, անմիտ դատարկաբանության» (տե՛ս Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր Երկեր, հ. 3, էջ 644)։ «Մարքսիզմը,— նշում էր Վ. Ի. Լենինը,— մյուս բոլոր սոցիալիստական տեսություններից տարբերվում է նրանով, որ նա իրերի օբյեկտիվ դրության և էվոլյուցիայի օբյեկտիվ ընթացքի վերլուծման մեջ լիակատար գիտական զգաստությունը հիանալի կերպով միացնում է մասսաների հեղափոխական եռանդի, հեղափոխական ստեղծագործության, հեղափոխական ձեռներեցության նշանակության ամենավճռական ճանաչման հետ...» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 16, էջ 28)։

Ոչինչ այնքան խորթ չէ Վ. Ի. Լենինին, որքան վոլյունտարիզմը, հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների անտեսումը։ Հայտնի է, թե ինչպիսի անողոք պայքար էր մղում նա նարոդնիկների դեմ, մասնավորապես, այդ հարցում։ Քննադատելով սուբյեկտիվիզմը սոցիոլոգիայում և վոլյունտարիզմը քաղաքականության մեջ, Վ. Ի. Լենինը գրում էր. «Նոր Ռուսաստանի կառուցման իմ իդեալները այն ժամանակ միայն ցնորական չեն լինի, երբ նրանք, իսկապես արտահայտում են գոյություն ունեցող դասակարգի շահերը, որին կյանքի պայմաններն ստիպում են որոշ ուղղությամբ գործելու։ Կանգնելով դասակարգային պայքարի օբյեկտիվիզմի այդ տեսակետի վրա, ես ամենևին չեմ արդարացնում իրականությունը, այլ, ընդհակառակը, մատնանշում եմ բուն այդ իրականության մեջ նրա վերափոխության ամենախոր... աղբյուրներն ու ուժերը» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 22, էջ 126—127)։ Պատասխանելով իր այն հակառակորդներին, որոնք մեղադրում էին նրան վոլյունտարիզմի մեջ, Լենինը նշել է. «Հեղափոխությունը չի կարելի ո՛չ սարքել, ո՛չ էլ հերթ սահմանել։ Չի կարելի պատվիրել հեղափոխություն, հեղափոխությունը հասունանում է» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 31, էջ 488)։

Լենինիզմի էության «մարքսաբանական» աղավաղումներում զգալի տեղ են գրավում անհիմն զուգահեռները, որ անցկացվում են քաղաքական պայքարի լենինյան մեթոդների և անարխիստական-դավադրական մեթոդների միջև։ Այդ «տեսակետն» է պաշտպանում, օրինակ, ամերիկացի «մարքսաբան» Սիդնեյ Հուկը։ Այդպիսով, հակակոմունիստները ճգնում են տեսական «նոր» փաստարկներ մշակել՝ «Մոսկվայի ձեռքի» վերաբերյալ պրոպագանդիստական ստահոդ վարկածը հիմնավորելու, ամերիկյան իմպերիալիզմի քաղաքական արկածախնդրությունը, Ռեյգանի և նրա խմբի պետական տեռորիզմը արդարացնելու համար։ Եվ պատահական չէ, որ, հիմնվելով այդօրինակ «փաստարկների» վրա, նույնիսկ Ռեյգանն իրեն իրավունք է վերապահում «քննադատել» Վ. Ի. Լենինին։

Պատմական իրողությունն այն է, որ դեռ դարասկզբին Վ. Ի. Լենինը, ռուսական սոցիալ-դեմոկրատիան անհաշտ պայքար էին մղում անարխիստական-դավադրական տեսության ու պրակտիկայի դեմ։ «...Սոցիալ-դեմոկրատները,— գրում էր Լենինը,— հայացքների այդպիսի սահմանափակությունից զերծ են։ Նրանք դավադրություններին չեն հավատում, կարծում են, որ դավադրությունների ժամանակը վաղուց անցել է, որ քաղաքական պայքարը դավադրության հանգեցնել՝ նշանակում է մի կողմից այն անչափ նեղացնել, իսկ մյուս կողմից՝ ընտրել պայքարի ամենաանհաջող ձևերը» (ԵԼԺ, հ. 2, էջ 574)։



«Արևելյան» և «արևմտյան» մարքսիզմների, «ազգային կոմունիզմների» վերաբերյալ «մարքսաբանական» հայեցակետի համար բնորոշ է մարքս-լենինյան ուսմունքի ինտերնացիոնալ միասնականության աղճատումը։ Այդ հիման վրա տեղի է ունենում հակակոմունիզմի և ռևիզիոնիզմի մերձեցումը, առաջադրվում են «բազմաթիվ մարքսիզմների» վերաբերյալ գաղափարներ, սոցիալիզմի «նոր մոդելներ», «եվրոմարքսիստական» տեսություններ և այլն։ Սոցիալիզմի ռևիզիոնիստական «մոդելները» էկլեկտիկ, գիտականակերպ խառնուրդներ են, որոնց գլխավոր նպատակը սոցիալիզմի աշխարհում տեղի ունեցող հասարակական պրոցեսների աղավաղումն է, սոցիալիստական երկրներին միմյանց հակադրելը, հակասովետական ընդհանուր դիրքորոշումը։

«Մարքսաբանության» օրինակը վկայում է, որ արդի գաղափարախոսական պայքարի կենտրոնում լենինիզմի հարցերն են, իսկ վերաբերմունքը Վ. Ի. Լենինի, ՍՄԿԿ-ի, ՍՍՀՄ սոցիալիստական շինարարության փորձի նկատմամբ՝ կոմունիզմի ու հակակոմունիզմի ջրբաժանն է։

ՍՄԿԿ Կենտկոմի 1983 թ. հունիսյան պլենումում նշվեց, որ գաղափարախոսական աշխատանքը, հետևաբար և պայքարը հակակոմունիստական գաղափարախոսության դեմ ոչ միայն հասարակագետների, պրոֆեսիոնալ պրոպագանդիստների, այլ նաև բոլոր կոմունիստների, ամբողջ կուսակցության գործն է։ Պլենումում մասնավորապես նշվեց, որ ՍՄԿԿ գաղափարախոսական աշխատանքի արդյունավետության բարձրացման կարևոր պայմաններից է կոնտրպրոպագանդայի լավ մտածված, միասնական համակարգի գործառնությունը։ Այդ տեսանկյունից կարևոր է շեշտել, որ բուրժուական նորագույն տեսությունները չեն պարփակվում ակադեմիական նեղ շրջանակներում։ Դրանք մշակվում են այն հաշվով, որ պրոպագանդիստական ուղղակի ելք ունենան և, որոշակիորեն ձևափոխվելով, հասցեագրվեն սոցիալիստական երկրների ազգաբնակչության տարբեր խմբերին։ «Մարքսաբանական» հայեցակետերը հաճախ են օգտագործվում իմպերիալիստական ռադիոկայանների կողմից։ Դրանց հիման վրա հատուկ ծրագրեր են կազմվում։ Պատահական չէ, որ Կ. Մարքսի ծննդյան 165 և մահվան 100-ամյակի կապակցությամբ «Ամերիկայի ձայն» և «Ազատություն» ռադիոկայանները «մարքսաբանների» մասնակցությամբ հատուկ հաղորդաշար էին կազմակերպել։

Արդի գաղափարախոսական պայքարի սրումն ու բարդացումը անհամեմատ ավելի բարձր պահանջներ են ներկայացնում մեր ողջ գաղափարախոսական աշխատանքի կազմակերպմանը։ Պետք է միշտ հիշել Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, թե «...հարցը դրվում է միայն այսպես՝ բուրժուական թե սոցիալիստական գաղափարախոսություն։ Միջինը չկա այստեղ... Ուստի սոցիալիստական գաղափարախոսության ամեն մի նսեմացում, ամեն մի հեռացում նրանից՝ ինքնին նշանակում է բուրժուական գաղափարախոսության ուժեղացում» (Վ. Ի. Լենին, ԵԼԺ, հ. 6, էջ 49—50)։

Աշխատավորների գիտակցության մեջ սոցիալիստական գաղափարախոսության հաստատումը, որը ՍՄԿԿ կարևորագույն խնդիրներից է, տեղի է ունենում բուրժուական ու ռևիզիոնիստական գաղափարախոսությունների, իմպերիալիստական պրոպագանդայի դեմ մղվող պայքարում։ Այդ պայքարի ելքը, վերջին հաշվով, որոշվում է հասարակական զարգացման օրինաչափություններով, կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի վերջնական անխուսափելի հաղթանակով։ Սոցիալիստական գաղափարախոսության դիրքերը հետզհետե ամրապնդվում են՝ շնորհիվ ռեալ սոցիալիզմի, միջազգային կոմունիստական շարժման, ազգային-ազատագրական պայքարի հաջողությունների։ Սակայն չի կարելի հույս դնել իրադարձությունների տարերային զարգացման վրա։ Դա սխալ է ու վտանգավոր։ Գաղափարախոսությունը հասարակական զարգացման կարևոր գործոն է, որով զգալիորեն պայմանավորված է հակամարտ հասարակարգերի պայքարի ելքը, խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի ուժերի ամրապնդումը։

# ՍԻՈՆԻԶՄԸ ԾԱՌԱՅՈՒՄ Է ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻՆ

Գ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԵՎ ՄՅՈՒՍ սոցիալիստական երկրների դեմ քայքայիչ գործունեության մեջ իմպերիալիզմի կողմից օգտագործվող միջոցների զինանոցում կարևորագույն տեղ է հատկացվում սիոնիզմին։*

*Ծագելով XIX և XX դարերի սահմանագծում, երբ կապիտալիզմը թևակոխում էր իր բարձրագույն՝ իմպերիալիստական փուլը, սիոնիզմը բուրժուանացիոնալիստական հոսանքից վերածվեց խոշոր մոնոպոլիստական հրեա բուրժուազիայի ռազմաշունչ, էքսպանսիոնիստական գաղափարախոսության ու պրակտիկայի։ Սիոնիզմի քաղաքական գործունեության գլխավոր ուղղությունը դարձան հակակոմունիզմն ու հակասովետիզմը։ Սիոնիստական գաղափարախոսությունն ու պրակտիկան աչքի են ընկնում նացիոնալիզմի, ռասիզմի և շովինիզմի խիստ արտահայտված հատկանիշներով։*

*Միջազգային սիոնիզմը, հանձինս համաշխարհային սիոնիստական կազմակերպության և դրա մասնաճյուղերի, ինչպես նաև իսրայելական պետության սիոնիստական ղեկավարության, հանդես է գալիս որպես վտանգավոր քաղաքական պրակտիկա և խիստ ճյուղավորված մի կազմակերպական կառուցվածք, որի օգնությամբ իմպերիալիստական շրջանները փորձում են իրագործել միջազգային խաղաղությանը և անվտանգությանն սպառնացող իրենց պլանները։*

*Մերձավոր-արևելյան կոնֆլիկտում Իսրայելի սիոնիստական կառավարիչների դիրքորոշումը մեկ անգամ ևս ամենայն ակներևությամբ ցույց տվեց միջազգային սիոնիզմի էքսպանսիոնիստական նկրտումները, որը շարունակում է հույսեր փայփայել կենսագործելու «Մեծ Իսրայելի» տիրահռչակ գաղափարը։*

*Իսրայելի ներկայիս կառավարությունը, որը երկրի առավել հետադիմական քաղաքական խմբավորումների մի կոալիցիա է, հետզհետե ավելի ռասիստական պլանով է իրականացնում իր սիոնիստական արտաքին քաղաքականությունը։ Այն շարունակում է «Նեղոսից մինչև Եփրատ մեծ Իսրայել» ստեղծելու իր նախորդների կուրսը և հանդես գալիս արաբական պետությունների ու պաղեստինյան ազատագրական շարժման նկատմամբ «ուժի քաղաքականություն» կիրառելու օգտին, ընդդեմ Պաղեստինի արաբական պետության ստեղծման։*

*Շարունակվում է ռազմական ագրեսիան Լիբանանի դեմ, որտեղ սպանվել ու վիրավորվել են արդեն տասնյակ հազարավոր խաղաղ բնակիչներ, արյուն է հեղվում պաղեստինցի գաղթականների բնակավայրերում, նրանց բռնությունների ու խոշտանգումների են ենթարկում համակենտրոնացման ճամբարներում։ Եվ այդ բոլոր չարագործությունների համար հանցավոր են Իսրայելի կառավարող վերնախավը, միջազգային սիոնիզմի պարագլուխները։*

*Սիոնիստների և նրանց իմպերիալիստական հովանավորների ռասիստական պլաններին հակառակ, Պաղեստինի արաբ ժողովուրդը շարունակում է պայքարել իր պետականությունը վերականգնելու համար։ Արաբական երկրները, բնականաբար, չեն կարող հաշտվել իսրայելական ագրեսորների զավթողական քաղաքականության հետ։*

*Սովետական Միությունը, սոցիալիստական ընկերակցության մյուս երկրները հանդես են գալիս մերձավոր-արևելյան ճգնաժամի արդար քաղաքա-*



*կան կարգավորման օգտին, հաշվի առնելով ռեգիոնի բոլոր ժողովուրդների և երկրների իրավունքներն ու շահերը։ Այդպիսի քաղաքականություն է վարում նաև Իսրայելի կոմկուսը։ Նա պայքար է մղում Իսրայելի և արաբական պետությունների միջև կայուն խաղաղության հաստատման, պաղեստինյան հարցի արդար լուծման, այն բանի օգտին, որ հարգվեն բոլոր ժողովուրդների ու պետությունների, ներառյալ Իսրայելի ժողովրդի և Պաղեստինի արաբ ժողովրդի իրավունքները։ «Այդ ռեգիոնում համապարփակ, արդար և կայուն խաղաղություն հաստատելու համար,— նշված է ԻԿԿ XIX համագումարում (1981 թ. փետրվար) Իսրայելի կոմկուսի Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ,— անհրաժեշտ է իսրայելական զորքերը դուրս բերել 1967 թվականին օկուպացված բոլոր արաբական հողերից, առ 4-ը հունիսի 1967 թվականի դրությամբ գոյություն ունեցած սահմանները վերածել խաղաղության սահմանների, իրականացնել Պաղեստինի արաբ ժողովրդի ինքնորոշման և Հորդանան գետի արևմտյան ափին, ներառյալ Երուսաղեմի արևելյան (արաբական) մասում և Գազայի հատվածում սեփական պետության ստեղծման իրավունքը, ապահովել պաղեստինցի գաղթականների հարցի արդար լուծումը ՄԱԿ-ի որոշումներին համապատասխան, հարգել Իսրայելի և արաբական պետությունների իրավունքներն ու սուվերեն գոյությունը խաղաղության, անվտանգության պայմաններում և ճանաչված սահմաններում»։*

*Իսրայելի հակաարաբական ռասիստական քաղաքականությունն ըստ ամենայնի աջակցություն է գտնում Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարող շրջաններում։ Զինելով Իսրայելը, ամերիկյան իմպերիալիզմը նրան դարձրել է ոչ միայն Մերձավոր Արևելքի, այլև Հարավային Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի ժողովուրդների դեմ ագրեսիայի ու նրանց ներքին գործերին միջամտելու իր ակտիվ աջակիցը։*

*Սակայն Լիբանանի վերջին իրադարձությունները մեկ անգամ ևս վկայում են, որ իմպերիալիզմի ու նրանց աջակից սիոնիստների դիտավորությունները բախվում են ժողովուրդների ազատության ու խաղաղության ձգտմանը։ Հակաամերիկյան, ինչպես նաև հակաիսրայելական տրամադրությունները ռեգիոնում բավական ուժեղ են։ Եվ, ինչպես ցույց են տալիս իրադարձությունները, արաբներին ուրիշի կամքը պարտադրել չի հաջողվում։*

*Մերձավոր Արևելքում իմպերիալիզմի կողմից կիրառվող ստրատեգիայում սիոնիզմն առանձնահատուկ դեր է խաղում։ Նրա երախայրիքը՝ Իսրայելը, իմպերիալիզմի և միջազգային նավթային մոնոպոլիաների հիմնական հարվածային ուժն է այն պայքարում, որը մղվում է արաբական աշխարհի սոցիալական պրոգրեսի և հեղափոխական միտումների դեմ՝ տնտեսական ու ստրատեգիական առումով չափազանց կարևոր այդ շրջանում իմպերիալիստական վերահսկողության հաստատման համար։ Հենց այդտեղ է սիոնիզմը վարում ռասսական գաղութակալության քաղաքականություն։ Ընդսմին այն իրականացվում է առավել կոպիտ ու դաժան ձևով։ Ուրիշի հողերը զավթելու և սիոնիստական պետության տարածքն ընդլայնելու ձգտումն այստեղ ամրապնդվում է օկուպացված հողերում Իսրայելի տիրապետության հաստատումով, բուն արաբ բնակիչների հողերի բռնագրավումով, նրանց ունեցվածքի կողոպուտով, հայրենի վայրերից նրանց արտաքսումով, արաբական բնական ռեսուրսների թալանով, զավթած տարածքների դեմոգրաֆիական դիմագծի փոփոխումով։*

*Միամտություն կլիներ այդ հակաարաբական քաղաքականության ակունքները որոնել սիոնիզմի հետ առնչություն չունեցող գործոններում։ Հարկ չկա զարմանալու, որ հենց այդպիսի «միամտությամբ» են տառապում առաջին հերթին սիոնիստական կազմակերպությունների առաջնորդները, իսրայելական պետության ղեկավար գործիչները և այդ քաղաքականության իրականացման համար անմիջականորեն պատասխանատու իմպերիալիստական երկրների նրանց հովանավորները։ Եթե նրանց լսելու լինենք, ապա ստացվում է, որ ոչ թե սիոնիզմը, այլ արաբ ժողովուրդները և ամենից առաջ Պաղեստինի արաբ ժողովուրդն է մեղավոր այն բանում, որ պաղեստինցիների մի զգալի մասը զրկվել է հայրենիքից, իսկ մյուսը խտրականության ու շահագործման է ենթարկվում իսրայելական օկուպացիոն վարչակարգի կողմից։ Ժամանակին*

Գ. Մեիրը հայտարարեց, որ արաբ գաղթականների պրոբլեմը հանելու «պատասխանատվությունն» ընկած է արաբական երկրների վրա, իսկ Ռ. Ռեյգանը, ելույթ ունենալով ԱՄՆ-ի «Բնայ Բրիթ» ազդեցիկ սիոնիստական կազմակերպության համագումարում, արաբների վրա բարդեց պաղեստինցի գաղթականների պայթյունալի պրոբլեմի գոյության մեղքը։ Պաղեստինյան պրոբլեմի նմանօրինակ աղավաղված մեկնաբանումը, որը զոհին է մեղավոր ներկայացնում, ոչ միայն անարդար է, այլև հակամարդասիրական քաղաքականությունն արդարացնելու միջոց է ծառայում։

Թել Ավիվից, Վաշինգտոնից հաճախակի և հաստատակամորեն առաջարկներ են արվում Պաղեստինի արաբ ժողովրդի պրոբլեմը լուծել պաղեստինցի գաղթականներին արաբական երկրներում, օրինակ՝ Հորդանանում, տարաբնակեցնելու ճանապարհով։ Եթե տասնամյակներ իր գոյության առաջին իսկ օրերից Իսրայելը սուր կոնֆլիկտի մեջ մտավ արաբական հարևանների և Պաղեստինի արաբ ժողովրդի հետ, ապա դա պայմանավորված էր, նախ, նրա սիոնիստական բնույթով, երկրորդ, իմպերիալիստական պետությունների հետ նրա ունեցած կապերով, պետություններ, որոնք ձգտում են իրենց տնտեսական, քաղաքական կամ ռազմական տիրապետությունը հաստատել արաբ ժողովուրդների նկատմամբ, և, երրորդ, արաբական հողերի հաշվին իր տարածքն ավելացնելու նրա ձգտումով։ Հենց այդ երեք գործոններն են կյանքի կոչել պաղեստինյան պրոբլեմը։

Պաղեստինի արաբ ժողովուրդը մասամբ ընկավ վտարանդիների, մասամբ էլ օկուպանտների կողմից խտրականության ենթարկվող էթնիկական խմբի վիճակի մեջ, որովհետև այդ էր պահանջում սիոնիստական դոկտրինան։ Սիոնիզմի կողմից գաղութակալության ամենադաժան և նենգ մեթոդների հետևողական ու պլանաչափ կիրառումը բխում է այդ շարժման ռասիստական գաղափարախոսությունից։ Հետևողականորեն վարելով իրենց զավթած տարածքներից բուն արաբ բնակչությանը արտաքսելու քաղաքականություն, սիոնիստական ղեկավարները քայլ առ քայլ մոտենում էին ռասիստական սիոնիստական պետություն ստեղծելու իրենց բաղձալի նպատակին։ Նրանց մտահղացմամբ, այդ պետությունը պետք է լիներ ոչ այլ ինչ, քան Մերձավոր Արևելքում սիոնիզմի հակաարաբական էքսպանսիոնիստական քաղաքականության իրականացնողը և միաժամանակ համայն աշխարհում սիոնիստական ազդեցության հաստատման ու ընդլայնման գործիքներից մեկը։

«Հրեական պետության» համար նախատեսված տարածքներից արաբներին «աննկատելիորեն» արտաքսելու սիոնիստական պլանը հանդիպեց տեղի արաբ բնակչության վճռական դիմադրությանը։ Իսրայելի կառավարող սիոնիստական շրջանների կիրառած էքսպանսիոնիստական, գաղութային կողոպուտի և բռնության քաղաքականությունը հարուցում է ժողովուրդների արդար ցասումն ու վրդովմունքը, հանդիպում օկուպացված արաբական տարածքների բնակչության հարաճուն դիմադրությանը, ուժեղացնելով նրա պայքարը հանուն իր օրինական իրավունքների պաշտպանության։

Իսրայելի սիոնիստական ղեկավարության ագրեսիվ քաղաքականության դեմ հանդես են գալիս նաև այդ երկրի պրոգրեսիվ ուժերը՝ տեղի կոմունիստական կուսակցության գլխավորությամբ։ «Մենք, իսրայելցի կոմունիստներս,— ՍՄԿԿ XXVI համագումարի ամբիոնից հայտարարեց ԻԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Մ. Վիլները,— պայքար ենք մղում իշխող սիոնիստական քաղաքականության դեմ, որը սպառնում է մեր ռեգիոնի խաղաղությանը և կարող է ծայր աստիճան վտանգավոր լինել բուն Իսրայելի համար։ Մենք դեմ ենք այն բանին, որ մեր ժողովուրդն օկուպանտ լինի, և երիտասարդությունը թնդանոթի միս ծառայի հանուն իմպերիալիստական շահերի։ Զդադարող արյունահեղության և տնտեսական ու սոցիալական սուր ճգնաժամի հետևանքով հարյուր հազարավոր իսրայելական քաղաքացիներ են հեռացել երկրից։ Սիոնիզմը, որը հրեաներին հուսալի ապաստան էր խոստացել, բանն այնտեղ է հասցրել, որ Իսրայելում ապրելը դարձել է չափազանց վտանգավոր»։

Իսրայելի կոմունիստական կուսակցությունը համերաշխ է Պաղեստինի



ազատագրման կազմակերպության ղեկավարությամբ Հորդանան գետի արևմտյան ափին, ներառյալ արևելյան Երուսաղեմը և Գազայի հատվածը, անկախ պաղեստինյան պետություն ստեղծելու համար իսրայելական օկուպացիայի դեմ արաբ ժողովրդի մղած պայքարին։

Սիոնիզմի գաղափարախոսությունն ու քաղաքականությունը վճռականորեն դատապարտել է Միավորված ազգերի կազմակերպությունը, որը սիոնիզմը հայտարարել է «ռասիզմի և ռասայական խտրականության ձև»։

Իսրայելական ագրեսիայի դեմ արաբ ժողովուրդների արդար պայքարը հետզհետե ավելի մեծ ճանաչում և աջակցություն է ստանում։ Ներկայումս արդեն ոչ ոքի համար գաղտնիք չէ, որ քանի դեռ լուծված չէ պաղեստինյան պրոբլեմը, չի կարող խաղաղություն լինել Մերձավոր Արևելքում։

Սիոնիզմը իր հետադիմական դիտավորություններն իրագործում է ԱՄՆ-ի իմպերիալիզմի հետ մեկտեղ։ Սոցիալիստական երկրները, ազգային-ազատագրական շարժումը, կոմունիստական և բանվորական կուսակցությունները, մյուս, այդ թվում և բուն Իսրայելի պրոգրեսիվ ուժերը անառիկ պատնեշ են դարձել սիոնիստական արկածախնդրությունների ճանապարհին։

Կրած պարտություններն ու անհաջողությունները սիոնիզմի ղեկավարներին ստիպում են որոնել իրենց շարժումն աշխուժացնելու, միջազգային հարաբերությունների և համաշխարհային քաղաքականության վրա ազդեցության մասշտաբներն ու ոլորտներն ընդլայնելու նոր հնարավորություններ։ ԱՄՆ-ի, մյուս արևմտյան տերությունների իմպերիալիստական շրջանները ձգտում են սիոնիզմը դուրս բերել համաշխարհային պրոգրեսիվ հասարակայնության քննադատության կրակի տակից, առաջվա պես շարունակում են նրան ապավինել կոմունիստական և բանվորական շարժման, ժողովուրդների ազատագրական շարժման դեմ իրենց մղած պայքարում։

Իմպերիալիզմի ծայրահեղ հետադեմ, ռազմաշունչ շրջանների հետ սիոնիստական պարագլուխների բլոկը առանձնապես վտանգավոր է ներկայումս, որովհետև ԱՄՆ-ի և նրա որոշ արևմտյան դաշնակիցների քաղաքականության մեջ իշխող դիրքեր են գրավել այն ուժերը, որոնք միջազգային լարվածությունը սրելու և սպառազինությունների մրցավազքն ուժեղացնելու քաղաքականություն են վարում։ Այդ կապակցությամբ կարևոր է ոչ միայն չթուլացնել, այլև մշտապես ուժեղացնել սիոնիստական շրջանների գաղափարախոսության ու պրակտիկայի դեմ մղվող պայքարը, մերկացնել սիոնիզմի հետադիմական դասակարգային էությունը, նրա ղեկավար գործիչների արկածախնդիր քաղաքականությունը։ «ՍՄԿԿ-ն,— շեշտված է կուսակցության XXVI համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ,— պայքարել է և միշտ էլ վճռականորեն կպայքարի սոցիալիզմի բնույթին խորթ այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք են շովինիզմը կամ նացիոնալիզմը, լինի դա, ասենք, հակասեմիտիզմ թե՛ սիոնիզմ»։ Անցյալ տարվա ապրիլին մեր երկրում հասարակայնության ներկայացուցիչների նախաձեռնությամբ կամավոր հիմունքներով ստեղծվեց սովետական հասարակայնության հակասիոնիստական կոմիտե։

Միջազգային սիոնիզմի գաղափարախոսական և քաղաքական արկածախնդիրների պրոպագանդիստական և ակնհայտ զրպարտչական գործողությունները ՍՍՀՄ-ի դեմ Արևմուտքի կողմից մղվող «հոգեբանական պատերազմի» մի մասն են։ Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների դեմ գաղափարախոսական դիվերսիաներ իրականացնելու համար օգտագործվում է չափազանց լայն ու ճյուղավորված պրոպագանդիստական ապարատ։ Աշխարհի 67 երկրներում հրատարակվում են միջազգային սիոնիզմի խոսափողը հանդիսացող հազար թերթ, հանդես և այլ պարբերականներ։ Օրինակ, ԱՄՆ-ում սիոնիստները վերահսկում են բոլոր պարբերական հրատարակությունների 70 տոկոսը, այդ թվում այնպիսի ազդեցիկ թերթեր և հանդեսներ, ինչպիսիք են «Նյու Յորք Թայմսը», «Չիկագո տրիբյունը», «Թայմը», ինչպես նաև հեռուստատեսային ծրագրերի 80 տոկոսը։ Սիոնիստներն իրենց գործակալներին ամեն կերպ խցկում են կապիտալիստական պետությունների մեծ մասի մամուլի, կինեմատոգրաֆիայի, ռադիոհաղորդումների և հեռուստատեսության ապարատը։

Սիոնիզմի, ինչպես նաև ողջ իմպերիալիստական ռեակցիայի հակակոմունիստական գործունեության միջուկը կազմում է հակասովետիզմը։ Սիոնիզմի ամեն տեսակի հակակոմունիստական ակցիան ուղղակի կամ անուղղակի ուղղված է նախ և առաջ Սովետական Միության դեմ։ Սովետների երկրի նկատմամբ սիոնիզմի տածած ատելության պատճառները դժվար չէ հասկանալ։ Սիոնիզմը իմպերիալիզմի երախայրիքն է։ Այն արտահայտում է հրեական խոշոր կապիտալի շահերը, որը չի կարող ի դեմս սոցիալիզմի և ՍՍՀՄ-ի չտեսնել իր մահաբեր թշնամուն։ Ռուսաստանի սիոնիստական կազմակերպությունները 1917 թվականի Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխությունը դիմավորեցին չափազանց թշնամաբար։ Սոցիալիստական հասարակարգը սիոնիզմին օրգանապես անընդունելի էր հրեա բուրժուազիայի համար անընդունելի լինելու պատճառով, որը հին Ռուսաստանի բոլոր շահագործողական ուժերի հետ միասին սովետական իշխանության հաղթանակի մեջ տեսավ իր պատմական պարտությունը։

Սովետական իշխանության ամրապնդումը և ՍՍՀՄ-ում սիոնիստական հակահեղափոխական խմբերի վերացումը սիոնիզմի պարագլուխներին ստիպեցին ձևափոխել իրենց հակասովետական գործունեության տակտիկան ու մեթոդները։ Գլխավոր դերը ստանձնեցին միջազգային սիոնիստական կենտրոնները, որոնք արտասահմանից մեր երկրի դեմ ծրագրում են ամեն տեսակի քայքայիչ, թշնամական գործողություններ, փորձելով դրանցում ներքաշել ազգությամբ հրեա սովետական անկայուն քաղաքացիների։ Հակասովետական պրովոկացիաների կազմակերպիչների ու ոգեշնչողների թվում հանդես են գալիս սիոնիզմի նշանավոր պարագլուխները, ինչպես նաև Իսրայելի կառավարող շրջանները։ Նրանցից թելերը ձգվում են դեպի ԱՄՆ-ի կենտրոնական հետախուզական վարչություն, իմպերիալիստական տերությունների ղեկավարները, Արևմուտքի ազդեցիկ քաղաքական գործիչները։

Ներկայումս ՍՍՀՄ-ի հրեա ազգաբնակչությանը նույն հեռանկարները կուզենային պարտադրել հրեական համաշխարհային կոնգրեսի գործիչները։ Ինչպես բազմիցս շեշտվել է այդ կազմակերպության կոնֆերանսներում ու համագումարներում, ՍՍՀՄ-ի նկատմամբ սիոնիզմի գլխավոր նպատակներից մեկն է՝ հրեական համայնքները վերածնել որպես դեպի Իսրայելն ու սիոնիզմը կողմնորոշվող «առանձին և հատուկ խմբեր», ինչպես նաև հող նախապատրաստել սովետական կառավարության ու սովետական հրեաների միջև կոնֆլիկտ առաջացնելու համար։

Առավել մեծ հաստատակամությամբ սիոնիստական շարժմանը այդ տեսակետն է պարտադրում Ն. Գոլդմանը։ Նա սովետական կառավարության ազգային քաղաքականությունը «անարդար և խտրական» է հայտարարում այն բանի համար, որ վերջինս հրաժարվում է ազգությամբ հրեա իր քաղաքացիներին յուրատեսակ «իրավունք» տրամադրել սովետական հասարակության մեջ ապրելու որպես առանձին խումբ, որի շահերը սերտորեն միահյուսված լինեն միջազգային սիոնիզմի և Իսրայելի կառավարող շրջանների հետ։ Այն, որ նմանօրինակ «իրավունքի» հռչակումը կնշանակեր վերածնել «նստակեցության գծի» ժամանակների նացիոնալիստական հին սահմանափակությունը և հրեա ազգության քաղաքացիների ճնշող մեծամասնությանը բռնությամբ պարտադրել այդպիսի ապրելակերպ, որը նրանք սկզբունքորեն մերժում են, Ն. Գոլդմանը լռությամբ է մատնում։ Նա, ինչպես և Արևմուտքի մյուս սիոնիստական պարագլուխները չեն ցանկանում նույնիսկ լսել, որ հրեա ազգաբնակչությունը, հաշվի չառնելով մարդկանց այն աննշան մասը, որոնց ապակողմնորոշել է սիոնիստական գաղափարախոսությունը, արդեն վաղուց է մերժել ինքնամեկուսացման ուղին, մեկընդմիշտ վճռելով իր ճակատագիրը կապել սոցիալիստական հայրենիքի, սոցիալիզմի և սովետական ժողովրդի հետ։

Ձախողում կրելով ՍՍՀՄ-ի հրեա ազգաբնակչությանը զանգվածաբար սիոնիստական շարժման մեջ ներգրավելու, սիոնիզմի համար հզոր բազա ստեղծելու իր փորձերում, միջազգային սիոնիզմը ստիպված եղավ փոխել իր տակտիկան։ Աստիճանաբար նրա հակասովետական գործունեության հիմնական առանցքը դարձավ ազգությամբ հրեա քաղաքացիների մեջ վտարանդվե-



լու տրամադրություն առաջացնելու և, հաջողության դեպքում, նրանց մի մասին Իսրայել կամ մյուս կապիտալիստական երկրներ արտագաղթել դրդելու ձգտումը։ Այդ բոլոր ջանքերի վերջնական նպատակն էր սովետական հասարակության կյանքից կտրել հնարավորին չափ առավել մեծ թվով հրեաների, նրանց կտրել կոմունիստական շինարարության գաղափարախոսությունից ու պրակտիկայից՝ Արևմուտքում ծավալվող հակասովետական կամպանիաներում և այլ նպատակներով նրանց օգտագործելու համար։

Սիոնիզմը, հրահրելով տարագրություն, միևնույն ժամանակ դրանով կուզենար Իսրայելի համար ապահովել էժան բանուժ, ՍՍՀՄ-ից և մյուս սոցիալիստական երկրներից արտագաղթածներին օգտագործել հակաարաբական նպատակներով՝ որպես իսրայելական բանակի զինվորներ կամ օկուպացված տարածքները յուրացնելու կոչված նորաբնակիչներ։

Եթե 1967 թվականի իսրայելական ագրեսիայից անմիջապես հետո սիոնիզմին հաջողվեց ՍՍՀՄ-ից և մյուս սոցիալիստական երկրներից հրեաների արտագաղթի որոշ հոսք առաջացնել, ապա հետագա տարիներին շեշտակիորեն կրճատվեց «ավետյաց երկիր» մեկնել ցանկացողների թիվը։ Օրինակ, 1975 թվականից ՍՍՀՄ-ից Իսրայել մեկնողները, 1973 թվականի համեմատությամբ, երեք անգամ ավելի քիչ էին։ Բացի այդ, տարագիրներից շատերը, բախվելով բուրժուական իրականությանը, գիտակցեցին իրենց թույլ տված սխալը և հայրենիք վերադառնալու ցանկություն հայտնեցին։

Այդ ամենը սիոնիստական պարագլուխներին դրդեց խոսելու այլ լեզվով։ 1976 թվականի փետրվարին Բրյուսելում հապճեպ կազմակերպվեց այսպես կոչված «Հրեական համայնքների համաշխարհային կոնֆերանս»։ Բացահայտ պրովոկացիոն նպատակներով գումարված այդ խառնաժողովի կազմակերպիչները չէին թաքցնում իրենց մտահոգությունն այն առթիվ, որ ՍՍՀՄ-ից Իսրայել վերաբնակվողների թիվը շեշտակիորեն կրճատվել է, որ սիոնիստական պրոպագանդայից միամտորեն խաբված տարագիրների ավելի ու ավելի մեծ մասն է ՍՍՀՄ վերադառնալու դիմում ներկայացնում։

Սիոնիզմի հակասովետական գործունեությունն առանձնապես աշխուժացավ միջազգային լարվածության թուլացման համար ՍՍՀՄ-ի ծավալած պայքարի առնչությամբ։

Վերջին ժամանակներս «Իսրայելի ձայնը» և այդ նույն հակասովետական ալիքով աշխատող արևմտյան ռադիոկայանները համարյա թե ամեն օր հանդես են գալիս «բողոքներով» ընդդեմ իբր ՍՍՀՄ-ում անցկացվող «հակահրեական կամպանիայի», որի ընթացքում, ինչպես հայտարարել է Թել Ավիվի «ձայնը», «ժխտվում է անվիճելին», այն է՝ «սիոնիզմի ազնիվ նպատակները»։ Իսրայելական պրոպագանդայի հետ ներդաշնակորեն են գործում նաև միջազգային սիոնիզմի մյուս զրպարտչական ծառայությունները, ամենից առաջ նրա ամերիկյան մասնաճյուղը։ Ոչ պատահաբար, իհարկե, այդ կամպանիայի մեջ ներգրավվել է նաև Սպիտակ տունը՝ ՍՍՀՄ-ին մեղադրելով հրեաների նկատմամբ «դաժանության» մեջ։ Խոսքը վերաբերում է կոորդինացված հակասովետական կամպանիային, որի նպատակն է վարկաբեկել ՍՍՀՄ-ի ազգային քաղաքականությունը, ատելություն հրահրել դեպի սոցիալիզմը։

Սիոնիզմը, իմպերիալիզմի առավել ագրեսիվ շրջանների հետ դաշնակցած, հարձակում է գործում լարվածության թուլացման քաղաքականության դեմ, մոբիլիզացնում իր շարժման բոլոր ռեսուրսները, սիոնիստական կապիտալի ողջ հզորությունը, քաղաքական ազդեցությունն ու կապերն օգտագործում այն հաշվով, որ ԱՄՆ-ի և մյուս իմպերիալիստական տերությունների կառավարող շրջաններին մղի դեպի «սառը պատերազմի» քաղաքականությունը։

ԱՄՆ-ի իմպերիալիստական շրջանների հետ սիոնիզմի հետադիմական քաղաքական դաշինքը լուրջ սպառնալիք է ժողովուրդների ազատությանն ու անկախությանը, համընդհանուր խաղաղության և պրոգրեսի գործին։ Եվ այդ վտանգավոր դիտավորությունների կանխումը արդիականության առաջադեմ ուժերի խնդիրն է։

---

# ՄՏՈՐՈՒՄՆԵՐ ՍԵՄԻՆԱՐԻՑ ՀԵՏՈ

**Խ. ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ**

1983 թ. սեպտեմբերի 27-ից մինչև հոկտեմբերի 3-ը Ֆինլանդիայում տեղի ունեցավ սովետա-ֆիննական սեմինար՝ նվիրված ժամանակակից մանկական գրականության հարցերին: Փոխադարձ համաձայնությամբ նախօրոք որոշված էր սեմինարի թեման՝ «Ֆանտազիան և իրականությունը մանկական գրականության մեջ»: Սակայն մտքերի փոխանակությունը դուրս եկավ այս հարցի շրջանակներից, և մեծ զրույց բացվեց առհասարակ մանկական գրականության պրոբլեմների շուրջ: Այս իմաստով սեմինարն ավելի համապարփակ բնույթ կրեց և ֆիննական գրողների կազմակերպության համար փաստորեն դարձավ պլենում, որի ժամանակ նրանք հնարավորություն ունեցան, սովետական մանկապատանեկան գրականության ներկայացուցիչների հետ մտքեր փոխանակելով, ի մի բերելու իրենց կարծիքներն ու հետևությունները՝ սեփականը համադրելով մեր մանկական գրականության փորձին:

Ֆիննական կողմից, գրողների միության նախագահ Իյորմա Կաննիլայի գլխավորությամբ, սեմինարին մասնակցում էին գրեթե բոլոր այն գրողները, որոնք գործում են մանկապատանեկան գրականության ասպարեզում: Սովետական կողմը ներկայացնում էին ութ գրողներ՝ Անատոլի Ալեքսինը (պատվիրակության ղեկավար), Բորիս Զախոդերը, Իրինա Ստրելկովան և Վալենտինա Մորոզովան (Մոսկվա), Բոգդան Չալին (Ուկրաինա), Վալենտին Լուկշան (Բելոռուսիա), Այնո Պերվիկը (Էստոնիա) և տողերիս հեղինակը, որպես Հայաստանի ներկայացուցիչ:

Ես նպատակ չունեմ մանրամասն նկարագրելու Ֆինլանդիա կատարած մեր այցը, թեև այդ ինքնատիպ երկրից ստացած տպավորությունը բավականաչափ վառ է և հետաքրքրական: Ասեմ միայն, որ ֆինն գրողները այնպես չեն վայելում կառավարության հովանավորությունը, ինչպես մեր գրողները: Ֆինլանդիայում գրողների միությունը պարզապես համախոհ գրողների մի կազմակերպություն է, որի նախագահն ու մյուս ղեկավարները ընտրվում են հասարակական կարգով և աշխատում առանց վարձատրության: Այսպես, գրողների միության նախկին նախագահը՝ Ռաունո Տոյվոնենը, ինչպես ինքն էր ասում, «տեխնոկրատ» է և այժմ խմբագրում է «Տեխնիկայի աշխարհը» ամսագիրը: Այժմյան նախագահ Իյորմա Կաննիլան, մի նիհար, բարեհամբույր, ժպտադեմ, քառասունհինգամյա մարդ, գյուղական ուսուցիչ է, որ ապրում է Հելսինկիից բավական հեռու, Տամպերե (Տամերֆորս) քաղաքի մոտ և, այնուամենայնիվ, կարողանում է միության գործերը վարել մայրաքաղաքի երեք սենյականոց մի հավաքատեղիում, որ գրողները վարձել են, մինչդեռ երազում են ձեռք գցել Սենատի հրապարակի վրա գտնվող մի հին ու գեղեցիկ երկհարկանի տուն:

Ֆինլանդիայում մանկական գրականությամբ զբաղվող գրողները մեծ մասամբ միջին տարիքի մարդիկ են, թեև, հատկապես Տամպերեի մասնաճյուղում կան նաև ոչ քիչ թվով երիտասարդներ: Սեմինարի օրերին հետաքրքրական ելույթներ ունեցան մի քանի գրողներ, օրինակ Կիրսի Կուննասը, Յակո Սյուրյան. առաջինը՝ բանաստեղծուհի, որ հրաշալի գիտե հայրենի բնաշխարհը և տիրապետում է իր վառ երևակայությամբ մանկան հոգին հմայելու արվեստին և որի գրքերից մեկը ձևավորել է հենց իր տասներեքամյա որդին, երկրորդը, որ Կիրսիի ամուսինն է, մի ճանաչված արձակագիր, Բու Կարպելանն ու Պեկկա Սուխոնենը, որոնք հանդես եկան ընդարձակ զեկուցումներով, Ասքոն և ուրիշներ:

Ի՞նչ հարցեր էին արծարծում հիշյալ գրողները՝ աշխատելով դուրս չգալ սեմինարի թեմայի շրջանակներից: Պեկկա Սուխոնենն, օրինակ, որի խոսքը, թերևս, ամենահետաքրքրականն էր ֆիննական կողմի ելույթներից, խոսելով մանկապատանեկական գրականության մեջ ֆանտազիայի և իրականության հարաբերության հարցի մասին, հանգամանորեն անդրադարձավ մանկական գրականության գաղափարական բովանդակությանը՝ մերժելով սնամեջ «մանկականությունը» և առաջ քաշելով մանուկ սերնդի վսեմ բարոյականության, հումանիզմի, աշխատասիրության, ժողովրդասիրության ոգով դաստիարակելու անհրաժեշտությունը՝ կապելով այդ հատկապես գրողի հավատամքի ու վառ երևակայության հետ: Ի դեպ, նա ասաց նաև (և օրինակներ բերեց ինչպես համաշխարհային, այնպես էլ ֆիննական դասական գրականությունից), որ փոքրիկների համար ստեղծվող գրականությունը ոչ պիտի սքողի իրականության ցավոտ կողմերը և ոչ էլ չափազանցնի դրանք՝ անփորձ մանկանը գցելով սարսափի մեջ: Բու Կարպելանը, որի զեկուցումը նույնպես լսվեց մեծ ուշադրությամբ, արտահայտեց ֆինն գրողների մեծ երազն այն հզոր գրականության մասին, որը մանկանը պիտի փրկի տեխնիցիզմի պատճառած չարիքներից: Ասքոն պահանջեց միմյանցից սահմանազատել արկածայինն ու արկածախնդրականը, ժյուլ-վեռնյան պայծառ երևակայությունն ու մատից ծծած ֆանտազյորությունը, որն այժմ այնքան առատ է համաշխարհային մանկական գրականության մեջ: Նա խոսեց պոռնոգրաֆիկ «բեստսելլերների» մասին, որ արևմուտքում հեղեղել են գրական շուկան: Իր ելույթում Իյորմա Կաննիլան շոշափեց սոցիոլոգիական ինֆորմացիայի առատության հարցը, այն, որ քսաներորդ դարի երեխան հոգեկան աքսելերացիայի պայմաններում, փաստորեն զրկվում է մանկությունից, այն պայծառ ժամանակների զգացողությունից, երբ ամեն ինչ չափվում է հեքիաթի կշեռքով: Նա հենց դրանով բացատրեց նաև իսկական բարձրարժեք մանկական գրականության սակավությունը, որոշ գրողների ամլությունը...

Հասկանալի է, մենք՝ սովետական գրողներս, սեմինարի էինք մեկնել նույնպես պատրաստ մեծ ասուլիսի, մենք ևս գիտեինք, որ խոսակցությունը դուրս կգա մեկ թեմայի շրջանակներից և կշոշափի առհասարակ ժամանակակից մանկապատանեկան գրականության կարևոր պրոբլեմները, հեռանկարներն ու զարգացման ճանապարհին ծառացած խոչընդոտները: Անատոլի Ալեքսինը բացման խոսքում պատմեց սովետական մանկական գրականության արդի վիճակի մասին և ներկայացրեց սեմինարին մասնակցող սովետական գրողներին, Իրինա Ստրելկովայի և Այնո Պերվիկի զեկուցումներում ներկայացվեցին սովետական մանկական գրականության մեջ մեծ երևակայության ուժով պատկերված ժամանակակից կյանքի պատկերները՝ այսինքն սոցիալիստական ռեալիզմի այն մեթոդը, որով մեր մանկագրությունը կոչված է դաստիարակելու մատաղ սերնդին հայրենասիրության, հումանիզմի և ռոմանտիկ սխրանքների պատրաստակամության ոգով: Բոգդան Չալիի, Վալենտին Լուկշայի, Բորիս Զախոդերի, տողերիս հեղինակի ելույթներում, որոնք նույնպես գրական բավականաչափ մեծ նյութ էին ընդգրկում, արծարծվեցին կարևոր հարցեր: Դրանք նախ և առաջ մանկական գրականության առանձնահատկություններից բխող տեսության հարցերն էին, այն, որ որքան էլ մանկական գրականությունը գեղարվեստական ողջ գրականության անբաժանելի մասն է, իսկ Պուշկինի, Թումանյանի և մյուս դասականների օրինակով կարելի է ասել նաև՝ լավագույնը, այնուամենայնիվ, այն ունի իր յուրահատուկ կողմերը, որոնցով բնութագրվում է որպես կոնկրետ տարիքի ընթերցողներին հանձնարարվող գեղարվեստական գրականություն: Այս հարցը շոշափեցին բոլորը՝ օրինակներ բերելով ռուս, հայ, ուկրաինական, բելոռուս և էստոնական ժամանակակից մանկական գրականություններից:

Մերոնց ելույթներում շեշտվեցին ինտերնացիոնալ դաստիարակության և խաղաղության պաշտպանության կարևոր հարցերը՝ մանկապատանեկան գրականության մեջ: Խոսք բացվեց ժողովրդական բանահյուսության մոտիվների, հատկապես հեքիաթների մշակումների մասին, որոնց մեջ առանձնակի նշանակություն ունի գրողի վառ երևակայությունը և որոնք, ինչպես մեծ Թումանյանն է ժամանակին ասել, իրենց մեջ ամփոփում են իրականության հավիտենական սիմվոլներ: Այս և նման հարցադրումները, որոնք ջերմ պաշտպանություն էին գտնում նաև ֆինն գրողների ելույթներում, փաստորեն սեմինարը դարձրին վեհ գաղափարներով ապրող համախոհների մտերմիկ ասուլիս: Ընդհանրապես, բոլորիս ըստացած առաջին տպավորությունն այն էր, որ ֆինն գրողները մեծ համակրանք են տածում մեր երկրի ու նրա վարած խաղաղասիրական քաղաքականության նկատմամբ: Նրանց ելույթներում երևակվում էր արևմուտքում մանկական գրականության դեմ ծառացող մի մեծ խոչընդոտ, որի մասին ուզում եմ գրել առանձին:

Մեր կենցաղում չկա, իսկ նրանց մոտ արդեն վաղուց կենցաղի մեջ է մտել տեսագրական ապարատը, այսպես կոչված «վիդիոն», որը միացնելով հեռուստացույցին և մեջը դնելով համապատասխան ժապավենը, կարող ես

դիտել ուզածդ կինոնկարը, ներկայացման տեսագրությունը, սպորտային հաղորդումը, մուլտիպլիկացիոն ժապավենը, ուսուցողական դիդակտիկ նյութեր ու նաև այնպիսի բաներ, որ ո՛չ միայն մանուկներին, այլև մեծահասակներին չենք հանձնարարում:

Անշուշտ մեր ժամանակների գիտության ու տեխնիկայի բարձրագույն նվաճումներից մեկն է սա, սակայն, ինչպես յուրաքանչյուր նվաճում, այն կարող է և, դժբախտաբար, կատարում է նաև սև գործ: Եթե մի դեպքում «վիդիոն» օգնում է ուսուցչին՝ մատչելի դարձնելու ավանդվող առարկան և նպաստում է մանկան աշխարհաճանաչողությանը, ապա մի այլ դեպքում ծանր հարված է հասցնում մանկան դաստիարակությանը՝ խաթարելով բարոյականության այն նորմերը, որ հասարակությունը ջանում է արմատավորել մանկան աշխարհում: Հայտնի է, որ միևնույն գիրքը մենք չենք հանձնարարի բոլոր տարիքի երեխաներին, հայտնի է, որ կան բաներ, որոնց մասին մենք չենք խոսի վեց—յոթ տարեկան մանուկների հետ, վերջապես՝ հայտնի է, որ սիրո, համակրանքի, տարբեր սեռերի մարդկանց մըտերմության հարցերը մանկական գրականության մեջ բացարձակապես պլատոնական են, ռոմանտիկ ու վարդագույն արտացոլքը ամենաբարձր բարոյականության ու հումանիզմի: Իսկ այն դեպքում, երբ ամեն մի երեխա մի քանի տասնյակ մարկ վճարելով կարող է գնել էրոտիկ ֆիլմերի տասներկուժամյա ժողովածու, երբ նրա անփորձ հայացքի առջևով ժամեր շարունակ կարող են անցնել ամենամռայլ և ամենաանբարոյական տեսարաններ, էլ ի՞նչ խոսք կարող է լինել նորմալ դաստիարակության մասին: Սակայն սա բո՛լորը չէ:

Ենթադրենք, թե մեծահասակները հաջողությամբ կարողանան թույլատրվածի սահմաններում պահել մանկան «վիդիոռեպերտուարը», ենթադրենք, թե նրանց հաջողվում է մանուկներին հեռու պահել պոռնոգրաֆիկ ու սարսափների ֆիլմերից, մի՞թե դրանով վերանում է վտանգը, այն, որ «վիդիոն» տենդենցներ է դրսևորում իրենով լրիվ փոխարինելու մանկական ընթերցանությունը: Եթե մի ժամվա մեջ երեխան կարող է տեսնել Հեկլբերի Ֆիննի և Նեգր Ջիմի ճանապարհորդությունը լաստով, Միսսիսիպի գետն ի վար, հաղորդակից լինել նրանց զարմանալի ու ռոմանտիկ արկածներին, ապա հարց է ծագում՝ դրա փոխարեն նա կցանկանա՞ կարդալ Մարկ Տվենի հանճարեղ ստեղծագործությունը՝ ծախսելով ոչ թե մեկ, այլ տաս—տասնհինգ ժամ:

Այս հարցն էին տալիս մեր ֆինն բարեկամները և ցանկանում էին իմանալ մեր կարծիքը: Թեև մեր մյուս ընկերները ևս այս կամ այն չափով անդրադարձան դրան, սակայն դրա մասին ավելի հանգամանորեն խոսելը հանձնարարվեց ինձ, և ես ուզում եմ սույն հոդվածում անդրադառնալ այնտեղ իմ հայտնած նկատառումներին:

Ես կսկսեմ մի ընդհանուր հարցից՝ ի՞նչ է մանկական գրականությունը: Պարզունակ թըվացող այդ հարցը, այնուամենայնիվ, տարբեր կերպ է ընկալվում և արժանանում տարբեր պատասխանների:

Կան մարդիկ և նույնիսկ գրականության տեսությամբ զբաղվողներ, որոնք ողջ գրականությունը, այդ թվում մանկան ընթերցանության համար ստեղծված գրքերը, դիտում են որպես բացառապես ինֆորմացիայի աղբյուր, իսկ երկի գեղարվեստական կողմը՝ որպես սոսկ միջոց այդ ինֆորմացիան ավելի լրիվ տեղ հասցնելու համար: Այս կերպ մտածողների համար միակ կարևորն այն է, թե ի՛նչ է արտացոլում կամ ինչի՛ մասին է գիրքը: Օրինակ, հաճախ կարելի է կարդալ. «Գիրքն արտացոլում է գյուղի մարդկանց աշխատանքը, նրանց տքնությունը, սերն ու մտորումները, երիտասարդության ձգտումները...» և այլն: Այս ձևակերպումն առաջին հայացքից կարող է նաև համապարփակ թվալ, մանավանդ որ այստեղ, ասես թե, չի մոռացված նաև գրական երկի հերոսը իր ապրումներով ու ձըգտումներով: Արդ, եթե այս ձևակերպումը թերի չէ, եթե գեղարվեստական գրականության նպատակն այս է միայն, եթե այդ գրականությունը սոսկ ընդարձակ տեղեկանք է կոնկրետ աշխարհագրական մի կետում կոնկրետ ժամանակի մեջ տեղի ունեցած դեպքերի, ապրող մարդկանց, թեկուզ նույնիսկ նրանց ապրումների ու ձգտումների մասին, ապա սրան միանգամայն հաջողությամբ կարող են փոխարինել հեռուստատեսությունը, կինոն և այդ «վիդիոն», որը ես դեռևս չեմ տեսել: Մի ժամանակ, երբ համր կինոն («Մեծ Համրը») նոր-նոր էր մտնում իր իրավունքների մեջ և դեռ առաջին փորձերն էին արվում դասական գրականության առավել աչքի ընկնող երկերն էկրանավորելու, նույնպես եղան մարդիկ, որ կինոյի մեջ տեսան գեղարվեստական գրականության մահը: Նույնը տեղի ունեցավ դրանից տասնյակ տարիներ անց՝ 1940—1950-ական թվականներին, երբ գործնականորեն հայտնագործվեց հեռուստատեսությունը: Բայց այդ երկու մեծ նվաճումները, որոնցում միահյուսված են տեխնիկայի ու արվեստի համամասները, ինչպես պարզվեց, այնուամենայնիվ չկարողացան արգելակել գեղարվեստական գրականության ընթերցանության գործը: Այժմ



Հայաստանում, մասնավորապես մանուկներն ու պատանիները, անհամեմատ ավելի շատ են կարդում, քան նրանց տարեկիցները դարասկզբին ու սովետական առաջին տարիներին: Դրա վկայությունը մեր մանկական գըրքերի տպաքանակների շեշտակի աճն է: Այդ կարող են վկայել նաև հանրապետության դպրոցական, գյուղական, շրջանային, քաղաքային ու հանրապետական մանկական գրադարանների հարյուրավոր աշխատակիցները: Ի՞նչն է սրա պատճառը:

Նախ՝ որոշակի նշանակություն ունի, թե հենց մանկուց ինչո՞վ ենք կերակրում մենք մեր մանուկներին, ի՛նչ գրականություն և ի՛նչ հերթականությամբ ենք առաջարկում, ի՛նչ գաղափարների է ծառայում մեր հանձնարարած գրականությունը: Ընթերցանությանը վարժեցնելը հսկայական նշանակություն ունի: Եթե մարդը հենց մանկուց վարժվում է ընթերցանության, եթե մենք կարողանում ենք նրա մեջ սեր ու ճաշակ պատվաստել գրքի նկատմամբ, ապա մինչև կյանքի վերջն էլ նա ամուր կապված կմնա գրքին: Չմոռանանք, որ, ինչպես Մակարենկոն է ասել, մարդու դաստիարակությունն ավարտվում է մի քանի տարեկան հասակում, իսկ դրանից հետո վերադաստիարակությունն ավելի դժվար ու աշխատատար պրոցես է:

Բացի դրանից, այս խնդրում առանձնակի դեր է խաղում նաև գրականության՝ որպես արվեստի, սպեցիֆիկան: Ինչպես գեղանկարչությունը, երաժշտությունը և մյուս արվեստները, այնպես էլ գեղարվեստական գրականությունը չի կարելի դիտել որպես սոսկ ինֆորմացիայի աղբյուր, իսկ երկի գեղարվեստական կողմը՝ որպես ինչ-որ երկրորդական մի բան, որը կոչված է, իբր, միայն ավելի մատչելի դարձնելու բովանդակության ընկալումը: Լուվրի, Էրմիտաժի, Տրետյակովյան պատկերասրահի սքանչելի գլուխգործոցները դիտելիս մենք չենք էլ մտածում, թե դրանք մեզ տեղեկություններ են տալիս բնության այս կամ այն երևույթի, տեղավայրի կամ բնորդների մարմնակազմի մասին, թեև այդպիսի տեղեկություններ, իհարկե, ստանում ենք: Դիտելով Պիկասոյի, Գուտուզոյի, Սարյանի և քսաներորդ դարի մյուս մեծ նկարիչների կտավները, մենք չենք էլ զգում, որ դրանք ունեն նաև հսկայական ճանաչողական արժեք: Եթե մենք հմայված լսում ենք ֆինն մեծ երգահան Ժան Սիբելիուսի ստեղծագործությունները, ապա ո՛չ միայն նրա համար, որ տեղեկություններ ստանանք ֆինն ժողովրդի երաժշտական մտածողության մասին: Արվեստը չի կարող ապրել առանց սոցիոլոգիայի, սակայն այն սոսկ սոցիոլոգիա չէ և ոչ էլ սոսկ պատմություն կամ տեղեկանք այս կամ այն բանի վերաբերյալ: Մեր մեծ Թումանյանը մի տեղ օգտագործում է մի թևավոր խոսք, որի իմաստը շատ խոր է ու համապարփակ: Նա ասում է՝ բրուտը կավից կճուճ է սարքում, մինչդեռ աստված այդ նույն կավից արարեց մարդուն: Այսինքն՝ բանը միայն նյութը չէ, արտացոլման առարկան չէ, ինչը չէ, այլև՝ ինչպեսը: Ուշադրություն դարձրեք, թե համաշխարհային գրականության մեջ որքա՞ն է տարածված այսպես կոչված «եռանկյունին»: Դասական վեպերի զգալի մասը վերաբերում է նրան, թե մարդուն ինչ տվայտանքներ է պատճառում մերժված սերը, չիրագործված փափագը: Եվ, այնուամենայնիվ, այդ պրոբլեմին նվիրված գրքեր կան, որ կարդացվում ու վերակարդացվում են սերնդից սերունդ, մինչդեռ դրանց անհաջողակ նմանակները մեռնում են հազիվ ծնված:

Գրականությունն արվեստ է և, որպես այդպիսին, մեծապես պայմանավորված է նաև այն գեղարվեստական հնարանքներով, որոնցով արտացոլվում է գաղափարը: Բոլոր մյուս արվեստներից ավելի շատ տեղեկություններ տալով կյանքի մասին, միաժամանակ այն պատճառում է գերագույն հաճույք, որը երբեմն բացատրել իսկ չես կարող, այլ կարելի է միայն զգալ: Եվ այս հաճույքը տարբեր է այլ արվեստների պատճառած հաճույքից, ինչպես միմյանցից տարբեր են զանազան ծաղիկների բույրերը: Ահա թե ինչու այն չի կարող փոխարինվել ուրիշ ոչնչով: Եթե մենք գրքերը կարդայինք միայն դրանց բովանդակությանը ծանոթանալու համար, ապա մեզնից ոչ մեկը սիրած գիրք չէր ունենա: Ես բերանացի գիտեմ Պուշկինի «Եվգենի Օնեգինը», Թումանյանի պոեմները, բալլադները, բանաստեղծությունները և արձակ էջերն անգամ, ես Մարկ Տվենի «Թոմ Սոյերի արկածներն» ու «Հեկլբերի Ֆիննի արկածները» կարդացել եմ մի քանի տասնյակ անգամ, ինչպես անընդհատ մեծ հաճույքով լսել եմ Կոմիտասի «Գարուն ա, ձուն ա արել» երգը, և, այնուամենայնիվ, Պուշկինի չափածո վեպը, Թումանյանի ստեղծագործությունները, Տվենի հիշածս գործերը ես կարդում ու կարդում եմ ավելի քան հիսուն տարի և չեմ հագենում, ինչպես չեմ հագենում Կոմիտասի երգից: Լավ գրքի հետ հաղորդակցվելու, այսինքն՝ ընթերցանության գերագույն հաճույքը չի կարող տալ ոչ մի բան. ո՛չ կինոն, ո՛չ հեռուստատեսությունը և ոչ էլ այդ «վիդիոն»:

Մնաց, որ մանկական գիրքը պիտի լինի հոգեպարար, հրաշալի, համակող, ինչպես Կոմիտասի ու Սիբելիուսի երաժշտությունը, և մանուկներն այն չեն փոխի ոչ մի բանի հետ:

# ՀԱՅՐԵՆԻՔԻ ՎԵՐԱԾՆՈՒԹՅԱՄԲ ՈԳԵՇՆՉՎԱԾ

ԶԱՐԳԱՑԱԾ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ հասարակության հոգևոր կյանքի հարստացման կարևոր աղբյուրներից է անցյալի ժառանգության կենսունակ արժույթների օգտագործումը, որոնք համահնչուն են արդիականության հուզող հարցերին: Այս առումով հարկ է ասել, որ տակավին ըստ արժանվույն չի ուսումնասիրված գրող Զապել Եսայանի կյանքն ու գործը, որն իր գրչով ու ակտիվ գործունեությամբ մեր ժամանակակիցն է ու համախոհը:

Բարդ է եղել անվանի գրող և հրապարակախոս Զապել Եսայանի կյանքի ու գրական գործունեության, ստեղծագործական որոնումների, ինքնահաստատման ուղին: Ունենալով հախուռն խառնվածք՝ նա անձնվեր արձագանքել է հայ հասարակական-քաղաքական մեծ ու փոքր իրադարձություններին, համարձակ քննադատել օսմանյան բռնակալությունը, դատապարտել հայ բարձրացող բուրժուազիայի հակաժողովրդական էությունը, իր համակրանքն ու սերն է արտահայտել աշխատավոր և ընչազուրկ մարդկանց նկատմամբ:

Գրողի կենսագրությանը ծանոթանում ենք **Սիլիհտարի պարտեզները** ինքնակենսագրական վեպի միջոցով: Նրա մասին գրվել է նաև ժամանակի պարբերական մամուլում, իսկ մեր օրերում Եսայանի կյանքի ու գրական-հասարակական գործունեության ամբողջական պատկերը ներկայացնող լուրջ երկեր են ստեղծել գրականագետներ Ս. Արզումանյանը, Գ. Ստեփանյանը և ուրիշներ:

Զապել Հովհաննեսի Հովհաննիսյանը (Եսայանը) ծնվել է 1878 թվականին, Կոնստանդնուպոլսում: Եսայանը զուգահեռներ է տեսնում իր ծննդյան օրվա և ռուսական բանակի տարած հաղթանակների միջև (խոսքը 1877—78 թթ. ռուս-տաճկական պատերազմի որոշ գործողությունների մասին է):

Չորս տարեկան հասակում գրաճանաչություն սովորելով հորից, այնուհետև ուսանելով մասնավոր կրթության դասընթացներում, 1888 թվականին նա ընդունվում է Սկյուտարի Ս. Խաչ վարժարանը, աշակերտում գրող, հրապարակախոս և հասարակական գործիչ Արշակ Չոպանյանին: Նրա ուսումնառության երկրորդ շրջանը կապվում է Սորբոնի համալսարանի և ֆրանսիական միջավայրի հետ, միջավայր, որտեղ առնչվում էին Ռուսաստանի ու Եվրոպայի հասարակական-քաղաքական հարաբերությունները, որտեղ գերմանական դասական փիլիսոփայության հետ գոյատևում էին տարբեր աշխարհայացքային դըպրոցներ:

1902-ին Զապել Եսայանը վերադարձել է Կ. Պոլիս և աշխատել «Ծաղիկ» շաբաթաթերթում: Այնուհետև ապրել է մերթ Փարիզում ու Բաքվում, մերթ Պոլսում ու Երևանում: Եղել է Հայաստանի օգնության կոմիտեի Փարիզի մասնաճյուղի անդամ: Վաղ մանկությունից իսկ, ընտանեկան հարկի տակ, կրթված ու բանիմաց հոր ազդեցությամբ նա դաստիարակվել է տարբեր ազգերի աշխատավորների բարեկամության, խոր մարդասիրության ոգով: Ինչպիսի՜ ջերմ հոգեհարազատությամբ էր նա կապված թրքուհի Ֆայիզեի հետ: Հիշենք հրեա թիթեղագործի հետ կապված միջադեպը **Սիլիհտարի պարտեզները** վեպից: Փողոցում ծաղր ու ծանակի են ենթարկում թիթեղագործին, որովհետև նա «յահուդի» է, իսկ յահուդիները չարչարել, խաբել են Հիսուսին: Խռովահույզ աղջնակը՝ ինքը Զապելը, հարցնում է հորը. «Ճի՞շտ է, որ յահուդիները գեշ են»:

— Աղջի՛կս, չկա գեշ ժողովուրդ այս աշխարհիս վրա: Կան գեշ մարդիկ և լավ մարդիկ:

— Հապա թուրքե՞րը:

— Նո՛ւյնպես:

Պատասխանում է հայրը:

Հոկտեմբերյան հեղափոխությունը և նրան հաջորդած Նոյեմբերյան արշալույսը կործանումից փրկեցին Արևելյան Հայաստանում դաշնակցական ծանր լծի տակ հեծող հայ ժողովրդին և սատար կանգնեցին գաղթական հայությանը: Հայ ժողովուրդը գտավ իր իսկական ազատությունը և պետականությունը՝ իր ճակատագիրը սեփական ձեռքերով տնօրինելու հաստատ իրավունքով:

1918— 20 թթ. Սովետական Ռուսաստանում ապաստանեցին տաճկական յաթաղանից փրկված հարյուր հազարավոր գաղթական հայեր, որոնք ապաստան գտան միայն սովետական իշխանության հովանու ներքո և բռնեցին նոր կյանքի ուղին, վերածնության ուղին:

1918 թվականին Մոսկվայում ստեղծվեց «Կոմունիստ» շաբաթաթերթը, որի խմբագիրն էր Վահան Տերյանը: Այս թերթը հրապարակում էր հոդվածներ սովետական կառավարության կողմից փոքր ազգերին տրվող ինքնուրույնության, նրանց հեղափոխական պայքարի մեջ ներգրավելու մասին, հաղորդագրություններ, կոչեր ու թռուցիկներ: Այդ օրերին Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ Վ. Տերյանը գրեց «Զեկուցագիր Տաճկահայաստանի մասին», կազմեց «Տաճկահայաստանի մասին» դեկրետի նախագիծը, որը 1917 թ. դեկտեմբերի 31-ին հաստատվեց Ժողովրդական կոմիսարների խորհրդում: Իր մի շարք հոդվածներում, առանձնապես **Ի՞նչ է ասում Լենինը գյուղացիներին** և **Նամակներ հայ գյուղացիներին ու բանվորներին** գրքույկներում Տերյանը համոզմունքով ու հետևողականորեն պաշտպանում էր այն միտքը, որ «Բանվորական ու գյուղացիական Ռուսաստանի սոցիալիստական կարմիր գնդերն են, որ պիտի մի գեղեցիկ օր եղբայրական ձեռք մեկնեն տանջված ու կեղեքված, մահացու վտանգի մեջ գտնվող հայ գյուղացուն ու բանվորին» (Վ. Տերյան, **Երկերի ժողովածու,** հ. 2, «Հայպետհրատ», 1961, էջ 447):

Սփյուռքահայ առաջավոր գործիչները, գրողներն ու մտավորականները միշտ էլ մի առանձին ոգևորությամբ են ընդունել ռուսական առաջավոր մտքի գաղափարները, ռուս ժողովրդի հեղափոխական պայքարն ու տարած հաղթանակները, դրանց արձագանքել են շատերը և կանգնել սովետական իշխանության պաշտպանության դիրքերում:

Մինչև 1915 թ. մեծ եղեռնը Զապել Եսայանը արևմտահայ պարբերական մամուլում ամենից շատ տպագրվող հեղինակն էր: Նա սկսել էր հոգեբանական փոքր էտյուդից, մեծ հռչակ վայելել նորավեպի և էսսեի ասպարեզում, գրել քաղաքական պամֆլետներ, սոցիալ-հոգեբանական աշխատություններ: Նա դատապարտել է համաշխարհային առաջին պատերազմը և դրա հետևանքով Բալկաններում ու Արևմտյան Հայաստանում ստեղծված քաղաքական անբարենպաստ պայմանները, հայկական ցեղասպանության մոլեռանդ կազմակերպիչներին: Հենց այս գաղափարներով էլ նա ոգեգրվել է աշխատավորական զանգվածների քաղաքական պայքարին: Պատերազմական կյանքի սարսափները, հայ ժողովրդի ցեղասպանությունն ավելի են խորացրել Եսայանի ատելությունը պատերազմի նկատմամբ:

Հայտնի է, որ 1916 թ. փետրվարի 6-ին «Հայկական վերջին հալածանքները» (տե՛ս «Մշակ», Թիֆլիս, 1916, էջ 27) թեմայով Թիֆլիսում կարդացած դասախոսության մեջ ընդհանուր գծերով նա ներկայացնում է արևմտահայ աշխարհի ողբերգությունը, ապա նույն բնույթի զեկուցումներ է կարդում Բաքվում, Մոսկվայում: Դրանք ամփոփված են Թիֆլիսի հայ գրողների ընկերության հրատարակած **Թրքահայ ժամանակակից գրողներ** գրքույկում (տե՛ս ԳԱԹ, Զ. Եսայանի ֆոնդ, № 1787):

Այնուհետև Եսայանը Բաքվից անցնում է Իրան, ապա լինում է Ալեքսանդրիայում, Կահիրեում, Հալեպում, Բեյրութում, Ադանայում, Այնթափում, Ուրֆայում, Մերսինում, Համնում, հասնում մինչև Դեր Զոր, տեսնում ամայացած քաղաքներն ու գյուղերը, հանդիպում հատուկենտ հայերի, տարբեր տեղերից հավաքում է հայ որբուկներին և նրանց հանձնում որբախնամ ընկերություններին: Այդ շրջագայության տպավորության տակ գրում է **Ժողովրդի մը հոգեվարքը** պատմագեղարվեստական ուսումնասիրությունը, ուր փաստական նյութի իմացությամբ ներկայացրել է պատերազմից տուժած մարդկանց ծանր կացությունը: Այստեղ հեղինակը մեծ լավատեսությամբ ու ջերմ սիրով է արտահայտվում հայ ժողովրդի վերածննդի մասին:

Արևմտահայ գրողների ու արվեստագետների՝ դեպի նոր, Սովետական Ռուսաստանը կողմնորոշվելու համար մեծ դեր խաղացին 1918—20 թվականները, երբ դաշնակցական կառավարությունը բռնել էր ո՛չ միայն անջատողական, հակառուսական գիծ, այլև լծվելով իմպերիալիզմի և ինտերվենտների կառքին՝ վարում էր հակասովետական քաղաքականություն:

Բնութագրական է Հովհաննես Թումանյանի սփյուռքահայությանը՝ «Աշխարհի ամեն կողմ ցրված հայոց ժողովրդին» ուղղված հուզիչ կոչը մեծ Հոկտեմբերից հետո, որտեղ մասնավորապես ասված է. «Արդ լսիր, հայությո՛ւն, ուր էլ որ լինես՝ Եվրոպայից մինչև Հնդկաստան և ամենուրեք, լսիր քեզ կանչող հայրենիքի ձայնը և շտապիր օգնության ամեն բանով, ինչով որ կարողանաս, որ ունենաս էն, ինչ որ երազել ես դարերով— ազատ ու շեն հայրենիք» (Հովհ. Թումանյան, **Երկեր,** հ. 4, 1969, «Հայաստան» հրատ., էջ 310):

Սովետական Հայաստանի կառավարության նոր ձեռնարկումները հայրենադարձության կազմակերպման գործում ունեցան իրենց վըճռական նշանակությունը և լայն արձագանք գտան սփյուռքահայության շրջանում: Չնայած հակասովետիզմի թույնով տոգորված դաշնակ գրչակներն աղմկեցին՝ փորձելով խլացնել հայրենիքի ձայնը, սակայն նրանց դեմ ծառացան սփյուռքահայ սթափ ու ողջամիտ մըտավորականությունը, գրողներն ու արվեստագետները, կոմունիստական ու սոցիալիստա-

կան կուսակցությունները և աշխատավոր մարդիկ: Սկսվեց անվանի մտավորականների վերադարձը հայրենիք: Առաջինը եկավ Ծիրվանզադեն, ապա՝ Ավ. Իսահակյանը, այնուհետև Զ. Եսայանը և ուրիշներ:

Եվ ահա, երբ արտասահմանում գտնվող հայ հոգևոր մշակույթի գործիչները աշխատավորական զանգվածներին պրոպագանդում էին Սովետական Հայաստանի սկզբնական տարիների առաջընթացը, երբ ծայր էր առել հայրենադարձությունը, դաշնակցական մամուլի տարբեր օրգաններում դավաճանության մեջ մեղադրվում էին այնպիսի մեծություններ, ինչպիսիք էին Ծիրվանզադեն, Իսահակյանը: Եվ ո՞րն էր նրանց «դավաճանությունը»: Նրանք վերադառնում էին հայրենիք: Հօդս էին ցնդում դաշնակցական պարագլուխների փայփայած հույսերը, թե իբր շուտով կտապալվեն սովետական կարգերը:

Ի պատասխան դաշնակցականների բարձրացրած աղմուկի, Փարիզի առաջադիմական մամուլում հանդես է գալիս Զապել Եսայանը՝ **Ո՞վ է դավաճանը** հրապարակախոսական կրքոտ հոդվածով: Անդրադառնալով 1928—30-ական թվականների սփյուռքահայերի գաղափարական շրջադարձին՝ նա ոգևորությամբ նշում է, որ վայրկենական հրապուրանքի արդյունք չէ այն և բխում է սփյուռքահայ աշխատավորական զանգվածների շահերից:

Հայրենասեր գրողը դաշնակցականների հարձակման դեմ չի ընտրում պասիվ պաշտպանական դիրք, այլ անհուն զայրույթով մերկացնում է նրանց գաղափարական սնանկությունը, բացահայտելով Ալեքսանդրապոլի դաշնագիրն ստորագրող և հայ ժողովրդին թիկունքից դանակահարող նորօրյա Դոն Քիշոտներին:

Եվ նա դառնորեն հարցնում է. «Բայց ո՞վ է դավաճանը, ո՞չ անոնք, որ պատմական ամենածանր պատասխանատվություն ունենալով իրենց խղճին վրա, դեռ ամեն միջոցներով կը դավադրեն և կը հետամտեն Խորհրդային Հայաստանը արյան բաղանիք դարձնելու, թե անոնք, որ մի անգամ ընդմիշտ խզելով կապը իրենց անցյալի հետ, առանց այլևայլի իրենց երեսը կը դարձնեն Խորհրդային հայրենիք»: 1926 թ. **Ո՞վ է դավաճանը** հոդվածը ոչ թե տվյալ պահի արդյունք է, այլ հեղինակի 1910—20-ական թվականների ստեղծագործական մեթոդի և գաղափարական հակման, արվեստագետի խորաթափանց մտքի օրգանական շարունակությունը:

Հասարակական կյանքի խորատես զննությունը, երկարամյա գործունեության փորձը Եսայանին հանգեցրել էին այն օբյեկտիվ եզրակացության, որ «ժողովուրդը և իր արարքները չպետք է շփոթել տասնյակ մը անարժան ղեկավարներու հետ» (Զ. Եսայան, **Երկեր**, Հայպետհրատ, 1959, էջ 294):

Մի ուրիշ առիթով հեղինակն իրեն համարում է «ընկերավարական կոմունիստներեն» մինը: Նա կողմնակից է համայն հայության միավորմանը՝ մայր հայրենիքում:

Եսայանի գրական, հրապարակախոսական աշխարհը արևմտահայությունն է: 1910—20-ական թվականների «Անհետացած ժողովրդի մը հոգեվարքի» երգիչն է նա, այդ ժողովրդի շահերի, նրա մաքառումների, ընդվզումների, հերոսացման արտահայտիչը:

Եվ եթե 1926 թվականին նա մի լրագրային հոդվածում իր պաշտպանության տակ է առնում Ծիրվանզադեին, Իսահակյանին, սակայն այդ չի նշանակում, թե տվյալ պահին ծնվեցին Եսայանի մտքում այդ գաղափարները: Ահա նրա կռահման արտահայտություններից մեկը. «Ռոմեն Ռոլան կհայտարարե վերջապես, որ ի հարկի պատրաստ է զենքը ի ձեռին պաշտպանելու Խորհրդային Միությունը: Դավանան է արդյոք նա, Կորքի, Լյուկ Տյուրթեն և այնքան ուրիշներ» (Գ. Ստեփանյան, **Արևմտահայ գրողների նամականի**, Երևան, 1972, Երևանի պետ. համալսարանի հրատ., էջ 17):

Գրականագետ Գ. Ստեփանյանը 1972 թվականին լույս տեսած **Արևմտահայ գրողների նամականի** ժողովածուի առաջաբանում բոլորովին նոր մոտեցումով է հանդես եկել սփյուռքահայության և գրական հարցերի արժեքավորումներում: Նա այն համոզմունքն է հայտնում, որ «Ամենից ցայտունը այն անվերապահ դիրքորոշումն է, որ ունեն վերոհիշյալ գրողները դեպի մայր հայրենիքը, նկատելի է, որ նրանք ամենևին չեն որոնում ավելի ապահով պայմաններ իրենց հայրենակիցների համար օտար երկրներում: Ունեն մի ծրագիր՝ որքան հնարավոր է շուտ, օտարացման ճանապարհի կեսից, քարավանները ուղղել դեպի Սովետական Հայաստան»: Նույն հեղինակը փաստեր է բերում այն մասին, որ արևմտահայ ռեալիստական գրականության ներկայացուցիչները՝ Տիգրան Կամսարական, Լևոն Բաշալյան, Արշակ Չոպանյան, Զապել Եսայան և ուրիշներ, չէին կարող չողջունել հայ ժողովրդի փառավոր վերածնունդը:

Փարիզում լույս տեսնող «Երևան» առաջադիմական թերթի էջերում տպագրած հայրենասիրական հոդվածները, նույն տարիներին գրած **Պրոմեթեոս ազատագրված** գիրքը և այլ երկեր ավելի բազմախոսուն են դառնում, երբ այս նամակների էջերից ծանոթանում ենք, թե ինչպիսի՜ եռանդով է նա Փարիզում



մասնակցում հայրենիքի վերելքի հետ կապված միջոցառումներին:

1926 թվականին Եսայանը այցելեց Սովետական Միություն, եղավ Մոսկվայում, հասավ իր երազաքաղաք Երևանը: Մեծ հետաքրքրությամբ դիտեց սովետական ժողովուրդների տնտեսական ու կուլտուրական վերելքը և 1928 թվականին Մարսելում հրատարակեց **Պրոմեթեոս ազատագրված** (ճամփորդական նոթեր) գիրքը, որի առաջաբանում գովերգելով Սովետական Հայաստանը՝ հայությանը կոչ է անում իր հայացքն ուղղել դեպի նորօրյա Հռոմը՝ Երևանը: Նա մասնավորապես նշում է. «Այս գիրքը քեզ կը նվիրեմ, **թափառական և իրավազուրկ արտասահմանյան հայ աշխատավոր**, որ հակառակ քու տաժանելի կյանքիդ, հակառակ տարուբեր և անհաստատ կացությանդ, երբեք չես դադրած քու ուշադրությունդ դարձնելու դեպի մեր Խորհրդային հայրենիքը:

**Խորհրդային Հայաստանը քու բարոյական ապաստանդ եղավ և քու դժվարին ու անհրապույր կյանքդ գեղեցկացնող հեռավոր երազը...** (ընդգծումը մերն է՝ Ս. Գ.): Երբ ամեն ինչ հուսահատություն էր քեզ համար, անիկա դարձավ քու գերագույն հույսդ» (Զապել Եսայան, **Պրոմեթեոս ազատագրված**, Մարսել, 1928, էջ 1):

Ուշագրավ է հատկապես նրա «Մեր Խորհրդային Հայրենիք» արտահայտությունը, որն ասված է գաղափարական համոզվածությամբ ու սիրով: **Լենին** վերնագիրը կրող հատվածում Եսայանը ոգևորությամբ պատմում է ռուս և համաշխարհային պրոլետարիատի մեծ առաջնորդի հեղափոխական գործունեության, նրա իմաստուն գաղափարների, համամարդկային զգացմունքների ու խոհերի մասին: Լինելով Մոսկվայում՝ Եսայանն այցելում է Լենինի դամբարանը և այդ տպավորությունների տակ գրում է. «Վերջապես դուռը բացվեցավ և մեր ժամանման կարգով շարք կազմեցինք: Համրորեն, մարդկային սյունը առաջացավ, հետզհետե սուզվեցավ դամբարանին մեջ: Երբ իմ կարգիս հասա սեմին, տեսակ մը հուզում ինձ գրավեց: Անհնարին էր հավատալ, որ բաց աչքերով պիտի տեսնեմ Լենինին»: ...«Լենինի արտակարգ, հսկա, լեգենդական էությունը կը սավառնի ամբողջ Խորհրդային Միության վրա... Լենինը միշտ կա ամենուրեք և իր անտեսանելի ներկայությունն անօրինակ կենդանությամբ զգալի է ամեն տեղ, ամեն մեկուն մեջ: Այդ հարատև ներկայության զգացումը հետևանք չէ միայն Լենինի պատկերներու առատության, այլ նաև այն ջերմեռանդության, որով ամեն մեկը տոգորված է Լենինի հանդեպ»: Ապա շարունակում է. «Մեր ժամանակներում ամենեն հզոր և հավասարակշիռ այդ իմացականությունը, Լենին, իր արծվային ակնարկը խորասուզեր է ներկայեն անդին— և ի՜նչ ներկա, օրհասական և վճռական կռիվներով, լինելու կամ չլինելու պայքարներով ծանրաբեռն— և հաշվեր է ինչ որ տրամաբանորեն պիտի կատարվի գալիք օրերու, հաջորդող հանգրվաններու ընթացքին»:

Եսայանը չի հասել Լենինի գեղարվեստական կերպարի կերտման, այլ անձնական ապրումները ներդաշնակելով հրապարակախոսական պաթոսին՝ բնութագրել է առաջնորդի հեղափոխական գործունեությունը. «Լենինի գերմարդկային պայծառատեսությունը լույս կարձակե,— գրում է նա,— ամեն ճամփաներու վրա. անիկա կարծես կանգնած է մարդոց անմատչելի գագաթի մը վրա և կը տեսնե պատմության ամբողջ բանորաման, համայնապատկերը, և ըստ այնմ կարձակե իր անսխալական ցուցումները» (նույն տեղը, էջ 72):

**Պրոմեթեոս ազատագրված** ուղեգրության մեջ ներկայացված են այն տպավորությունները, որոնք հեղինակն ստացել է Մոսկվայում, Թբիլիսիում, Երևանում պետական, քաղաքական գործիչների, գրողների և արվեստագետների հետ ունեցած հանդիպումներից:

Գիրքը բաղկացած է 25 գլուխներից, որոնք փաստորեն գրական ակնարկներ են և առանձին-առանձին կարող են ինքնուրույն ստեղծագործություն համարվել: Յուրաքանչյուր պատկերում, պետական գործչի, արվեստագետի դիմանկարը կերտելիս Եսայանը դարձյալ դիմել է գրական նորանոր հնարանքների: Մոսկվայում նա ծանոթացել է Ազգությունների գործադիր կոմիտեի հայկական բաժնի աշխատանքներին ու ջերմորեն արտահայտվել իր նոր բարեկամների մասին:

Հոկտեմբերյան հեղափոխությամբ է ազատագրվել հունական դիցաբանական հերոս Պրոմեթեոսը: Այսպիսով, հեղինակը խորհրդանշել է այդ մեծ հեղափոխության համաշխարհային նշանակությունը, հեղափոխություն, որն աշխարհի աշխատավոր մարդկանց և ճնշված ժողովուրդների միակ հենարանն է, հույսի պատվարը և հաղթանակների մղող հզոր ուժը. «Ռուս մեծ ժողովուրդը, Պրոմեթեոս շղթայված, կողմերը պատառոտուն գիշատիչ և արյունարբու անգղերե, որ այսուամենայնիվ երբեք չէ հրաժարեր ազատագրըվելե, որ միշտ կրծեր է իր շղթաները, որ ունեցել է հանկարծական ցնցումներ, օրհասական գալարումներ, ահա այսօր... վերջապես... Պրոմեթեոս շղթայազերծ և ազատագրված, անիկա պատրաստ է իր անշեջ հուրը փոխան-

ցելու ամբողջ մարդկության...» (Նույն տեղը, էջ 82):

Նա հիացմունքով է արտահայտվել սովետական կանանց, կին հասարակական գործիչների՝ Վերա Ինբերի, Ֆլորա Վարդանյանի, Սուսաննա Ծահվերդյանի և այլոց մասին, անկախ նրանց ազգային պատկանելությունից:

Առաջին անգամ լինելով մայր հայրենիքում, Եսայանը հանդիպումներ է ունենում հարազատ ժողովրդի տարբեր խավերի ներկայացուցիչների հետ, լինում հանրապետական թերթերի խմբագրություններում, մասնակցում Նոյեմբերի 7-ի տոնակատարությանը, ինչպես և հիդրոշինի հիմնադրման տոնահանդեսին: Համալսարանում նա զեկուցումով հանդես է գալիս դասախոսների և ուսանողների առաջ, մի առանձին սիրով է խոսում պետական թատրոնի և նրա դերասանների, երաժշտական օջախների մասին: Նրան անսահման ոգևորում են Սովետական Հայաստանի առաջին հինգ տարվա նվաճումները և այդ մասին հիացմունքով է պատմում արտասահմանյան հայությանը՝ գրքերով և հոդվածներով:

Հետաքրքրական է **Պրոլետարական գրականության մասին** հոդվածը, ուր Եսայանը բնութագրում է պրոլետարական գրականությունն ընդհանրապես, բայց և տարբերակում է դրա երկու կողմը՝ Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո արդեն իր իրավունքների մեջ մտած սովետական գրականությունը և պրոլետարական գրականությունը՝ արտասահմանում: Արտասահմանյան պրոլետարական գրականությունը, ըստ Եսայանի, «առավելապես կը հայտնվի իբր արտահայտություն պայքարի և ըմբոստության: Անիկա կոչված է իբր քանդիչ ուժ իր պարսատիկները անդադար արձակելու տիրապետող դրամատիրության նեցուկ և անոր գաղափարաբանության հիմքերու վրա կառուցված բուրժուական գրականության դեմ... Հայաստանի Պրոլետարական գրականությունը թևակոխել է նոր և բեղմնավոր շրջան մը, հեղափոխական ռեալիզմը, ուր կարող է գտնել իր լայն զարգացումը»:

Հեղինակը վառ ու կենդանի է նկարագրում «Հայաստանի պրոլետար գրողների միության» և «Նոյեմբեր» ընկերակցության միացյալ կոնֆերանսը:

Եսայանը համոզված է, որ ի հայտ են գալու քաղաքային կյանքն արտացոլող ստեղծագործություններ, որ արդյունաբերական ձեռնարկության բանվորը պետք է դառնա գրական հերոս: Եսայանն արդեն տեսնում, զգում է, որ հսկայական քայլերով առաջ է շարժվում սովետական նոր գրաքննադատությունը՝ գրականությանն ու արվեստին ուղղություն տվող մարքս-լենինյան իմացաբանության վրա բարձրացած նոր գաղափարաբանությունը:

Դեռևս Փարիզում ապրած տարիներին նա իրեն համարում էր Սովետական Միության քաղաքացի, Խորհրդային գրողների միության անդամ: Ապրելով հայրենիքից հեռու՝ նա իրեն երբեք կտրված չի համարել սովետական գրականության զարգացման ընթացքից և պատրաստ էր վերադառնալ հայրենիք:

Չենք կարող մի զուգահեռ չանցկացնել Եսայանի 1928 թ. **Պրոմեթեոս ազատագրված**-ում տեղ գտած գրականագիտական հայացքների և նույն թվականին «Գրական դիրքերում» հանդեսում հրապարակված Մաքսիմ Գորկու՝ 1916 թ. Տ. Հախումյանին գրած նամակի մեջ:

Գորկին սովորեցնում է, որ պետք է ավելի մոտ կանգնել կյանքին, անմիջականորեն օգտվել նրա ներշնչումներից, կերպարներից, պատկերներից, զգալ նրա թրթիռը... Չպետք է Ռոբինզոն լինել, հարկավոր չէ: Պետք է ապրել, աղմկել, խնդալ, հայհոյել, սիրել: Պետք է որոնել այն, ինչ որ դեռևս չի գտնըված. նոր խոսքը, հանգը, պատկերը, բանաստեղծը աշխարհի արձագանքն է և ոչ միայն իր հոգու դայակը:

Եսայանը նույնպես սովետական գրականության հետագա զարգացման մասին գրում է. «Խնդիրն այն է, որպեսզի պրոլետարական գրականության հիմքը կազմող գաղափարաբանությունը գրողին մեջ դառնա միս ու արյուն և դեպքերու ու երևույթների առաջ գրողին հուզմունքը— ոչ թե դիտավորություններով— այլ ինքնաբերաբար արտահայտվի գեղարվեստական ձևով: Ժամանակ է պետք նաև, որ խորհրդայնորեն շինարար և մշակված մարդու տիպարը բազմակողմանի և հարուստ հոգեբանությամբ կազմավորվի, որպեսզի գրողը կարենա կենդանի կյանքեն վերցնելով իր նյութը, դառնալ արտահայտիչը նոր մարդու հիմնական տրամադրություններու...» (**Պրոմեթեոս ազատագրված**, Մարսել, 1928, էջ 336—337):

1933 թվականի գարնանը Եսայանը վերադառնում է Սովետական Հայաստան: Նա մասնակցում է սովետական գրողների I համագումարին (1934 թ. օգոստոս), որտեղ զեկուցումով հանդես է գալիս Մաքսիմ Գորկին: Նա գրողների առջև խնդիր դրեց կերտել նոր մարդու կերպարը, բացահայտել իրականության բազմազան կողմերը... «որպես գլխավոր հերոս մենք պետք է ընտրենք աշխատանքը, այսինքն՝ աշխատանքի պրոցեսներում կազմավորվող մարդուն... Մենք պետք է սովորենք ըմբռնել աշխատանքը, որպես ստեղծագործություն» (Մաքսիմ Գորկի, **Գրական-հրապարակախոսական հոդվածներ**, Երևան, 1949, էջ 220—221):

Եսայանի ելույթը, ի զարմանս բոլորի, տոգորված էր համաշխարհային պրոլետարիատի պայքարի գաղափարախոսությամբ: Փաստերը քննարկվում են Արևմուտքի պրոլետարիատի և աշխատավորական զանգվածների շահերի դիրքերից և բովանդակում Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի հետ կապված համամարդկային մի շարք պրոբլեմներ: Նա մասնավորապես ասում է, որ «Հոկտեմբերյան հեղափոխության առաջին իսկ օրերից, արտասահմանյան «սփյուռքահայ» բանվորական պարբերականներում երիտասարդ գրականագետները նկարագրելով իրենց հուսախաբությունը բուրժուական երկրների «դեմոկրատական» ռեժիմի նկատմամբ, իրենց բերկրանքն են հայտնում ռուս բանվորների տարած հաղթանակի առթիվ: Պայքարելով ընդդեմ սեփական բուրժուազիայի և առաջին հերթին՝ ընդդեմ ֆաշիստների ու դաշնակների, հայ բանվորները այսպիսով մասնակցում են այդ երկրների պրոլետարիատի ընդհանուր պայքարին (տե՛ս «Лит. газета», М., 1934, 27 августа):

Այնուհետև, ի լուր աշխարհի, նա դատապարտում է ֆաշիզմը: Պայքար ֆաշիզմի դեմ՝ այդ նշանակում է ծավալել հեղափոխական մեծ գործ, որովհետև ֆաշիզմը աշխարհի ժողովուրդների գլխավոր թշնամին է, և նրա գաղափարախոսությունը հակամարդկային է,— այսպես է որակում իրադրությունը համարձակ գրողն ու հրապարակախոսը:

Եսայանի ելույթը ոչ թե սենսացիա էր, այլ Եվրոպայի քաղաքական մթնոլորտի ռեալ արտահայտություն, մթնոլորտ, որի հետևանք են իմպերիալիստական տերությունների, մասնավորապես ֆաշիստական Գերմանիայի և Իտալիայի ագրեսիվ պլանները: Սովետական գրողների I համագումարում արտասանած Եսայանի ելույթում մասնավորապես շեշտված է առաջին համաշխարհային պատերազմում զոհ դարձած արևմտահայության գաղափարախոսությունը՝ մինչև վերջ պայքարել պատերազմի դեմ, թույլ չտալ, որ ֆաշիզմը իրագործի իր հակամարդկային նկրտումները:

Եսայանի խոստովանությամբ՝ արտասահմանյան հայ աշխատավորությունը զգալի պայքար է տանում հատկապես դաշնակների դեմ՝ պաշտպանելով իր Սովետական հայրենիքը: Նման պայքարը շատ հաճախ ընդունում է արյունահեղ բնույթ: Եղել են հայ բանվորների բազմակի սպանության դեպքեր լոկ այն պատճառով, որ նրանք գոչել են կեցցե՜ Սովետական Միությունը:

Նա գրողներին բաժանում է երկու խմբի՝ ֆաշիստական և հակաֆաշիստական և այն համոզմունքն է արտահայտում, որ ճշմարիտ գրողն ու արվեստագետը բոլոր դեպքերում պետք է կանգնի հակաֆաշիստական դիրքերի վրա, լինի այդ շարժման առաջամարտիկը՝ «Ամբողջ համաշխարհային մտավորականությունը, այդ թվում և գրողները, այսուհետև չեն կարող լինել չեզոք: Գրողները ներկայումս հանդիսանում են ֆաշիստներ կամ հակաֆաշիստներ: Եթե դեռ գոյություն ունեն գրողներ, որոնք մտածում են դուրս մնալ դասակարգային պայքարից, ապա ի գործո նրանք չեզոք չեն: Նման գրողները, ուզում են նրանք, թե ոչ, իրենց գրվածքները հարմարեցնում են ֆաշիզմի պահանջներին և շահերին» («Лит. газета», М., 1934, 27 августа):

Համագումարից ստացած իր տպավորությունները հեղինակը մի առանձին ոգևորությամբ նկարագրել է Ստամբուլում ապրող հայ անվանի գրող Հակոբ Օշականին ուղղված նամակներից մեկում, «Մասնակցեցա Մոսկվայի գրողների համագումարին, որ համաշխարհային նշանակություն ունեցող երևույթ էր... Ե՞րբ է պատահեր, որ հայ գրողը իր ետևը զգա հաղթական 170 միլիոն ժողովուրդ՝ իբրև հենարան: Ամբողջ խնդիրն այն է, որ մենք կարենանք բարձրանալ այն մեծ և լայն իրականության, որու մեջ կապրինք և ստեղծագործենք ոչ թե **հայավարի**, այլ ընդգրկելով այդ հսկայական իրականությունը: Համագումարի կապակցությամբ գացինք բանվորական շրջաններ, ուր հազարավորներ մեզ կը լսեին և կը ծափահարեին: Ես այդպիսի մեկ առիթի խոսեցա հայերեն լեզվով. մեր նախագահը ֆրազ առ ֆրազ կը թարգմաներ: Բուռն ծափահարություններ կընդմիջեին թարգմանիչի խոսքը: Ուրկի՞ց, ո՞ւր: Մոսկվայի հաղթական պրոլետարիատը և Զապել Եսայանը: Ասոնք այնպիսի րոպեներ են, որ խոր ակոսներ կը թողուն մեր հոգում: Այն արտակարգ, մարդկային ուժերը գերազանցող հուզմունքը, որ զգացեր եմ հաճախ այս իրականության մեջ և որու միջոցին ոչ միայն իմ անհատական պրոֆեսիոնալ, այլև ազգային զգացումներս և հպարտությունս լիուլի գոհացում կտար, կը համարեմ իմ կյանքիս գագաթները: Սուտ է և զրպարտություն, որ մենք կաշկանդված ենք և այլն և այլն: Երբեք ալ մեկ տեղ ինքզինքս չեմ զգացեր այնքան ազատ, անկաշկանդ և համարձակ: Սոսկումով կը հիշեմ իմ արտասահմանյան կյանքս, ուր ամեն կարգի նյութական և այլ դժվարություններու հետ ինքզինքս կզգայի կաշկանդված և այնպիսի օրերու, երբ չէի գիտեր, թե ինչպես տանս

վարձքը պիտի վճարեմ, կամ իմ առօրյա ծախքերս դիմավորեմ, թշվառականներ կային, որ կը գրեին, թե կաշառված եմ... բայց թողունք այդ բոլորը: Այժմ բավական հարուստ եմ մանավանդ բարոյապես, լայնասրտությամբ հիշելու համար այն թունավոր մթնոլորտը, ուրկե վերջապես դուրս եկա» (Զապել Եսայան, Նամականի, Երևան, 1977, էջ 307—308):

Զապել Եսայանի, Սովետական Հայաստանից 1934—36 թթ. գրած նամակներում, որոնք ուղղված են Ավ. Իսահակյանին, Հակոբ Գյուրջյանին, տիկին Ա. Մարյանին, Հակոբ Օշականին, ներկայացված է հայրենասեր գրողը, քաղաքացին, մեծ մտածողը, որի համար վերածնված հայրենիքի բարձրացող յուրաքանչյուր քար, արվեստի յուրաքանչյուր գործ իր ներքին էության մեջ պարունակում, ամփոփում է նորի, առաջավորի, կյանքով հաստատվածի նվաճումը:

Սակայն այս ամենը չի նշանակում, թե սթափ մտածողը չէր տեսնում հաղթահարվելիք դժվարությունները ու բարդությունները, հին ապրելակերպի մնացուկները:

Անկեղծ հուզումով նա գրում էր. «Այստեղ կյանքը շատ հետաքրքրական է, բայց դըժվար— ոչ մեզ համար— բայց ամենքն ալ ոգևորված են այն զգացումով, որ այդ դժվարությունները անհրաժեշտ են ավելի մեծ նըպատակներու հասնելու համար: Իմ տեսած ու հանդիպած մարդիկս բարձր տրամադրության մեջ են, ուրախ են և ոգևորությունով լի: Այս արդեն տարբեր աշխարհ է և ես ինքս հանգըստացած եմ արդեն այն բազմատեսակ դժվարություններե, որոնցմե անցա մինչև այստեղ հասնելս: Տղաքերքի գալարումները ճամբորդության պատրաստությունները են, որոնցմե անչափ հոգնած էի: Կը մաղթեմ Ձեզ, որ ավելի թեթև անցնիք այդ անխուսափելի դըժվարություններեն» (նույն տեղը, էջ 298):

Որոշ նամակներում Զապել Եսայանն սկըզբունքային դիրքերից է արժեքավորում իր անձնական ու գրական հակադրությունը արտասահմանում դեռևս իր գոյությունը քարշ տվող հակասովետիզմի գաղափարախոսությանը, որն ավելի ցայտուն արտահայտվել է հետևյալ տողերում. «Սիրելի ընկեր Իսահակյան, հաճախ ինքս ինձ կրկնում եմ. ի՜նչ լավ ըրի, որ եկա, ազատվեցա արտասահմանյան ճահճեն, ազատվեցա «բարեկամներեն» ու թշնամիներեն: Նյութապես ապահովված, սիրտըս հանգիստ, երեխաներս մոտս, ես ինձ կը նվիրեմ գրական աշխատություններու» (նույն տեղը):

Այդպես էլ նա վարվեց: Իր ջերմ հայրենասիրությամբ, ստեղծագործական բուռն պաթոսով հին կարգերից նա եկավ դեպի նորը, ձուլվեց իր ժողովրդի շինարարական առօրյային, դառնալով նրա բեղմնավոր ներկայի, ապահով ու հուսալի ապագայի երգիչը:

**ՍՎԵՏԼԱՆԱ ԳՐԻԳՈՐՅԱՆ**

---



Адрес редакции: 375023, Ереван—23, пр. Орджоникидзе, 2.

Խմբագրության հասցեն՝ **375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—06, պատասխանատու քարտուղար՝ 52—99—22, մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի բաժին՝ 52—05—58, կուսակցական կյանք բաժին՝ 52—25—43, էկոնոմիկայի բաժին՝ 52—57—56, գիտության և կուլտուրայի բաժին՝ 52—99—34, խմբագրության վարիչ՝ 52—99—36:

*Հանձնված է շարվածքի 24.02.84 թ.: Ստորագրված է տպագրության 21.03.84 թ.: ՎՖ 02333: Ֆորմատ՝ 70×108 1/16: Տպագրություն՝ բարձր: 8,4 պայմանական տպ. մամ., 9,8 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 16.482: Պատվեր՝ 566:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա № 2:*
Типография издательства ЦК КП Армении.
Ереван-23, пр. Орджоникидзе, 2.